Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



2

ՓԵՏՐՎԱՐ

1989 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ՄԵԾԱՑՆԵԼ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԻՆՏԵԼԵԿՏՈՒԱԼ ՊՈՏԵՆՑԻԱԼԸ

## Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ելույթը 1989 թ. հունվարի 6-ին ՍՄԿԿ Կենտկոմում գիտության և մշակույթի գործիչների հետ տեղի ունեցած հանդիպման ժամանակ

Թանկագին ընկերներ:

ՍՄԿԿ Կենտկոմի ղեկավարության անունից ուզում եմ ի սրտե ողջունել ձեզ, շնորհավորել ձեր Նոր տարին, լավ գործեր մաղթել բոլորիդ և յուրաքանչյուրիդ անհատապես:

Այս հանդիպմանը, որն առաջինն է այս տարի, մենք հրավիրել ենք մեր գիտական ու գեղարվեստական մտավորականության ներկայացուցիչներին մեկ նպատակով՝ խոսելու երկրի համար, հասարակության համար ամենակարևորի մասին, հասարակություն, որն այժմ գտնվում է իր զարգացման պատասխանատու փուլում: Նման կարգի հանդիպումները մեզանում դարձել են կանոնավոր: Ձեզանից շատերը դրանց մասնակցել են: Հանդիպումներ են եղել թե բանվորների, թե գյուղացիների հետ, թե գիտության ներկայացուցիչների, մշակույթի ամբողջ ճակատի հետ, մամուլի հետ՝ միգուցե առավել հաճախակի:

Այս ամենը մտել է պրակտիկա, դարձել ավանդույթ: Մենք գոհ ենք, որ այդ հանդիպումները միշտ եղել են բովանդակալից, դրանցից յուրաքանչյուրը ունեցել է իր ոչ պակաս կարևոր նշանակությունը: Մենք իմացել ենք ընկերների կարծիքները մեր կյանքի տարբեր հարցերի վերաբերյալ, նրանց պատկերացումները ապագայի մասին, այդ ամենը հաշվի ենք առել աշխատանքում: Այդ հանդիպումները, ինչպես ես հուսով եմ, օգտակար են եղել նաև նրանց համար, ովքեր դրանց մասնակցել են:

Մեր սույն հանդիպումն ունի մի շատ կարևոր առանձնահատկություն: Այն իրադրությունը, որի մեջ ընթանում է հանդիպումը, բնութագրվում է վերակառուցողական պրոցեսների լայն ծավալումով: Դրանք այժմ արդեն ընդգրկում են մեր կյանքի բոլոր ոլորտները, շոշափում միլիոնավոր մարդկանց, նրանց շահերը: Վերակառուցումը թափանցում է ժողովրդի կյանքի բուն խորքերը, շարժման մեջ է դրել հսկայական հասարակական ուժեր, այն պոտենցիալը, որ ունի մեր երկիրը: Միգուցե մենք միայն հիմա ենք ինչպես հարկն է հասկանում, թե ինչ է վերակառուցումը և կարող ենք վստահությամբ ասել, որ շատ ճիշտ էր, որ այն անվանեցինք յուրօրինակ հեղափոխություն: Միայն հիմա ենք սկսում ինչպես հարկն է հասկանալ պրոբլեմների թե նորույթը, թե սրությունը և թե, իհարկե, առաջիկա աշխատանքի հսկայական մասշտաբները: Մենք տեսնում ենք, թե ինչպիսի բարդ պրոցեսներ են ընթանում հասարակական գիտակցության մեջ, մարդկանց մտքերում: Այժմ ամբողջ տեղի ունեցողը առաջ է բերում մեր ժողովրդի բացառիկորեն աշխույժ և սուր անդրադարձը, նրա բացառիկորեն մեծ հետաքրքրությունը:

Տեղի ունեցող շատ բաներ մեզ ուրախացնում են: Սակայն, հանուն արդարության, հարկ է նաև խոստովանել, որ շատ բաներ էլ անհանգստացնում են: Այս ամենին անհրաժեշտ է խորամուխ լինել, ընդ որում՝ ժամանակին, և հետևություններ անել, դասեր առնել: Անհրաժեշտ է իմաստավորել տեղի ունեցողը՝ ավելի վստահորեն, բանիմացությամբ գործելու համար, առաջ մղելով վերակառուցումը, մշտապես հիշել, որ նրա հաջողությունից շատ բան է կախված մեր ժողովրդի, մեր պետության ճակատագրում: Ուստի, հուսով ենք, որ ձեզ հետ տեղի կունենա մեծ, հանգամանալի և լուրջ խոսակցություն:

Կցանկանայի արտահայտվել որոշ հարցերի առթիվ, որոնք մեր կարծիքով սկզբունքային նշանակություն ունեն: Նախ և առաջ կսկսեի ձեզ համար միգուցե անսպասելի հարցից՝ վերջին ժամանակներս ծավալված դիսկուսիաների բնույթից: Մենք ողջունում ենք դիսկուսիաները: Ես սա անհրաժեշտ եմ համարում ընդգծել անմիջապես: Գտնում ենք, որ դրանք պետք է շարունակվեն: Ուրիշ բան է, որ մեզանում դեռևս չեն տիրապետում դիսկուսիաների կուլտուրային, սակայն կրկնում եմ, մենք դրանք ողջունում ենք, մենք կողմ ենք դիսկուսիաներին:

Դրանք հնարավորություն են ընձեռում առավել լրիվ բացահայտել և հաշվի առնել հասարակական կարծիքը, հասարակության տարբեր խավերի շահերը, զորավիգ լինել այն ամեն նորին, առաջավորին, ինչը մեր կյանք է մուտք գործում վերակառուցման հետ: Եվ սրա հետ միասին ժամանակին նկատել այս կամ այն բացասական երևույթը, սխալը, դասեր քաղել դրանց շտտանալուց:

Մենք կողմ ենք արգասավոր դիսկուսիաների: Առանց իրավիճակը դրամա համարելու, ուզում եմ ասել, որ այժմյան դիսկուսիաներում որոշ բաներ անհանգստացնում են: Համոզված եմ, որ մենք իրավունք չունենք կողմնակի դիտողի վիճակում մնալ, երբ օրինակ, ձայներ են հնչում, թե վերակառուցումը իբր տանում է դեպի քաոս, ամենաթողություն, ամենակուլություն: Թե այն իբր սպառնալիք է ներկայացնում երկրի նորմալ զարգացման համար, թե մենք իբր արդեն մոլորվել ենք խնդիրների լուծման ոչ միայն մեթոդների ու եղանակների որոշման գործում, այլև նպատակի բուն ընտրության առաջադրման գործում: Ոմանք արդեն սկսել են կամաց-կամաց կարոտել «անցած լավ ժամանակին», խոսակցություններ են լսվում, թե երկրին հարկավոր է «ամուր ձեռք»: Նման տրամադրություններ երևան են գալիս ոչ միայն հույզերի և զգացմունքների ոլորտում, այլև ձեռք են բերում որոշակի փիլիսոփայական և նույնիսկ քաղաքական ուրվագծեր:

Վերջին չորս տարին համոզչությամբ վկայում է, որ մեր ժողովուրդը հանդես է գալիս վերակառուցման օգտին, հասարակությունը սոցիալիստական հիմունքներով նորացնելու օգտին: Եվ, այնուամենայնիվ, ոմանք փորձում են այստեղ էլ կասկածանքի սերմեր ցանել: Որոշ դիսկուսիաներում առաջ է քաշվում այն հարցը, թե վերակառուցման համար սոցիալիզմի շրջանակները իբր նեղ են: Կամաց-կամաց մեջտեղ է հանվում քաղաքական պլյուրալիզմի, բազմակուսակցականության և նույնիսկ մասնավոր սեփականության միտքը: Խոսքը վերաբերում է իբր այն բանին, թե սոցիալիզմի պոտենցիալը անհնար է բացահայտել վերակառուցման միջոցով: Եվ առաջին, և երկրորդ դեպքում խոսքը վերաբերում է մեր կարգերի, մեր ժողովրդի, մեր կուսակցության, մեր սոցիալիստական հաստատությունների նկատմամբ հավատ չընծայելուն:

Չեմ կարող չասել նաև այն մասին, որ հրապարակայնության անվան տակ փորձեր են արվում գրոհել ՍՄԿԿ-ի վրա, գրոհել կուսակցության վրա, որը մշակել և առաջարկել է վերակառուցումը, որն այսօր գլխավորում է դեմոկրատացման աշխատանքը, խթանում վերակառուցման բոլոր պրոցեսները և որը ինքն էլ է խոր նորացում ապրում: Եվ սրա հետ միասին միավորող, ինտեգրացնող կարևորագույն դեր է խաղում մեր երկրի զարգացման այս շրջադարձային փուլում:

ՍՄԿԿ-ի տեսակետը, և ես համոզված եմ, որ այն արտացոլում է մեր հասարակության մեջ գերիշխող տրամադրությունը, այսպիսին է. նման հայացքները, անկախ նրանից, թե դրանց հիմքում ինչ սուբյեկտիվ պատճառներ են ընկած և ինչ պարագաների ճնշման տակ են առաջանում, արմատապես սխալ են և հակասում են ժողովրդի շահերին, ըստ էության ուղղված են վերակառուցման դեմ:

Կուսակցությանն է հարվածում նա, ով ուզում է վիժեցնել վերակառուցումը, վնասել վերակառուցմանը: Խորապես համոզված եմ, որ վերակառուցումը մենք մտահղացել և կատարում ենք, ամբողջությամբ վերցրած, ճիշտ, և սա իմ կարծիքը չէ միայն: Եվ այս ճանապարհից ոչ մի դեպքում մեզ չի կարելի շեղվել: Սրանում էլ եմ ես հաստատ համոզված: Վերակառուցումը մեզ խիստ է անհրաժեշտ:

Սակայն չպետք է հանգստանալ հաջողություններով, գերագնահատել ձեռք բերվածը: Բայց և ոչ մի հիմք չկա կասկածի տակ առնելու մեր կատարած ընտրությունը, հասարակության նորացման կուրսը, հոռետեսության, հուսալքության և առավել ևս խուճապի հիմքեր չկան: Իսկ սա դրսևորվում է որոշ բանավեճերում: Մեզ հարկավոր է հաստատորեն և վստահորեն առաջ գնալ, սթափորեն կշռադատելով ստեղծվող իրավիճակը՝ պարզորոշ տեսնել հեռանկարը:

Մի խոսքով, ընկերներ, վերափոխման բուռն պրոցեսում, հասարակական կյանքի հնացած ձևերը և նախկինում գոյացած ստերեոտիպերը դեն շպրտելու պրոցեսում,



դինամիկ վերափոխումների մթնոլորտում անչափ կարևոր է չկորցնել տեղի ունեցողի առողջ, իրատեսական գնահատումը: Իսկ ավելի ճիշտ՝ կարևոր է դիալեկտիկական մոտեցումը անցման ժամանակաշրջանի բոլոր պրոցեսների և բարդությունների նկատմամբ:

Այդ պրոցեսը, ինչպես արդեն ասացի, հեշտ չի ընթանում: Այն հարուցում է նորանոր պրոբլեմներ, որոնց արմատները ձգվում են դեպի անցյալը, ի հայտ է բերում դրանց իսկական սրությունը: Իրոք, շատ պրոբլեմների իսկական սրությունը մենք միայն այսօր ենք ճանաչում: Մեծ դժվարությամբ է հաղթահարվում տնտեսական ու սոցիալ-քաղաքական զարգացումն արգելակող մեխանիզմը: Ծառանում են նորանոր պրոբլեմներ, որոնց լուծումը հեշտ չի տրվում: Այստեղ հնարավոր են սխալներ, վրիպումներ: Եվ ում համար թանկ չէ ժողովրդի բախտը, ով չի ցավում ժողովրդի համար, նրանք որոշակի սնունդ ունեն: Իսկ նման մարդիկ գիտեն միայն իրենց «տեսանկյունիկը» և ուրիշ ոչինչ:

Եվ այնուամենայնիվ, վերակառուցումը, թեպետև ոչ առանց դժվարությունների և հակասությունների, անշեղորեն առաջ է գնում: Սա է տեղի ունեցող պրոցեսների գլխավոր միտումը: Վերակառուցումը զորեղանում է և առաջ գնում, խորանում մեր վերափոխումների մեջ:

Կցանկանայի անդրադառնալ ևս մի բավականաչափ տարածված դատողության, որը համարում եմ սխալ: Նկատի ունեմ որոշ ընկերների այն պնդումը, թե մենք երկրում վերակառուցման գործը կարծես անում ենք՝ չունենալով մշակված ծրագիր, թե չգիտենք ինչին ենք ձգտում և ինչ ենք ուզում:

Չեմ պատրաստվում ձեզ համոզել, թե մենք ունենք վերակառուցման մինչև վերջ և մանրամասնորեն մշակված տեսություն ու պրակտիկա, թե մենք արդեն ընդունել ենք անհրաժեշտ որոշումները վերակառուցման բոլոր պրակտիկ ուղղությունների վերաբերյալ, և մանավանդ պնդել, թե մենք ունենք այն հասարակության լիակատար պատկերը, դեպի որն ընթանում ենք, թեպետև մենք ոչ միայն առաջադրել ենք մեր նպատակը՝ վերակառուցման միջոցով հասնել սոցիալիստական հասարակության նոր վիճակի, այլև նշել ենք նման հասարակության ուրվագծերը: Իհարկե, մեզ սպասում է ինտելեկտուալ շատ աշխատանք: Մենք պետք է շարունակենք նորակերպ սոցիալիզմի կոնցեպցիայի մշակումը: Եվ դրանով ենք մենք հիմա զբաղված:

Անհրաժեշտ է, և դա միանգամայն հասկանալի է ու բացատրելի, որ մենք խորացնենք գիտելիքները վերակառուցման բոլոր բնագավառներում: Բայց ուզում եմ մեկ անգամ ևս ասել, որ այն պնդումները, թե մենք վերակառուցման ստրատեգիա ու քաղաքականություն չունենք, անհիմն են:

Վերակառուցման տեսության ու քաղաքականության մշակումն էլ հենց կազմում է նրա առաջին փուլի հիմնական բովանդակությունը: Եվ այս առնչությամբ կկամենայի պարզապես հիշեցնել մի քանի փաստ:

Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում մենք դրեցինք այն իրավիճակի խոր վերլուծության սկզբունքային գնահատման սկիզբը, որի մեջ մեր հասարակությունը հայտնվել էր 80-ական թվականների կեսերին: Այն ժամանակ առաջ քաշվեց հասարակական զարգացման արագացման խնդիրը՝ որպես լճացման հակադրույթ: Բայց ասեմ ավելին, ապրիլյան պլենումն էլ ինքնըստինքյան կարող էր կայանալ միայն նախորդած տարիներին կատարված հսկայական նախնական աշխատանքի հիման վրա:

Կուսակցության, ասենք՝ նաև ամբողջ հասարակության մեջ, ներառյալ նաև գիտության, մշակույթի ոլորտները, ոչ միայն հասունացել էր փոփոխությունների անհրաժեշտության ըմբռնումը, այլև ինտենսիվորեն իմաստավորվում էր այն, թե ինչ ուղիներով լուծել այդ խնդիրը: Այլապես որտեղի՞ց ընդհանրապես ծնունդ կառներ ապրիլյան պլենումի գաղափարը: Չէ որ մենք մատերիալիստներ ենք, դիալեկտիկներ և գիտենք ոչնչից ոչինչ չի ստեղծվում և անհետ չի կորչում: Նշանակում է՝ հասարակության մեջ վերակառուցման տրամադրությունների երևան գալուն նախորդել էր վերլուծական խորհրդածությունների, բարոյական գնահատումների որոշակի ժամանակաշրջան: Այդ ամենը նախապատրաստվում և հասունանում էր կուսակցության մեջ, գիտության, մշակույթի ոլորտում, հասարակական լայն շրջաններում: Պետք է ուղղակի ասել, որ ստեղծվել էր նոր գաղափարների պատկառելի պոտենցիալ: Մենք բոլորս զգում էինք, որ առաջվա նման ապրել չի կարելի:

Եվ, իրոք, հարկ զգացվեց ձեզանից շատերի հետ քանիցս անձամբ հանդիպել և բանավիճել այդ հարցերի շուրջը Կենտկոմի ապրիլյան պլենումից դեռ շատ առաջ:

Եվ ոչ միայն ես: Նիկոլայ Իվանովիչ (**դիմում է Ն. Ի. Ռիժկովին**), քանի՞ փաստաթուղթ էր մշակվել այդ բանավեճերի հիման վրա:

**Ն. Ի. Ռիժկով.** Հարյուր տասը:

**Մ. Ս. Գորբաչով.** Հարյուր տասը նույնական փաստաթղթեր՝ Նիկոլայ Իվանովիչի և ինձ մոտ: Դրանք բոլորը վերաբերում են այն ժամանակաշրջանին, երբ մինչև ապրիլյան պլենումը դեռ շատ հեռու էր: Դրանք ակադեմիկոսների, գրողների, խոշոր մասնագետների, հասարակական գործիչների եզրակացություններ են: Այդ բանավեճերի և վերլուծության արդյունքները ընկան ապրիլյան պլենումի որոշումների և նրանից հետո ձեռնարկված առաջին քայլերի հիմքում:

Այստեղ պետք է հիշեցնեմ 1985 թվականի հունիսին կայացած գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը նվիրված խորհրդակցության մասին, որը մեծ դեր խաղաց վերակառուցման խնդիրների իմաստավորման և նրա գործնական ծավալման գործում: Առանց նախորդած աշխատանքի մենք մի՞թե կարող էինք ապրիլից անմիջապես հետո խորհրդակցություն անցկացնել նման ամենաարմատական հարցի շուրջը: Նրա նախապատրաստման համար օգտագործվել էին այն նյութերը, որոնք դեռևս նախաապրիլյան ժամանակամիջոցում պատրաստվել էին Կենտկոմի հատուկ պլենումի առթիվ, որը նվիրված պետք է լիներ գիտատեխնիկական առաջադիմության հարցերին, և զեկուցող էր հաստատված ձեր խոնարհ ծառան: Բայց այդ պլենումը տեղի չունեցավ:

Վերակառուցման համադրույթի մշակումն ավելի լայն հորիզոններ դուրս բերվեց կուսակցության XXVII համագումարի նախապատրաստման և անցկացման կապակցությամբ: Եվ դա մեզ հնարավորություն ընձեռեց համագումարի անունից արդեն հիմնական գծերով սովետական ժողովրդին ներկայացնել հասարակության նորացման խորապես մտածված կոմպլեքսային ծրագիրը: Համագումարի գաղափարներն իրենց հետագա կոնկրետացումն ստացան Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում, որտեղ ուշադրության կենտրոնում էին գտնվում կուսակցության դերի, դեմոկրատացման ուղիների, կադրային քաղաքականության հարցերը: Որ հարցն էլ վերցնես, վիթխարի հիմնախնդիր է:

Նույն տարվա հունիսյան պլենումը մեզ հանգեցրեց արմատական տնտեսական ռեֆորմի համադրույթին: Մեր պատմական ուղու իմաստավորման համար կարևոր դեր խաղացին ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումը և Հոկտեմբերի 70-ամյակի հետ կապված փաստաթղթերը: Դա լայն հնարավորություններ բացեց մեր հասարակագիտության և հատկապես պատմական գիտությունների համար: Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի քաղաքական հիմնադրույթների իրացման շրջանակներում աշխատանք ծավալեց անօրինականորեն բռնացումների ենթարկված անձանց արդարացման քաղբյուրոյի հանձնաժողովը:

Չեմ կարող չհիշել նաև ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թվականի փետրվարյան պլենումը, որտեղ մասշտաբայնորեն դրվեց վերակառուցման գաղափարախոսության հարցը, որի հրատապությունը հաստատվել էր մեր հասարակության հետագա զարգացմամբ:

Վերակառուցման բոլոր պրոցեսների իմաստավորման նոր մակարդակի, այդ հիման վրա նորացման պրոցեսների դինամիկացման վերաբերյալ քաղաքական կարևոր հիմնադրույթների ընդունմանը մեզ հանգեցրեց XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսը: Կոնֆերանսի կարևորագույն ծառայությունը քաղաքական համակարգի ռեֆորմի համադրույթի մշակումն է: ՍՄԿԿ Կենտկոմի հետագա պլենումները, ՍՍՀՄ Գերագույն սովետի վերջերս կայացած նստաշրջանը, կուսակցության հաշվետու-ընտրական կամպանիան և ժողովրդական դեպուտատների առաջիկա ընտրությունները գործնական քայլեր են քաղաքական համակարգի նորացման ուղղությամբ:

Ասածս չի ընդգրկում այն ամբողջ աշխատանքը, որ կուսակցության մեջ ծավալվել է վերակառուցման նպատակների և ուղիների քննարկման կապակցությամբ: Դա սոսկ մեծ աշխատանքի հիմնական ուղենիշներն են: Եվ ամենագլխավորը, ընկերներ, այն է, որ վերակառուցման ստրատեգիայի ու քաղաքականության մշակման պրոցեսին փաստորեն մասնակցում էր ողջ հասարակությունը: Առավել կարևոր հարցերը դրվում էին համաժողովրդական քննարկման: Հետևաբար, մենք բոլոր հիմքերն ունենք ասելու վերակառուցման տեսության ու քաղաքականության ձևավորման համաժողովրդական բնույթի մասին: Այն ասես ներառել էր մեր ժողովրդի ամբողջ փորձը, ամբողջ մտավոր կարողությունը:



Ուզում եմ մեկ անգամ ևս վերապահություն անել. մենք հեռու ենք այն բանից, որ կարծենք, թե մեզ համար այժմ արդեն ամեն ինչ պարզ է: Ոչ, և ոչ: Սարերի հետևում չեն ՍՄԿԿ Կենտկոմի մեր պլենումները գյուղատնտեսական քաղաքականության, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարային համադրույթի հարցերի, ազգամիջյան հարաբերությունների շուրջը:

Վերակառուցման քաղաքականության և տեսության մշակումը չէր սահմանափակվում սոսկ ներքին շրջանակներով: Այն տրամաբանորեն փոխակերպվում էր շրջակա աշխարհի մասին մեր ունեցած հայացքների մեջ: Այստեղ նույնպես կային իրենց փուլերը, որոնք հանգեցրին այն բանին, ինչն այսօր մենք անվանում ենք քաղաքական նոր մտածողություն, որն իր գործնական իրականացումը գտավ մեր արտաքին քաղաքականության մեջ և մեծ արձագանք առաջացրեց բովանդակ աշխարհում:

Ինձ թույլ կտամ ուղղակի հարց դնել ձեր առջև. մի՞թե այն, ինչի մասին ասվեց, նման է խավարի մեջ խարխափելուն: Թե վերակառուցման ստրատեգիա մշակելիս, թե այն իրագործելիս առկա են հստակ տրամաբանություն ու հաստատակամ հետևողականություն: Ուստի, կարծում եմ, մենք պետք է դեն նետենք այն ամեն տեսակ շահարկումները, թե մենք իբր չգիտենք, թե ուր ենք գնում և ինչ ենք անում, այլ պետք է բոլորը եռանդագին ներգրավվեն վերակառուցման հետագա խորացման և իմաստավորման գործում, նախատեսված պլանները կենսագործելու ստեղծարար աշխատանքում: Կարծում եմ, դա կլինի միակ ճիշտ հետևությունը:

Հասարակության մեջ տեղի ունեցող բանավեճերի կենտրոնում այժմ հայտնվել են նաև սոցիալ-տնտեսական ոլորտի իրավիճակի գնահատման հետ կապված հարցերը: Ի՞նչ կարելի է ասել այդ կապակցությամբ: Վերջին ժամանակներս բնակչության, մասսայական լրատվության միջոցների, մի շարք գիտնականների կողմից արտահայտվում են ստեղծված իրավիճակի քննադատական շատ գնահատականներ: Խոսքը ապրանքների, պարենի պակասի, հերթերի, բնակարանի խնդրի, սպասարկման ոլորտի, կոմունալ տնտեսության և այլ ոլորտների թերությունների մասին է, որոնք առնչված են մարդկանց ամենօրյա կյանքի հետ: Եվ այստեղ բանը միայն թերությունների քննադատությունը չէ: Մարդիկ այդ ամենն ուղղակի կապում են վերակառուցման հետ, ասում, թե այն իբր առայժմ ոչինչ չի տալիս տնտեսական ու սոցիալական առումով, որ շատ դեպքերում իրավիճակը նույնիսկ վատացել է: Ընդհանուր առմամբ խոսքը շատ լուրջ բաների մասին է: Եվ այդ ամենը պահանջում է լուրջ ու խոր վերլուծություն, օբյեկտիվ, ճշմարտացի գնահատական:

Իսկ իրականում ինչպե՞ս են գործերը: Ամեն ինչ զգալիորեն ավելի բարդ է, ընկերներ, եթե վերցնենք ընդհանուր պատկերը: Այդ առնչությամբ կկամենայի տալ տնտեսության մեջ և սոցիալական ոլորտում տեղի ունեցող պրոցեսների հակիրճ բնութագիրը:

Չեմ բերի շատ թվեր, որոնք բնութագրեին տարբեր ճյուղերի զարգացումը: Կասեմ միայն, որ մի կողմից՝ անցած տարին կարծես թե վատ ցուցանիշներով չավարտվեց: Ազգային եկամտի և աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը ավելի բարձր էին, քան նախորդ տարում և տասնմեկերորդ հնգամյակում: Բավական նշանակալից էին աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, որը, ինչպես ինքներդ եք հասկանում, ինքնին շատ կարևոր է:

Թեպետև դանդաղ (մենք լրիվ գոհ չենք այդ ամենից), բայց և նկատվել են խոր փոփոխություններ էլեկտրոնիկայի, մեքենաշինության բնագավառում: Բարեփոխվում է այն ամենը, ինչ վերաբերում է ֆոնդահատույցին, մետաղատարությանը և այլն: Աճել է նաև պարենամթերքի և բնակչության համար արդյունաբերական ապրանքների արտադրությունը, թեպետև ոչ այնքան, որքան մենք կցանկանայինք: Ասենք, ապրանքաշրջանառությունն էլ անցյալ տարի ավելացավ այնպիսի չափերով, որպիսիք չէին եղել նախորդ շատ տարիների ընթացքում: Արագ տեմպերով է աճում բնակչության ցույց տրվող սպասարկումների իրացումը: Այնպես որ սպառման մակարդակը, ինչպես ասվում է, բնականորեն աճել է, այդ թվում և մեկ շնչի հաշվով:

Վերակառուցումը դրականորեն է ազդում նաև սոցիալական ոլորտի զարգացման վրա: Չէ՞ որ բոլոր դժվարություններով հանդերձ, այն դեպքում, երբ հնգամյակը արդեն բաշխագրված էր, մենք միջոցներ գտանք և բժշկության համար, և կրթության համար, և լրացուցիչ միջոցներ բնակարանային շինարարությունը արագացնելու համար: Դրա շնորհիվ էլ շարունակվում է բնակարանների, նախադպրոցական հիմնարկների, հիվանդանոցների, պոլիկլինիկաների, ակումբների, մշակույթի տների գործարկումը ավելի մեծ ծավալներով, քան նախկինում: Իսկ չէ որ այդ ամենը նույն-

պես անմիջականորեն վերաբերում է բնակչության կենսական պահանջմունքների բավարարմանը:

Ստացվում է, որ ամեն ինչ ավելացել է: Բայց դուք լսում եք ինձ և ձեր մեջ բնականաբար հարց է ծագում՝ բայց, ի վերջո, ու՞ր է այդ ամենը: Ինչու՞ են շարունակվում հերթերը խանութներում և անհրաժեշտ շատ իրերի պակասը չի նվազում:

Ահա այստեղ էլ հենց, ընկերներ, մենք մոտենում ենք տնտեսության ներկայիս վիճակի հանգուցային հարցին՝ ֆինանսական վիճակին, դրամական շրջանառությանը, դրամական միջոցների և ապրանքների հաշվեկշռվածությանը: Իրավիճակը հանկարծակի չի ծագել: Ամենածանր ժառանգությունը, որ ստացել ենք անցյալից, թերևս, պետբյուջեի դեֆիցիտն է, որը խնամքով թաքցվում էր հասարակայնությունից, բայց փաստորեն այն գոյություն ուներ: Եվ, իհարկե, դեֆիցիտը կործանարար ազդեցություն է ունենում ամբողջ ժողովրդական տնտեսության վրա: Երկրում դրամական շրջանառության վրա լրջորեն էր անդրադառնում ժողովրդական տնտեսության շատ ճյուղերում փաստորեն չվաստակած փողեր վճարելու ոչ պիտանի պրակտիկան: Իսկ դա վիթխարի լարվածություն էր ստեղծում սպառողական շուկայում:

Բավական է ասել, որ վերջին քսան տարում բնակչության դրամական եկամուտներն ավելի արագ էին աճում, քան ապրանքների արտադրությունը: Նման իրավիճակը զգալիորեն կապված է ինվեստիցիոն քաղաքականության մեջ եղած խոշոր սխալների հետ, երբ միջոցները փոշեցրվում էին ըստ բազմաթիվ օբյեկտների, ինչը հանգեցնում էր կարողությունների գործարկման ժամկետների ձգձգմանը, զսպում անհրաժեշտ ապրանքների արտադրության աճի տեմպերը: Նաև ուղղակի ասենք, որ շատ միջոցներ էին հատկացվել այնպիսի օբյեկտների կառուցմանը, որոնք պարզապես անհրաժեշտությամբ չէին թելադրված:

Թույլ էին տրվել նաև ստրատեգիական կարգի սխալներ և շատ տասնամյակների ընթացքում պատշաճ ուշադրության չէին արժանանում թե գյուղատնտեսությունը, թե թեթև, թե սննդի արդյունաբերությունը, թե սպասարկման ոլորտը: Եվ պետք է ասել, որ տնտեսության մեջ և հատկապես սպառողական շուկայում պրոբլեմի սաստկացումը բոլորս էլ վաղուց էինք զգում: Բայց ինչպե՞ս էր լուծվում այն: Նավթի գների փոփոխումների և նրա վաճառքի ծավալների ավելացման հաշվին, գինու և օղու արտադրությունն ավելացնելու հաշվին:

Ցավոք, մեզ առայժմ չի հաջողվել շտկել գործերի վիճակը ֆինանսական տնտեսության մեջ և դրամական շրջանառության ոլորտում: Իրավիճակը նույնիսկ սրվում է: Դա կապված է նաև համաշխարհային շուկայում նավթի գների անկման հետ, որի հետևանքով 1985—1988 թվականներին մենք պակաս ենք ստացել 37 միլիարդ ռուբլի: Խիստ նվազեցին հասույթն ու եկամուտների մուտքը ալկոհոլային խմիչքների վաճառքից, որի հետևանքով այդ նույն ժամանակամիջոցում պակաս ստացվեց 49 միլիարդ ռուբլի: Ճիշտ է, այդ հարցի առթիվ տարբեր դատողություններ են հայտնվում: Ոմանք կարծում են, թե դա ներկայիս ղեկավարության սխալի հետևանքն է: Կարծում եմ, որ դա անհիմն մեղադրանք է: Մենք կարող ենք ասել միայն այդ գիծը վարելիս թույլ տրված որոշ աղավաղումների մասին, բայց բուն գիծը ճիշտ է: Այս սխալների արմատները գալիս են հեռավոր անցյալից, երբ գործերը շտկում էին գինու, օղու վաճառքի և ժողովրդին հարբեցողության մատնելու հաշվին: Տեսեք, մեզանում պակասել են թե իրավախախտումները հարբեցողության հողի վրա, թե մահացու ելքերը, և առողջացել է իրադրությունը ընտանիքներում, հասարակության մեջ, արտադրությունում: Ոմանք ասում են, թե երկրում կարգապահությունը իբր թուլացել է: Մինչդեռ տվյալները ցույց են տալիս, որ այդ ժամանակամիջոցում այդ և այլ պատճառներով գործալքումները, աշխատանքի չներկայանալը մեկուկես անգամ կրճատվել են:

Մեր կորուստներին, անշուշտ, պետք է ավելացնել չնախատեսված բարդացումները, ինչպես Չեռնոբիլի ատոմակայանի վթարը: Իսկ այժմ էլ դրան ավելացավ նաև Հայաստանում տեղի ունեցած երկրաշարժը: Եվ ինչ թաքցնենք. մենք մեծ վնասներ ենք կրում նաև Աֆղանստանի իրավիճակի կապակցությամբ:

Բայց, որպեսզի պատկերը լրիվ լինի, կարծում եմ, պետք է ասել նաև մեր սեփական վրիպումների մասին: Այդուհանդերձ, մենք կարող էինք ավելին անել, քան արել ենք, որպեսզի իրավիճակը բարեփոխենք: Ես արդեն ասացի աշխատանքի արտադրողականության աճի բավականաչափ արագ տեմպերի մասին: Անցյալ տարվա համեմատությամբ՝ 5,1 տոկոսով: Բայց պետք է ասեմ նաև մի այլ բան. անցյալ տարի աշխատավարձն ավելացավ 7 տոկոսով, այսինքն աճեց շատ ավելի արագ, քան աշխատանքի արտադրողականությունը: Թե դա ինչի է հանգեցնում, ինքներդ եք հասկանում:



Մենք շատ դանդաղ ենք լուծում ինվեստիցիոն քաղաքականության մեջ անհրաժեշտ ճշգրտումներ մտցնելու, կապիտալ շինարարության մեջ կարգուկանոն հաստատելու խնդիրները: Ուղղակի ասենք, սկզբում գործը առաջ էր շարժվում, իսկ հետո թուլություն դրսևորեցին: Դա վերագրում եմ նախ և առաջ կենտրոնական ղեկավարությանը: Մենք ոչ միայն չնվազեցրինք անավարտ օբյեկտների քանակը, այլև նույնիսկ թույլ տվեցինք դրանց աճ: Առայժմ մեծ են նյութական ռեսուրսների պաշարները ձեռնարկություններում, իսկ դա չէ որ այլ բան չէ, քան ազգային եկամտի մեռցնում: Եվ, անշուշտ, այն ամենի հետ մեկտեղ, ինչ ասվեց ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աճի մասին, պետք է նշել, որ այդ ապրանքների թողարկման պլանները թերակատարվեցին, և դրանք տակավին անբավարար են, եթե հաշվի առնենք շուկայում տիրող սուր իրավիճակը:

Կարծում եմ, որ մենք մեր հաշվին պետք է վերագրենք նաև այն, որ դեռևս տնտեսական ռեֆորմը չի սկսել գործել ինչպես հարկն է: Մենք մինչև վերջ չքանդեցինք վատնողական էկոնոմիկայի մեխանիզմը: Տնտեսավարման արդյունավետ մեթոդների յուրացումը, ու նախ և առաջ վարձակալման, տնտեսական հաշվարկի, ինքնաֆինանսավորմանն անցնելը, այնուամենայնիվ դանդաղ է ընթանում, և սա մենք պետք է խոստովանենք: Այդ պրոցեսները դեռևս դիմադրության են հանդիպում հասարակության մեջ: Շատերի համար անսովոր էր մարդու նոր դիրքը արտադրության մեջ, սեփականության հետ առնչության նոր բնույթը: Չէ որ մենք ուզում ենք հաղթահարել մարդու օտարացմանը արտադրամիջոցներից, աշխատավորի մեջ վերստեղծել տիրոջ զարգացած զգացում, բացահայտել նրա անձնական կարողությունները:

Հարցերի այդ ամբողջ համալիրը տարեվերջին ամենաանեռուն քննարկման առարկա դարձավ քաղբյուրոյի երկօրյա նիստում, որին մասնակցում էին կառավարության անդամները, պլանաֆինանսական մարմինների, մի շարք մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ: Նախատեսում ենք այդ խոսակցությունը շարունակել հունվարի 14-ին՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդլայնված նիստում, քննարկելով տարվա արդյունքները: Մենք փորձեցինք գտնել նաև այն հարցի հիմնավորված պատասխանը, թե այսուհետև ինչպես վարվենք, ինչպես գործենք ներկայիս իրական կացության մեջ, որպեսզի եռանդագին կենսագործենք արմատական տնտեսական ռեֆորմի սկզբունքները և հաղթահարենք մեր տնտեսության բացասական երևույթները:

Այս կապակցությամբ չեմ կարող չասել, որ 1989 թվականը այդ իմաստով շատ կարևոր փուլ կլինի արմատական տնտեսական ռեֆորմի իրականացման գործում: Նյութական արտադրության բոլոր ճյուղերը լրիվ ծավալով փոխադրվում են տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքների: Սա հասարակ խնդիր չէ: Եվ մենք պետք է այնպես գործենք, որ վճռականորեն վերացնենք բոլոր խոչընդոտները, որոնք խանգարում են վերակառուցման պրոցեսների ծավալմանը տնտեսության մեջ:

Մենք շատ ենք խորհել այն երևույթների շուրջը, որոնք ծագել են կոոպերատիվ շարժման, անհատական աշխատանքային գործունեության զարգացման առնչությամբ, և դրա վերաբերյալ նույնպես նախապատրաստվել են համապատասխան որոշումներ: Դրանք մի կողմից նպատակամղված են այն բանին,որ ամեն կերպ աջակցեն կոոպերատիվ շարժմանը, բայց և դրա հետ մեկտեղ ստեղծեն խեղաթյուրումների անհրաժեշտ հակակշիռներ այդ կարևոր գործում: Այստեղ մենք պետք է ավելի հմտորեն աշխատենք: Մենք կորցրել ենք այն փորձը, թե ինչպես վարել գործը կոոպերատորների հետ: Իսկ չէ որ այն հսկայական էր սովետական իշխանության առաջին տարիներին, և առհասարակ Ռուսաստանում: Նույնիսկ պատերազմից հետո, երբ արդկոոպերացիա կար, նման փորձ գոյություն ուներ: Հիմա մենք հարկադրված եղանք այդ ամենը վերհիշել և դեռ ավելին՝ մեկնել թե սոցերկրներ, թե Շվեդիա, Նորվեգիա, տեսնել, թե այնտեղ ինչպես է աշխատում կոոպերատիվ մեխանիզմը, թե ինչպես են կառավարում այդ պրոցեսները:

Ինչևէ, այդ ամենը, ընկերներ, մենք կկատարենք: Հիմնավորապես առաջ են մղվելու գիտատեխնիկական առաջադիմության ծավալման հետ կապված պրոցեսները: Այստեղ նույնպես նկատի է առնվում խթանիչ միջոցառումների իրականացում, որպեսզի առավելություն ստեղծվի այն աշխատավորական կոլեկտիվների համար, որոնք բռնել են արդիականացման ուղին: Այն ձեռնարկությունը, որը այս կամ այն կերպ ընդգրկվում է արդիականացման և նոր արտադրանքի, նոր տեխնոլոգիայի

յուրացման ոլորտում, հայտնվում է տնտեսական տեսակետից ավելի բարդ դրության
մեջ: Նշանակում է՝ մեր մեխանիզմի մեջ ամեն ինչ չէ, որ մտածված է մինչև վերջ:
Ներկայումս առաջարկություններ են նախապատրաստվում այդ բնագավառի վերա-
բերյալ: Պետք է խոստովանել, որ մեզանում չի մշակված հարկային քաղաքականու-
թյան այնպիսի մեխանիզմ, որը ճկունորեն արձագանքեր տնտեսական իրադրությանը,
խթաներ այն ճյուղերը, գործունեության հենց այն տեսակետը, որը պահանջվում է,
և ընդհակառակն՝ պատժեր գոփողականության համար:

Կարդում ես այդ հարցի վերաբերյալ հրապարակախոսների, տնտեսագետների
նյութերը և պարզվում է, որ բոլոր հեղինակներն էլ հմուտ քննադատներ են, մինչդեռ
կոնստրուկտիվ առաջարկությունները քիչ են: Սա մեր դժբախտությունն է, որի հա-
մար չպետք է մեղադրել ոչ ոքի. նախկինում նման առաջարկությունների կարիք չի
եղել, չի եղել նաև սոցիալական պատվեր: Բայց եթե մենք ուզում ենք ավելի լավ
ապրել, գործն ավելի լավ տանել, նշանակում է՝ պետք է սովորել կոնստրուկտիվ
մտածել:

Կյանքը ցույց է տալիս, որ հարկավոր է արագացնել անցումը մեծածախ առև-
տրի, ձեռնարկությունների անմիջական կապերի: Մեր հոգածության առաջնահերթ
առարկան պատշաճ նախադրյալների ստեղծումն է գյուղատնտեսական հատվածում
տնտեսական հարաբերությունների արմատական վերակառուցման ու սոցիալական
վերափոխման համար: Այդ առթիվ մեր դատողությունների էությունը ձեզ հայտնի
է, և չեմ ուզում մանրամասնել հարցը, առավել ևս, որ առաջիկայում մենք ՍՄԿԿ
Կենտկոմի հատուկ պլենում ենք անցկացնելու այդ հիմնախնդիրների շուրջը:

Ծավալված բանավեճում առանձնապես սուր էր բարձրացվում գնագոյացման
ռեֆորմի և գների վերանայման հարցը: Պետք է ասել, որ դա տնտեսական ռեֆորմի
կարևորագույն և սկզբունքային հարցերից մեկն է: Առանց դրա ճիշտ, գիտականորեն
հիմնավորված լուծման անհնար է ստեղծել ժամանակակից արդյունավետ հակա-
ծախսումային տնտեսագիտական մեխանիզմ: Բայց դրա հետ մեկտեղ այդ նույն հար-
ցը իր մյուս կողմով առնչվում է աշխատավորության դրությանը:

Ի՞նչ ցույց տվեց այդ առթիվ տեղի ունեցած բանավեճը: Նախ, որ որոշ ընկեր-
ներ կարողացան մի քանի ամսում երկու-երեք անգամ փոխել իրենց տեսակետը:
Դա ես ասում եմ ոչ թե հանդիմանելու համար, այլ հաստատելու, թե որքան բարդ
հարց է դա: Անգամ գիտակ մարդիկ, ինչպես տեսնում եք, ոչ մի կերպ չեն կարողա-
նում հասնել պրոբլեմի էությանը: Անչափ շատ դժգոհություններ են արտահայտվում
կենտրոնի հասցեին: Ինչու՞ է, իբր, նա լռում: Նախ և առաջ ուզում եմ ասել, որ կենտ-
րոնը չի լռում: Այդ առումով կենտրոնի սկզբունքային դիրքորոշումը հայտնի է, և
այն չի փոխվել: Մենք ելնում ենք նրանից, որ գնագոյացման հարցերը լուծելիս մենք
պետք է աշխատավորների կենսամակարդակի իջեցում թույլ չտանք: Սա է գլխա-
վորը: Ըստ երևույթին, մեզ համար շատ կարևոր է գների և գնագոյացման ռեֆորմի
անցկացման ժամանակի ու տեմպերի ընտրությունը: Մենք պետք է այս ամենը ուշա-
դրությամբ կշռադատենք, ինչ ժամկետներում և ինչ տեմպերով անցկացնել դա:

Պետք է ասեմ, որ կենտրոնի «կուլիսային մանրների» հաշվով բոլոր խոսակցու-
թյունները, կենտրոնի հասցեին եղած ամեն տեսակ կասկածները, թե այնտեղ նորից
ուզում են այդ գործը կատարել թաքուն և ժողովրդին խաբելու նման մի բան անել,—
այս ամենը անպատասխանատու չարարկություն է: Իսկ քանի որ հարցը վերաբերում
է շատ լուրջ պրոբլեմի, ես կասեի, որ ոմանց պետք է հիշեցնել դատողությունների
պատասխանատվության մասին: Պարզապես հարկավոր է նկատի ունենալ, որ այժմ
հիմնավոր աշխատանք է կատարվում, դրան մասնակցում են գիտնականների, մաս-
նագետների, հասարակայնության ներկայացուցիչների լայն շրջաններ: Եվ երբ լուրջ
առաջարկություններ ի հայտ գան այդ հաշվով, մենք դրանք անպայման կդնենք հա-
մաժողովրդական քննարկման: Այդ հարցերը գաղտնի չեն լուծվի: Ես սա մեկ անգամ
էլ եմ ուզում ամենայն պատասխանատվությամբ ընդգծել:

Անցած տարին մեծապես պարզեց նաև կենտրոնի դերը գիտատեխնիկական,
կառուցվածքային և ֆինանսական քաղաքականության պրոբլեմների լուծման գոր-
ծում: Այս բոլոր հարցերը հարկավոր է ամուր հսկողության տակ պահել: Իր ճիշտ,
գիտականորեն հիմնավորված լուծումներով կենտրոնը պետք է իրավական, տնտե-
սագիտական նախադրյալներ ստեղծի մեր էկոնոմիկայի զարգացման գործում թույլ
տրված ձևախախտումների շտկման և արմատական-տնտեսական ռեֆորմի հետևո-
ղական իրականացման համար: Ինչպես հասկանում եք, խոսքը հրամայական մե-
թոդների մասին չէ: Ոչ, հարցն այն է, որ, հենվելով գիտելիքների վրա, տեսնենք օբ-



յեկտիվ պրոցեսները, ժամանակին ընդունենք ընդհանուր տնտեսական բնույթի ո-
րոշումներ:

Մեզ ուժեղ կենտրոն է պետք: Սա թելադրվում է մեր էկոնոմիկայի բնույթով,
պետության ֆեդերատիվ բնույթով: Հարկավոր է հիմնավորել արտադրողական ու-
ժերի տեղաբաշխումը, ռեգիոնալ շահերի ներդաշնակցումը, հանրապետությունների
զարգացումը: Առանց կենտրոնի դա կարող է անցանկալի բնույթ ընդունել, ասենք
նաև՝ պարզապես անհնար է: Այստեղ կարևոր է ճիշտ ըմբռնել կենտրոնի դերի և
նախաձեռնության հարաբերակցության դիալեկտիկան, տեղերի ինքնուրույնությունը:

Իսկ եթե խոսելու լինենք գործնական առումով, ապա կենտրոնի ամենաանհե-
տաձգելի ու սուր խնդիրն է ապահովել շուկայի հաշվեկշռությունը և կարգավորել ֆի-
նանսական հարաբերությունները: Պրակտիկան ցույց է տալիս, որ երևի մենք չենք
կարող այստեղ խուսափել նաև բավական սուր, վճռական միջոցներից, որոնք նախ
և առաջ կշոշափեն բյուջեի գծով մեր ծախսերը, ներառյալ ժողովրդի սոցիալական
կարիքների հետ ուղղակի առնչություն չունեցող որոշ խոշոր ծրագրերի վրա կատար-
վելիք ծախսերը: Հարցն այնքան սուր է ծառացած, որ մենք ստիպված կլինենք
անդրադառնալ նաև պաշտպանության մեր ծախսերին: Նախնական ուսումնասիրու-
թյունը ցույց է տալիս, որ մենք կարող ենք կրճատել դրանք, առանց պետության
անվտանգության և պաշտպանունակության մակարդակն իջեցնելու: Դա կվերաբերի
նաև մյուս ոլորտներին: Պետք է պատասխանել այն հարցին, թե մենք մինչև երբ
պիտի բյուջեից ֆինանսավորենք ձեռնարկությունների անշահութաբեր աշխատանքը:

Վերջին հաշվով, վերակառուցման բախտը կախված է աշխատավորական կո-
լեկտիվների, տնտեսական կադրերի, ամբողջ կուսակցության գործունեությունից, որը
նպատակամղված է արմատական տնտեսական ռեֆորմի կուրսի իրականացմանը:
Այսօր առաջին պլան է դուրս գալիս կոնստրուկտիվ, ստեղծարար աշխատանքը: Սա
պետք է հասկանանք մենք բոլորս, ընկերներ: Միտինգներում ավելի ուրախ է, բայց
որպեսզի վերակառուցումը առաջ ընթանա, հարկավոր է մեր բոլոր մտավոր ուժերը
նպատակամղել առօրյա աշխատանքին:

Անցած տարին երևի մեր հիշողության և պատմության մեջ կմնա որպես դեմո-
կրատացման պրոցեսների ոչ միայն լայնությամբ, այլև խորությամբ զարգացման
տարի: Դա նախ և առաջ կապված է քաղաքական ռեֆորմների իրականացմանը,
իրավական պետության ստեղծմանը ռեալ կերպով անցնելու հետ: Դասեր քաղելով
անցյալից, մենք երաշխիքներ ենք ստեղծում այն բանի, որ չկրկնվի այն ամբողջ
բացասականը, ինչ տեղի է ունեցել մեր պատմության մեջ և ինչը հսկայական վնաս
է պատճառել սոցիալիզմին, ձևախեղել նրա մարդասիրական սկզբունքներն ու դրա-
նով իսկ երկար տարիներով և տասնամյակներով արգելակել առաջընթացը: Թե՛
անցյալի փորձը, թե՛ վերջին տարիների փորձը ցույց է տալիս, որ հեղափոխական
վերափոխումների հաջողությունը կախված է այն բանից, թե ժողովուրդը որքան
ռեալ է ներգրավված այդ պրոցեսի մեջ: Իսկ խնդիրն անհնար է լուծել առանց
քաղաքական սիստեմը հիմնավորապես վերափոխելու:

Մենք պետք է սոցիալիստական լայն դեմոկրատիայի սկզբունքներով նոր բո-
վանդակություն, նոր բնույթ հաղորդենք երկրի բոլոր հասարակական հաստատու-
թյունների գործունեությանը:

Երբ մենք ընթանում էինք դեպի XIX կուսակցական կոնֆերանս, մեր առջև,
ըստ էության, կանգնած չէր այն հարցը, թե կարիք կա՞, թե՞ չկա բացելու վերակա-
ռուցման ևս մեկ ճակատ, փշրելու հրամայական բյուրոկրատական կառուցվածքը:
Մեզ պարզապես դրան հանգեցրեց ինքը կյանքը, ուստի, երբ մեզ ասում են՝ պետք
է արդյոք պայքարել միանգամից այդքան գործերի համար, ապա այդ դատողություն-
ները կարելի է ճիշտ համարել միայն այն առումով, որ մեզ մոտ միանգամից շատ
հարցերի լուծման բեռ է կուտակվել: Բայց մենք անհիմն ենք համարում այն դատո-
ղությունները, որ կարելի էր հետաձգել քաղաքական ռեֆորմը և մյուս խնդիրների
լուծումը, որ հարկավոր էր սկզբում լուծել տնտեսական հարցերը, կերակրել մարդ-
կանց և այլն:

Միգուցե անտեղյակ մարդու համար դա հրապուրիչ էլ է: Բայց այսպիսի հար-
ցադրումը քաղաքական և գիտական տեսակետներից պարզապես անլուրջ է: Մենք
չենք կարող լուծել կենսական տնտեսական պրոբլեմները, եթե մեզանում չսկսի
գործել վերնաշենքը, եթե մենք չավերենք հրամայական-բյուրոկրատական համա-
կարգը: Բայց ինչպե՞ս կարելի է ավերել այն: Ոմանք առաջարկում են օգտագործել
1937 թվականի տխուր փորձը՝ «ցրել», «բուլդոզերով մաքրել» և այլն: Ոչ, այսպիսի
բան մենք երբեք թույլ չենք տա: Մենք պետք է ստեղծենք այնպիսի մեխանիզմներ,

որոնք ինքնակառավարվեին, ընդ որում այդ բոլոր պրոցեսների մեջ գլխավոր գործող անձին՝ ժողովրդին ներգրավելու միջոցով: Չէ որ սա այն է, հանուն ինչի էլ, ըստ էության, աշխատավորները բարիկադների վրա ելան 1917 թվականի հոկտեմբերին, որպեսզի իշխանությունն իրենց ձեռքը վերցնեն և իրագործեն այն:

Ոչինչ տեղի չի ունենա տնտեսական և սոցիալական ոլորտներում, եթե մենք միաժամանակ վճռականորեն չիրականացնենք քաղաքական սիստեմի խոր վերափոխման խնդիրը: Առանց դրա անհնար է բացահայտել սոցիալիստական դեմոկրատիայի պոտենցիալը, անհնար է ամբողջ ժողովրդին ներգրավել վերափոխման պրոցեսների մեջ: Հենց այդ հարցերը՝ քաղաքական ռեֆորմի հարցերն էլ գտնվում էին XIX կուսկոնֆերանսի կենտրոնում: Հիմա, երբ մենք հնարավորություն ունենք մի ինչ-որ հեռավորությունից հետ նայել և արդեն հանգիստ գնահատել իրավիճակը, կարելի է ասել, որ կոնֆերանսը բնագծային իրադարձություն է երկրի կյանքում: Մեր պատմությունը, վերակառուցման պատմությունը կարելի է բաժանել երկու փուլի՝ մինչև XIX կուսակցական կոնֆերանս և դրանից հետո, այն, ինչ տեղի է ունենում նրա մշակած քաղաքական դրույթների հիման վրա:

Հիմա, ինչպես ինձ թվում է, մենք բոլորս համակարծիք ենք կոնֆերանսի նշանակության գնահատման հարցում: Բայց, իմ կարծիքով, ավելորդ չէր լինի այստեղ որոշ բաներ վերհիշել: Չէ որ կոնֆերանսի նախօրեին եղավ մի որոշակի պահ, երբ բավական բարձր սկսեցին ձայներ հնչել ոչ նրա օգտին: Ավելին, առաջարկվում էր, և համառորեն, հետաձգել կոնֆերանսը, նրա անցկացումը համարելով գրեթե որպես վերակառուցման դիրքերի զիջում: Այժմ մենք կարող ենք ասել, որ ինքը կյանքը մերժեց այդ կասկածելի տրամադրություններն ու կոչերը: Կոնֆերանսի անցկացման շնորհիվ մենք ունենք քաղաքական հստակ դրույթներ, որոնք մեր ամբողջ վերակառուցմանը հաղորդեցին այլ տեմպ, այլ խորություն, նոր դինամիկա: Այնպես որ Կենտկոմի գիծը ճիշտ և արդյունավետ դուրս եկավ: Այն ընդունված է կուսակցության և ժողովրդի կողմից:

Ճիշտ է, բանը չի սահմանափակվում միայն այս հանգամանքով: Կոնֆերանսից հետո, երբ սկսվեց նրա դրույթների իրագործումը, մենք նորից նման իրավիճակի հանդիպեցինք՝ նորից քննադատական տրամադրության ծանոթ ձայներ հնչեցին: Սկսեցին կասկածել Կենտկոմին, ընդ որում ոչ ավելի, ոչ պակաս, քան կոնֆերանսի որոշումներից նահանջի մեջ: Ու նորից առաջարկություն ի հայտ եկավ՝ հիմա էլ հետաձգել Գերագույն սովետի նստաշրջանը, որը պետք է ընդուներ քաղաքական ռեֆորմի առաջին փուլին վերաբերող կարևորագույն որոշումներ: Դուք գիտեք, որ այդ դեպքում էլ Կենտկոմի դիրքորոշումը լայն պաշտպանություն գտավ հասարակության մեջ, իսկ տեղի ունեցած համաժողովրդական քննարկման հաշվառմամբ վերջնամշակված առաջարկություններն ընդունվեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի կողմից:

Ինչու՞ եմ ես այս ամենն ասում, ընկերներ: Ոչ միայն այս դրվագները, այլև վերակառուցման ամբողջ փորձը, համոզիչ կերպով ցույց են տալիս կուսակցության անփոխարինելի դերը որպես վերակառուցման գաղափարների կուտակիչ և նրա պրակտիկ մարմնավորման երաշխավոր: Եվ երբ ասում եմ սա, ապա ամենևին չեմ ուզում ինչ-որ վարդագույն պատկեր ներկայացնել: Ոչ: Կուսակցության դերը որպես քաղաքական ավանգարդի, իհարկե, իրականանում է բարդ, հակասական իրավիճակում, կարծիքների բախման պայմաններում: Ուզում եմ միայն արտահայտել մեկ, ամենագլխավոր միտքը՝ խոր վերափոխումների փուլում մենք ավելի շատ ենք զգում տեսականորեն, գաղափարապես, կազմակերպորեն ուժեղ կուսակցության կարիքը, որը գործի լենինյան սկզբունքներով, ներկուսակցական լայն դեմոկրատիայի հիման վրա, որը ենթադրում է թե երկխոսություն, կարծիքների համադրում, թե մեծագույն պատասխանատվություն ժողովրդի հանդեպ:

Եվ միանգամայն տրամաբանական է, որ քաղաքական սիստեմի վերակառուցման մեջ կուսակցությունը պետք է հենց իրենից սկսի: Մենք սկսեցինք գործառնությունները կուսակցական, տնտեսական և սովետական մարմինների միջև բաշխելուց, նպատակ ունենալով բացահայտել կուսակցության դերն ու պոտենցիալը որպես քաղաքական ավանգարդի, վերածնելու սովետների առաջնակարգ բնույթը որպես ժողովրդապետության իսկական մարմինների: Հենց այս տեսանկյունից է տեղի ունենում նաև ամբողջ կուսակցական կյանքի վերակառուցումը, բարձրանում ընտրովի մարմինների դերը, կատարելագործվում կուսակցական ապարատի կառուցվածքը՝ սկսած շրջկոմներից և վերջացրած ՍՄԿԿ Կենտկոմով: Ի դեպ, որոշում է ընդունվել կուսակ-



ցության Կենտրոնական կոմիտեի ապարատը 40 տոկոսով կրճատելու մասին և այդ ուղղությամբ աշխատանքի զգալի մասն արդեն արված է: Ստեղծված են Կենտկոմի հանձնաժողովներ, փոփոխված են կուսակցական ապարատի գործառնությունները. դրանք կողմնորոշված են դեպի քաղաքականություն:

Տեղի է ունենում կուսակցական կազմակերպությունների առողջացման ակտիվ պրոցես: Մենք տեսնում ենք, թե ինչպես է ամսեամիս մեծանում կոմունիստների նախաձեռնությունը, նրանց սկզբունքայնությունը, պահանջկոտությունը, ինչպես են շատերը նրանցից, ում դեռ վերջերս այսպես կոչված բալաստ էին համարում, այսօր նոր պայմաններում ակտիվորեն մասնակցում են վերակառուցման բոլոր գործերին:

Կուսակցության մեջ արդեն վաղուց այդպիսի հաշվետու-ընտրական կամպանիա չէր եղել՝ թե մթնոլորտով, թե բովանդակությամբ, թե որոշումները քննարկելիս և ընդունելիս, ընտրովի մարմինները կազմելիս կոմունիստների ցուցաբերած ակտիվությամբ: Իհարկե, բնավ էլ ամեն ինչ չէ, որ այնպես է գնում, ինչպես ցանկալի կլիներ, բայց իրավիճակը միանգամայն այլ է: Տեղի է ունենում կադրերի նորացման պրոցես, ընդ որում լայն դեմոկրատիայի սկզբունքներով: Բավական է ասել, որ, նախնական տվյալների համաձայն, շրջանային և քաղաքային կոմիտեների կազմը նորացել է մոտավորապես 60 տոկոսով, իսկ մարզկոմների ու երկրկոմների կազմը՝ ավելի քան կիսով չափ: Նշանակալի փոփոխություններ են տեղի ունեցել նաև ընտրովի կուսակցական մարմինների քարտուղարների շրջանում և բյուրոներում: Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների մեկ երրորդը առաջին անգամ է ընտրվել: Նրանցից յուրաքանչյուր երկրորդը ընտրվել է այլընտրական հիման վրա: Այս հիման վրա ընտրվել է կուսակցության քաղկոմների ու շրջկոմների 1117 քարտուղար, մարզկոմների մի շարք քարտուղարներ, այդ թվում առաջին: Պետք է ասել, որ շատ կոնֆերանսներում իրավիճակը անչափ սուր է եղել: Պատգամավորները բարձր պահանջներ են ներկայացրել թեկնածուներին և մի շարք դեպքերում քարտուղարները, և անգամ առաջին քարտուղարները, քվեարկելիս չեն ընտրվել:

Թվում է, թե հաշվետու-ընտրական կամպանիան իր նշանակությամբ դուրս է գալիս ընդհանուր կուսակցական իրադարձությունների շրջանակներից: Այն ասես նոր ազդակ է հաղորդում երկրում տեղի ունեցող ամբողջ վերակառուցողական պրոցեսներին: Դա ժողովրդական դեպուտատների առաջադրման ծավալված կամպանիայի լավ նախերգանք է, նրանց առաջադրման, ովքեր պետք է իրենց առաջին համագումարում ընդունեն հսկայական նշանակության որոշումներ, արմատական փոփոխություններ մտցնեն պետական իշխանության կենտրոնական մարմինների գործառնության մեխանիզմի մեջ և միաժամանակ քննարկեն մինչև 2005 թվականն ընկած ժամանակաշրջանի տնտեսական ու սոցիալական զարգացման հեռանկարները:

Ասենք, առհասարակ սկսված տարին շատ հագեցված կլինի քաղաքական ռեֆորմի ծավալման ու խորացման առումով : Մենք պետք է անցնենք նրա երկրորդ փուլին՝ պետական մարմինների խոր վերակառուցմանը, հանրապետությունների, ինքնավար կազմավորումների ստատուսի կատարելագործմանը, կենտրոնի ու տեղերի միջև ներդաշնակ փոխհարաբերությունների հաստատմանը: Հարկավոր է այս հաշվով ընդունել կարևոր օրենքներ, որոնց մշակմանը մասնակցում են բոլոր հանրապետությունների ներկայացուցիչները, և դրանք պետք է ընդունվեն տեղերի ինքնուրույնության բարձրացման և ռեգիոնալ տնտհաշվարկի սկզբունքներին անցնելու կապակցությամբ:

Եվ վերջապես, արդեն առաջին ընթերցմամբ քննարկվել է տեղական ինքնակառավարման և տեղական տնտեսության մասին օրենքի նախագիծը: Առայժմ այն պատրաստ չէ լայն քննարկման, բայց արդեն մոտ ժամանակներս դա կարվի:

Աշնանը տեղի են ունենալու միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների, տեղական սովետների ընտրություններ և կազմվելու է տեղերում իշխանության և ինքնակառավարման նոր համակարգ:

Բազմակողմանի աշխատանք է տարվում իրավական ռեֆորմի շրջանակներում: Այստեղ համարյա պատրաստ են և շուտով համաժողովրդական քննարկման կներկայացվեն հետևյալ օրենքների նախագծերը. մասսայական ինֆորմացիայի միջոցների մասին, երիտասարդության մասին, խղճի ազատության մասին, հասարակական կազմակերպությունների մասին օրենքը և այլն: Ինչ վերաբերում է մասսայական ինֆորմացիայի միջոցների մասին օրենքին, ապա կարծում եմ, որ այդ անհրաժեշտ է և պետք է լավ բազա լինի այն բանի համար, որ մամուլը զգա թե ավելի մեծ վստահություն, թե ավելի մեծ պատասխանատվություն:

Իհարկե, ընկերներ, ինչ հարց էլ որ մենք քննարկելիս լինենք, անհնար է սահմանափակվել պարզապես փաստերի արձանագրմամբ: Կարևոր է տեսնել ամբողջ պրոցեսի դիալեկտիկան: Պատկերի ամբողջ հակասականությամբ հանդերձ, այնուամենայնիվ, նկատվում է, որ վերակառուցողական պրոցեսները զորեղանում են, իրենց ավելի ու ավելի շատ է դրսևորում կյանքի բոլոր ոլորտների նորացման միտումը: Այդ միտումն ամրապնդվում է, իսկ ամենագլխավորը՝ լայն պաշտպանություն է ստանում: Ինձ թվում է, որ կուսակցության, բոլոր քաղաքական, հասարակական հաստատությունների, մեր գիտության ու մշակույթի խնդիրն է աջակցել այդ պրոցեսների զարգացմանը:

Վերակառուցման իրենց մասշտաբով, ընդգրկմամբ ու խորությամբ աննախադեպ պրոցեսները օրգանապես շաղկապված են հասարակական գիտակցության մեջ տեղի ունեցող լուրջ տեղաշարժերի հետ: Վերակառուցման պրոցեսների հակասականությունը, բազմապատկված դրանց ընկալման, մարդկանց շահերի բարդությամբ և ոչ միանշանակությամբ, մեր ժամանակի իրողությունն է: Հասարակական գիտակցությունը նույնպես բեկում է ապրում նման այն բանին, ինչ տեղի է ունենում բուն կյանքում: Կարելի է ասել, որ հեղափոխական վերափոխումները, որոնց նպատակամղված է վերակառուցումը, անհնար են առանց հասարակական գիտակցության, մարդկանց հոգեբանության, մտածողության մեջ հեղափոխություն տեղի ունենալու: Դրանում անփոխարինելի, եզակի է մեր գիտական ու գեղարվեստական մտավորականության դերը, ուրեմն և՝ պատասխանատվությունը:

Ես արդեն քանիցս առիթ եմ ունեցել ասելու, և հարկ եմ համարում մեր հանդիպման ժամանակ մեկ անգամ ևս ասել, վերակառուցման մեջ մտավորականության ներդրած հսկայական ավանդի մասին, այն մասին, որ վերակառուցման հոգևոր ունին զգալի չափով գցվում է նրանց կողմից, ովքեր այն ընդունել են հոգով և սրտով, հասկացել են մեր պետական նավը նորացման զուլալ, լայնատարած ջրեր դուրս բերելու անհրաժեշտությունը:

Կուսակցությունը բարձր է գնահատում գիտնականների, մշակույթի գործիչների ավանդը բարոյաքաղաքական նոր մթնոլորտի ստեղծման գործում, որը հսկայական ազդեցություն է գործում հասարակության մեջ տեղի ունեցող բոլոր պրոցեսների վրա: Զգալի չափով այդ ջանքերի շնորհիվ է մեզ հաջողվել քայքայել մտածողության բազմամյա դրոշմակերպերը, քարացած աշխարհայացքը, հաղթահարել քաղաքական թմբիրը հասարակության մեջ: Այստեղ ոչ մի չափազանցություն չկա, և ես այս ամենի մասին խոսում եմ ոչ թե նրա համար, ձեզ հաճելի բան ասած լինեմ, այլ որպեսզի ընդգծեմ. հետագայում էլ վերակառուցման մասշտաբների մեծացման կապակցությամբ կբարձրանա ժողովրդի մտավոր ուժերի և առաջին հերթին մտավորականության դերը:

Ես կասեի, որ այստեղ գործունեության ասպարեզը ոչ միայն չի նեղանում, այլև շարունակ ընդլայնվում է: Խոսքն այն մասին է, որ մենք պետք է խորացնենք մեր տեսական հետազոտությունները, որոնք վերաբերում են սոցիալիզմի մասին, հսկայական պատմական խնդիրների լուծման ուղիների մասին նոր պատկերացումների ձևավորման հարցերին՝ մեր հասարակության որակապես նոր վիճակի անցնելուն:

Մենք չենք կարող վերակառուցման հույս ակնկալել, եթե չընդլայնվեն գիտական գիտելիքներն ու գիտության ավանդը տնտեսական խնդիրների լուծման գործում: Չեմ ուզում առանձնացնել գիտելիքների այս կամ այն ճյուղը: Մեզ համար կարևոր է զարգացնել թե հասարակական, թե բնական, թե տեխնիկական գիտությունները և թե հատկապես հիմնարար հետազոտությունները: Մեծ անելիքներ կան, արմատական ռեֆորմ է կատարվելու ժողովրդական կրթության ոլորտում: Այն պետք է քայլի կյանքին, հասարակության առողջացմանը համընթաց:

Երբ մենք գործնական տեսանկյունից ենք նայում մտավոր և բարոյական բարձր արժեքների սկզբունքներով մեր հասարակության նորացմանը, մենք չենք կարող գործը գլուխ բերել առանց հոգևոր ոլորտում հսկայական աշխատանք կատարելու: Վերակառուցումը ամեն ինչի կենտրոնում դնում է մարդուն: Մեզ համար այժմ, ինչպես երբեք, կարևոր է օգտագործել մեր բոլոր մշակութային նվաճումներն ու դրանք հարստացնել նոր ձեռքբերումներով:

Վերակառուցման կուլտուրական շերտը վակուումի մեջ, դատարկ տեղում չէ, որ ստեղծվում է: Նա ասես ներառնում է այն ամենը, ինչի հասել են մեր ժողովուրդները, մեր հասարակությունն ամբողջ բազմամյա պատմության, հեղափոխությունից հետո անցած վերջին 70 տարվա ընթացքում: Այս կապակցությամբ մենք պետք է լայն ճակատով ծավալենք մեր սեփական պատմությանը վերաբերող հետազոտությունները:



Պատմությանը դիմելու մեջ բացի դրականից ոչինչ չեմ տեսնում, որպեսզի ընկալվեն ժողովրդի բոլոր լավագույն նվաճումները և դրա հետ մեկտեղ գիտակցվի դառն փորձը ապագայում սխալներ թույլ տալուց խուսափելու համար:

Պետք է ասել, ընկերներ, որ հասարակության հոգևոր կյանքը, թերևս, երբեք մեզանում աչքի չի ընկել նման ակտիվությամբ, շահագրգռությամբ, նրան ոչ միայն մտավորականության, այլև ամբողջ ժողովրդի կենդանի մասնակցությամբ, ձևերի բազմազանությամբ: Կյանք են մտել բազմաթիվ նոր, հետաքրքրական բաներ, որոնք ամրապնդում են մարդու բարոյականությունը, վեհացնում նրան: Այս ամենն այսպես է, և դա մեր մեծ ակտիվն է, վերակառուցման հսկայական նվաճումը: Բայց այդ խոր, լայնընդգրկուն պրոցեսները, ինչպես և մյուս ոլորտներում, հեշտ չեն ընթանում, հաճախ կրում են հակասական բնույթ և, ուղղակի ասենք, չեն անցնում առանց այնպիսի երևույթների, որոնք մեր մեջ մտահոգություն և անգամ տագնապ են առաջ բերում: Այն բուռն պրոցեսը, որի ընթացքում տեղի է ունենում հրաժարումը հասարակական զարգացման քարացած դոգմաներից ու սխեմաներից, հասարակական հարաբերությունների քարացած ձևերի վերակառուցումը, հրապարակայնության ու դեմոկրատիայի միջոցով ժողովրդի հսկայական պոտենցիալ ուժերի ազատումը ոմանց հանել է հավասարակշռությունից, խուճապի մատնել: Ձայներ են լսվում հոգևոր և բարոյական արժեքների կազմալուծման մասին, թեև, ինձ թվում է, խոսքը հենց դրանց վերածնման մասին է: Երբեմն նույնիսկ առիթ է լինում լսելու, թե մենք համարյա նահանջում ենք սոցիալիստական սկզբունքներից ու իդեալներից: Մեզ ակնարկում են, թե տնտհաշվարկը, վարձակալությունը, կապալը, կոոպերացիան համարյա սոցիալիզմի դիրքերից զիջում է էկոնոմիկայի մեջ, թեև հենց այդ և ուրիշ ձևերի միջոցով էլ մենք ուզում ենք օգտագործել սոցիալիստական սեփականության, սոցիալիստական արտադրական հարաբերությունների հիմքում ընկած հսկայական պոտենցիալը, հաղթահարել օտարացումը, մարդուն վերադարձնել արտադրության տիրոջ վիճակի:

Լինում են նաև մեզ պարզապես ահաբեկելու փորձեր այն բանով, թե վերակառուցումն իբր պրոբլեմներ ու դժվարություններ է ծնել էկոնոմիկայի մեջ, սոցիալական, ազգամիջյան հարաբերություններում: Բայց չէ որ մենք լավ գիտենք, որ այս ամենը ժառանգված է անցյալից, կուտակվել է տարիներով, և վերակառուցումը սոսկ ի հայտ է բերել հին հիվանդությունները, որոնք թաքցվում էին խորքերում: Այնպես որ, եթե խոսելու լինենք վերակառուցման և այդ հիվանդագին պրոցեսների կապի մասին, ապա միայն, իմ կարծիքով, այն իմաստով, որ վերակառուցումը մեզ հնարավորություն է ընձեռում գիտակցել, հասկանալ այդ պրոբլեմների պատճառները և գտնել դրանց լուծման եղանակներ:

Իհարկե, վերակառուցման պրոցեսներում ջանում են մակաբուծական գոյություն պահպանել և չարարկել ծայրահեղականները, ամեն կարգի անպատասխանատու տարրերը: Դա կա, և մենք տեսնում ենք այդ բանը: Բայց դա առիթ չէ, որպեսզի վերակառուցումը կասկածի տակ դրվի կամ որպես պատրվակ օգտագործվի արգելակները գործի դնելու, վերակառուցման պրոցեսը կանգնեցնելու համար: Ի հայտ են եկել նաև այնպիսի արտահայտություններ, որոնցով ուզում են վերակառուցումն առհասարակ ներկայացնել որպես ամեն բան և ամեն ինչ ավերելուն նպատակամղված մի ինչ-որ դեստրուկտիվ բան: Եթե դա ավելորդ հուզականության և հիվանդագին երևակայության արդյունք է, ապա կարելի է հասկանալ: Բայց եթե դրա հետևում քաղաքական դիրքորոշում է թաքնված, ապա մենք այդ դիրքորոշումը պետք է մերժենք որպես անընդունելի:

Բայց հավասարապես անընդունելի է նաև մեկ այլ ծայրահեղություն՝ ձախական դիրքերից վերակառուցման ընթացքի և ուղղվածության գնահատումը: Մենք դեմ ենք վերակառուցման արհեստական խթանման փորձերին, վերակառուցման տեմպերն արագացնելու, փուլերի վրայից թռչելու ամեն կարգի կոչերին: Մենք առանձնապես վտանգավոր ենք համարում պայքարը սրելու և կրքերը արհեստականորեն բորբոքելու, կադրերը շուռումուռ տալու արկածախնդրական ու անպատասխանատու կոչերը, օգտագործելով այն նույն մեթոդները, որոնցից մենք ջանում ենք խույս տալ վերակառուցման միջոցով, մեր հասարակության դեմոկրատացման միջոցով:

Մեր ժողովուրդը երբեք չի համաձայնի, դրանում ես խորապես համոզված եմ, նաև անցյալի նկատմամբ, այն ամենի նկատմամբ, ինչ ապրվել է, արվել է, նախորդ սերունդների կյանքի նկատմամբ նիհիլիստական վերաբերմունքին:

Նման մոտեցումը փիլիսոփայական տեսակետից նշանակում է ժխտել ամբողջ նախընթաց փորձը և ժողովրդի ձեռք բերածը, չըմբռնել պատմության իմաստը, չըն-

կայել զարգացման դիալեկտիկան, որի ընթացքում անցյալից միշտ օգտագործվում է այն ամենը, ինչ կարող է ծառայել նոր շենքի կառուցմանը, և ժխտվում է այն ամենը, ինչը կաշկանդում է ժողովրդի պատմական գործունեությունը:

Այո, մեզ համար անցյալի փորձից շատ բան է անընդունելի՝ սոցիալիզմի ձևախեղումները, նրա ավտորիտար-բյուրոկրատական աղավաղումները, սոցիալիստական հասարակության կյանքի կազմակերպման այնպիսի ձևեր, որոնք ճնշում են ժողովրդի նախաձեռնությունը, նրան օտարացնում կենսագործունեության բոլոր ոլորտներում, նվաստացնում են անհատի արժանապատվությունը: Բայց մեզ համար անընդունելի են նաև «չկայացած սոցիալիզմի», «չհաջողված տնտեսափորձի» մասին, այն մասին դատողությունների գիտականության հավակնությունները, թե սոցիալիզմը համարյա նույնացված է անցյալում տեղ գտած ձևախեղումների հետ:

Ուստի մեզ համար հավասարապես անընդունելի են մեր հասարակության հետագա զարգացման ուղիների նորագույն դեղատոմսերը, որոնք կազմված են փոխառական արժեքների հիման վրա: Դա արդեն վերակառուցում չէ: Չէ որ մենք նրա միջոցով ուզում ենք բացահայտել սոցիալիզմի պոտենցիալը, նոր որակ հաղորդել մեր հասարակությանը: Իսկ այն, ինչ մեզ առաջարկվում է, ոչ այլ ինչ է, եթե ոչ անվստահություն մեր պատմական ընտրության նկատմամբ, սոցիալիզմի իդեալներին մեր ժողովրդի նվիրվածության և լենինյան սկզբունքներով, իրոք սոցիալիստական արժեքների հիման վրա հասարակությունը վերածնելու ժողովրդի ընդունակության նկատմամբ:

Մի խոսքով, ինչպես տեսնում ենք, վերակառուցման քննադատությունը «աջից», պահպանողական դիրքերից և նրա վրա հարձակումները «ձախից», վերջին հաշվով, շաղկապվում են: Եթե մենք հետևենք թե՛ մեկ և թե՛ մյուս կոչերին, ապա դուրս է գալիս, որ հարկավոր է ընթանալ ոչ թե մեր հասարակության նորացման, նրա առաջադիմական զարգացման ուղիով, ընթանալ առաջ, այլ հետ վերադառնալ:

Չէ որ, ըստ էության, դա թե մեր սոցիալիստական ընտրության, թե վերակառուցման իմաստի ու կոչման ժխտում է: Այս ամենի գիտակցման, մեր առաջընթացի հեռանկարների իմաստավորման, ըմբռնման գործում հսկայական պատասխանատվություն ունեն թե կուսակցությունը, թե հասարակության բոլոր մտավոր ուժերը, մեր գիտական ու գեղարվեստական մտավորականությունը, որի ձայնը լսում են, որի հեղինակության հետ հաշվի են նստում:

Այս կապակցությամբ չեմ կարող չխոսել այն միանգամայն անբնական հարաբերությունների մասին, որոնք առաջացել են ստեղծագործական մտավորականության միջավայրում: Որոշ չափազանց հարգարժան ընկերներ ներքաշվել են հաշիվներ մաքրելու, փոխադարձ մեղադրանքների մեջ, նվազագույն իսկ առիթն օգտագործում են, որպեսզի միմյանց ներկայացնեն անվայել լույսով: Ընդ որում այս ամենը թափանցում է թերթերի ու ամսագրերի էջեր, որը ժողովրդի մեջ առաջ է բերում ոչ միայն դառնություն, տարակուսանք, այլև պարզապես վրդովմունք: Եվ դա տեղի է ունենում բեկումնային իրավիճակում, երբ պահանջվում է լուծել հսկայական ստեղծարար խնդիրներ:

Թե ինչ են այս մասին խոսում և մտածում բանվորները, երևում է Մոսկվայի «Կալիբր» գործարանից վերջերս ստացված արձագանքներից: Մարդիկ ապշած ասում են. մենք ամաչում ենք մեր որոշ գրողների, գիտնականների համար, որոնց մենք սիրում ու հարգում ենք: Եկեք այս խորհրդակցությունում պայմանավորվենք. պատվախնդրությունը մի կողմ թողնենք, մտածենք ժողովրդի մասին, երկրի մասին:

Այժմ, երբ մեզ մոտ հսկայական չափով նոր գործեր են կուտակվել, ինչպես երբեք անհրաժեշտ է մեր ուժերի համախմբում վերակառուցման պրոբլեմների լուծման վրա, ես մեկ անգամ ևս կասեի՝ ստեղծարար աշխատանքի վրա դրանց առավելագույնս կենտրոնացում: Մենք հանդես ենք գալիս համախմբման օգտին ոչ թե ամեն գնով, այլ սկզբունքային հիմքի վրա, սոցիալիստական արժեքների հիմքի վրա, մենք հանդես ենք գալիս մեր հասարակության նորացմանը, սոցիալիզմին իսկական մարդասիրական բնույթ հաղորդելուն նպատակամղված վերակառուցման օգտին: Եկեք և մտածենք այդ մասին, և ամեն ինչ անենք հանուն դրա:

Դա չի փոխում մեր մոտեցումները, լայն դեմոկրատացման, հրապարակայնության, կարծիքների սոցիալիստական պլյուրալիզմի հաստատման մեր կուրսը: Խոսքն ինչ-որ «ուղենիշների փոփոխման» մասին չէ: Դա կուսակցության Կենտրոնական կոմիտեի մշտական սկզբունքային գիծն է: Մենք ոչ մի դեպքում չենք հրաժարվում սոցիալիստական պլյուրալիզմից, հենց սոցիալիստական, որը հենվում է մեր արժեքների վրա, լայն ասպարեզ բացում տարբեր շահեր, այս կամ այն պրոբլեմի ընկալ-





ման առանձնահատկություններն արտացոլող դիրքերի արտահայտման համար: Այն լավագույն պայմաններ է ստեղծում ճշմարտության որոնման համար, այն բանի համար, որ սխալներ թույլ չտրվեն մեր երկրի զարգացման այդ պատասխանատու փուլում:

Եվ ինձ համար միանգամայն անհասկանալի է այն, որ որոշ ընկերներ ըստ էության սկսում են հանդես գալ կարծիքների պլյուրալիզմի դեմ որպես այդպիսին, երբ ասում են, թե այն իբր դիրքերի բացակայություն է նշանակում, մոլորության մեջ է գցում, շփոթ է առաջացնում հասարակության մեջ: Կարծում եմ, որ կարծիքների պլյուրալիզմի նկատմամբ նման հայացքները ոչ այլ ինչ են, եթե ոչ մոլորություն: Որովհետև միայն կարծիքների, հայացքների համադրման կցակետում էլ կարելի է գտնել ճշմարտությունը, ճիշտ հետևություններ անել:

Կարծիքների պլյուրալիզմը ամենևին էլ մեկ տեսակետի պարտադրում չի նշանակում: Ես կասեի, որ դա ավելի շուտ տարբեր կարծիքների սինթեզ է, որի հիման վրա էլ մենք մոտենում ենք ճշմարտությանը: Իսկ եթե խոսելու լինենք դիսկուսիաների ներկա վիճակի մասին, ապա մենք հաճախ տեսնում ենք ոչ թե համատեղ մտավոր աշխատանք, ոչ թե կարծիքների փոխանակություն, ոչ թե համատեղ որոնումների համար միտքը խթանելու փորձեր, այլ ավելի շուտ դրանք հիշեցնում են փոխադարձ ջարդ: Եվ ստացվում է, որ բոլորը կարծես պայքարում են հանուն դեմոկրատիայի, իսկ իրենք ընդդիմախոսների նկատմամբ դատաստանի բռնցքային եղանակների են կոչում:

Ըստ երևույթին, դա զգալի չափով բացատրվում է դիսկուսիայի ցածր կուլտուրայով: Բայց երևի ոչ միայն դրանով: Շատ է ուժեղ խմբակային կապվածությունը: Եվ դա հաճախ խանգարում է նորմալ ստեղծագործական դիսկուսիային, կարծիքների փոխանակությանը: Կողմերից յուրաքանչյուրը հակադիր տեսակետը համարում է ոչ այլ ինչ, եթե ոչ «մեքենայություն», անընդունելի, անթույլատրելի մի բան: Մի՞թե կարող են այսպիսի դիսկուսիաները արգասավոր լինել:

Մի խոսքով, ընկերներ, մենք բոլորս մտածելու շատ բան ունենք: Եվ այդ խորհրդածությունների ելման կետը պետք է լինի վերակառուցման համար, երկրի բախտի համար, ժողովրդի հանդեպ մեր ընդհանուր պատասխանատվության գիտակցումը:

Խոսելով կարծիքների պլյուրալիզմի մասին, չի կարելի, երևի, շրջանցել այդ հարցի ևս մեկ ոչ պակաս կարևոր կողմ: Այն ունի թե՛ սկզբունքային, թե՛ բարոյական նշանակություն: Երբ մենք խոսում ենք սոցիալիստական պլյուրալիզմի առանձնահատկությունների մասին, ապա նախ և առաջ նկատի ունենք պատասխանատվությունը դատողություններ անելիս, որն առաջին հերթին ենթադրում է բանիմացություն և փաստերի հավաստիություն: Ցավոք, մասսայական ինֆորմացիայի մեր միջոցներում նկատվում է հապճեպ ու չհիմնավորված հետևություններ ու դատողություններ տարածելու ձգտում, իսկ ոմանք էլ սկսել են շեշտը դնել սենսացիայի վրա: Եվ պետք է ասեմ անկեղծորեն, շատ ստեր են ի հայտ եկել: Անչափ շատ են մարդկանց անհարկի նվաստացման ու վիրավորման փաստերը: Եվ ամենագլխավորն այն է, որ ոչ բոլորը և ոչ միշտ հնարավորություններ ունեն պաշտպանելու իրենց անունը: Եվ դա այն ժամանակ, երբ մենք ձգտում ենք ազնվորեն իմաստավորել թե՛ մեր անցյալը, թե՛ ներկան, կառուցել հասարակության զարգացման գիտական հեռանկար, վճռականորեն առողջացնել նրա բարոյական մթնոլորտը: Մենք պարտավոր ենք բազմապատկել մեր պատասխանատվությունը ելույթների հիմնավորվածության համար:

Մասսայական ինֆորմացիայի միջոցների, հրապարակայնության մասին օրենքը մշակելիս այս ամենը պետք է ճշգրտվի: Բայց մի՞թե բարձր բարոյականություն, խիղճ ունեցող մարդու, կուսակցականի համար անպայման օրենք է պետք: Եթե կարծիքների պլյուրալիզմը ինչ-որ մեկը հասկանում է այնպես, որ մարդը դրանով իսկ ազատվում է պատասխանատվությունից, ապա դրան մենք այսօր պետք է վճռականորեն չհամաձայնենք և ուղղակի ասենք. ավելի շատ դեմոկրատիա, նշանակում է միշտ ավելի շատ պատասխանատվություն, ավելի շատ իրավունքներ, նշանակում է միշտ ավելի շատ նաև պարտականություններ: Այս հասկացությունները միշտ կողքկողքի են ընթանում: Հույս ունեմ, որ դուք համակարծիք եք իմ անհանգստությանը, որը ես ձեզ հետ անկեղծորեն, ընկերաբար կիսում եմ:

Կցանկանայի սկզբունքային առումով շոշափել ազգամիջյան հարաբերությունների հարցը: Այսօր Սովետական Միությունը ներկայանում է որպես մի եզակի երևույթ համաշխարհային ընկերակցության մեջ, որպես մի պետություն, որտեղ այդ պրոցեսի





բոլոր բարդություններով ու դժվարություններով հանդերձ, կուտակված ու սրված պրոբլեմներով հանդերձ իրոք ռեալ հսկայական նվաճումներ կան ազգային հարցի լուծման գործում: Մեր ամբողջ փորձը՝ թե դրական, թե բացասական, վկայում է Վ. Ի. Լենինի բացառիկ խորաթափանցության մասին, որը ձևակերպել է մեր ազգային քաղաքականության սկզբունքային հիմունքները: Եվ երբ մենք հետևողական ենք եղել լենինյան սկզբունքների իրականացման գործում, հսկայական դրական վերափոխումների ենք հասել: Ընդհակառակն, դրանից ամեն մի նահանջ բարդացրել է իրավիճակը, խանգարել ազգամիջյան հարաբերությունների բնականոն զարգացումը:

Բայց, թերևս, այնուամենայնիվ, այն բանի ամենալուրջ պատճառներից մեկը, որ այսօր մենք ազգամիջյան հարաբերություններում հանդիպել ենք մեզ անհանգստություն պատճառած շատ երևույթների, այն է, որ ինչ-որ փուլում մենք արդեն սկսել էինք մեզ զգալ դափնիների վրա, գտնում էինք, թե բոլոր հարցերը լուծված են: Անգամ առաջարկություն է եղել ձեռնամուխ լինել ազգերի գործնական միաձուլման: Ժամանակին ինձ մեծ դժվարությամբ հաջողվեց դիմակայել գիտության որոշ մեծամեծների ճնշմանը, որոնք ներկայումս գործող կուսակցական ծրագրի մեջ խցկում էին այդ վտանգավոր դրույթը:

Վերակառուցումն այստեղ էլ օգնեց տեսնելու իրական պատկերը: Իսկ իրողությունների այդ իմացությունը մեզ օգնում է հիմա գտնելու կուտակված այն պրոբլեմների լուծման ճիշտ ուղիները, որոնք վերաբերում են մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների, նրանց էկոնոմիկայի, լեզվի և մշակույթի զարգացմանը: Ճիշտ է, այդ պրոցեսը հաճախ ընթանում է հակասականորեն: Եվ նախ և առաջ դա դարձյալ կապված է հասարակական գիտակցության մեջ ազգամիջյան հարաբերությունների արտացոլման բարդության հետ:

Կարծում եմ, մենք այստեղ պետք է այնպես գործենք, որ պահպանենք և զարգացնենք ամենայն դրականը, ինչը վերակառուցման ընթացքում առաջարկվում է ազգամիջյան հարաբերությունների ներդաշնակեցման նպատակով: Եվ այս իմաստով ուզում եմ պաշտպանել մեր գիտնականների, ստեղծագործող մտավորականության պատասխանատու և կոնստրուկտիվ առաջարկությունները, որոնք վերաբերում են մարդկային հարաբերությունների այդ ոլորտին:

Այո, մենք Կենտկոմում ելնում ենք այն բանից, որ վերակառուցման հաջողությունը մեծ չափով կախված կլինի նրանից, թե ինչպես կվերացվեն և կլուծվեն կուտակված պրոբլեմները, ինչ ազդակներ կստանա Սովետական Միությունում միավորված ժողովուրդների եղբայրությունը: Հենց դրանով է թելադրված այդ հարցերին նվիրված Կենտկոմի հատուկ պլենումի անցկացման անհրաժեշտությունը, որի նախապատրաստությունն արդեն ընթանում է լայն ճակատով: Մենք լուրջ և կշռադատված առաջարկություններ ենք ակնկալում բոլոր հանրապետություններից, գիտական, ստեղծագործական կազմակերպություններից, հասարակայնությունից: Մենք կողջունենք այն բոլոր առաջարկությունները, որոնք նպատակամղված են մեր Միությանը, ժողովուրդների ընկերակցությանը պատշաճ դինամիկա և համապատասխան բնույթ տալուն, այն ամենը, ինչ արվում է ժողովուրդների բարեկամության ամրապնդման, մեր բազմազգ պետության ամրապնդման դիրքերից՝ յուրաքանչյուր հանրապետության և ամբողջ Միության զարգացման հիման վրա: Իսկ մի շարք գործնական հարցերի առթիվ նման որոշումներ արդեն ընդունվել են:

Բայց մենք երբեմն ուշանում ենք այն հարցերի իմաստավորման և լուծման գործում, որ առաջադրվում են կյանքի կողմից: Դա հարուցում է սովետական մարդկանց դժգոհությունը: Նրանք լավ են հասկանում ստեղծված միության, միասնական ժողովրդատնտեսական համալիրի նշանակությունը, ժողովուրդների բարեկամության նշանակությունը և իրենց չեն պատկերացնում ընկերակցությունից և այն համատեղ պայքարից դուրս, որը մղվում է հանուն զարգացման, հանուն մեր ընդհանուր սոցիալիստական տան նորացման խնդիրների լուծման:

Վերակառուցումը մեզ համար նոր հնարավորություններ ստեղծեց իմաստավորելու և գտնելու ազգամիջյան հարաբերությունների ներդաշնակեցման պրոբլեմների լուծումը: Բայց ինչ-որ տեղ դա այնպիսի բնույթ է ստացել, որ խփում է հենց վերակառուցմանը, դեմոկրատացմանն ու հրապարակայնությանը: Ոմանք ազգային պրոբլեմների լուծման օգտին առկա հասարակական տրամադրությունները փորձեցին շրջել վերակառուցման դեմ: Բայց չէ որ դա էլ փակուղի է տանում: Դա ազգային պրոբլեմների լուծումը խափանելու և վերակառուցումը թուլացնելու հավաստի ուղի է:

Այն ամենը, ինչ հանգեցնում է ազգերի և ժողովուրդների հակադրումներին, ազ-



գայնամոլ կրքերի բորբոքմանը, ազգային ներպարփակվածության և բացառիկության ամեն տեսակ կոչերը, չխոսելով արդեն ծայրահեղական կոչերի և լոզունգների մասին, այս ամենը անընդունելի է: Եթե դա տարածում ստանար, ապա հսկայական վնաս կհասցներ մեր ընդհանուր գործին, շատ լրջորեն կբարդացներ վերակառուցման բոլոր պրոցեսները: Այդ մասին նույնպես հարկավոր է ուղղակի ասել:

Ինչու՞ եմ անհրաժեշտ համարում այդ մասին արտահայտվել այսօրվա հանդիպման ժամանակ: Շատ բան է կախված գիտական և ստեղծագործող մտավորականության դիրքերից: Ցավոք, վերջին ժամանակաշրջանը ցույց տվեց, որ պատշաճ բարձրության վրա են եղել բնավ էլ ոչ բոլորը, այդ թվում նաև կոմունիստները: Պարզվեց, որ ամենաուսյալ մարդիկ երբեմն չեն կարողանում ազգայինը տարբերել ազգայնամոլից, հասկանալ ազգամիջյանի և ազգայինի դիալեկտիկան:

Տեղի ունեցող երևույթները որոշ չափով կարելի է բացատրել նրանով, որ յուրաքանչյուր ազգ, ունենալով իր մտավորականությունը, զարգացնելով իր մշակույթը, իմաստավորելով իր նվաճումները, դիմում է իր ժողովրդի արմատներին, ուզում է հասկանալ, թե որտեղից են սկիզբ առնում այսօրվա հաջողությունները:

Եվ դա լավ է, նորմալ: Բայց այնքան ժամանակ, մինչև հանկարծ որևէ ազգ իրեն հայտարարում է «գերազգ», ընդումին քողարկվելով մշակույթի, լեզվի, ավանդույթների զարգացման անհրաժեշտությամբ: Դրա հետևանքով նման մոտեցումը հանգեցնում է ներպարփակվածության, ուրիշ մշակույթներից մեկուսացման:

Մենք, իհարկե, չենք կարող թույլ տալ, որ ամենափոքր ժողովուրդն իսկ անհետանա, որ կորչի նույնիսկ ամենափոքր ժողովրդի լեզուն, մենք չենք կարող նիհիլիզմ թույլ տալ թե մեծ և թե փոքր ժողովուրդների մշակույթի, ավանդույթների, պատմության նկատմամբ: Հենց դա մենք պարտավոր կլինենք ուղղակի ասել ամռանը կայանալիք պլենումում: Եվ ոչ միայն ասել, այլև իրավական բազա ստեղծել, տնտեսագիտական և սոցիալական մոտեցում մշակել ազգամիջյան պրոբլեմների լուծման նկատմամբ: Եվ առհասարակ մենք պետք է նկատի ունենանք, որ տարիների հետ, յուրաքանչյուր հնգամյակի, տասնամյակի հետ կյանք են մտնում մարդկանց նոր սերունդներ, իսկ նրանք միանգամից ինտերնացիոնալիստներ չեն ծնվում: Նրանք միանգամից ազգայնամոլներ ևս չեն ծնվում: Նրանք անցնում են քաղաքական, ինտերնացիոնալ դպրոց, և հետևաբար այդ ամբողջ պրոցեսը առկա է, և այն միշտ պետք է լինի տեսադաշտում:

Պետք է ասել, որ աշխատավորները սարի պես կանգնած են այն բանի օգտին, որ ոչ միայն պահպանվեն, այլև ամրապնդվեն, նոր որակ ստանան ազգային քաղաքականության ոլորտի մեր նվաճումները: Մեր հասարակությունը պետք է անսա ժողովրդի ձայնին: Թե չէ մեզ մոտ հաճախ այսպես է լինում. երբ հարկավոր է ամրապնդել սեփական դիրքը, վկայակոչում են ժողովրդին, իսկ երբ ժողովուրդը այս կամ այն ընկերոջ հաստատածից տարբերվող իր կարծիքն է արտահայտում, սկսում են ասել, թե ժողովուրդը ամեն ինչ չի գիտակցում, թե նա ամեն ինչ չի հասկանում: Ոչ, ժողովուրդը ոչ ոքի թույլ չի տա մոլորվել: Կարծում եմ, նաև մեզ և ձեզ:

Այն ամենը, ինչ այստեղ ասվեց, վերաբերում է նախ և առաջ մեր ներքին կյանքի ոլորտին: Բայց վերակառուցումն ունի նաև վիթխարի միջազգային նշանակություն: Երկիրը ամենասերտ ձևով կապված է և փոխգործակցում է հարյուրավոր երկրների և ժողովուրդների հետ: Վերջին ժամանակների իրադարձությունները համոզչորեն հաստատում են հակասական, բայց փոխկախված, փոխկապակցված աշխարհի մասին, նոր իրողությունների մասին կուսակցության XXVII համագումարի արած տեսական հետևությունների ճշտությունը:Իրոք, արդի աշխարհը սրընթացորեն փոխվում է: Թերևս երբեք մարդը չի բախվել այս ծավալի պրոբլեմների: Երբեք չեն եղել բոլոր երկրների և ժողովուրդների առջև ծառացած անչափ բարդ այսքան խնդիրներ: Այդ նոր իրողություններին հասնելու համար հարկավոր է փոխել թե մտածելակերպը, թե հնացած հայացքները և թե վաղուց իրենց դարն ապրած սովորույթները: Մենք (և ոչ միայն մենք) պետք է հասկանանք, որ ներկա աշխարհում անհնար է ապրել, անջրպետվելով այն ամենից, ինչ տեղի է ունենում ազգային սահմաններից դուրս:

Կենսական այն իմպերատիվը, որի առջև կանգնած է մարդկությունը, համամարդկային արժեքների գերակայությունն է, բռնությունից և պատերազմներից զերծ աշխարհը, հասարակական առաջընթացի բազմազանությունը, երկխոսությունն ու համագործակցությունը հանուն զարգացման և քաղաքակրթության պահպանման, շարժումը դեպի համաշխարհային նոր կարգ: Այդ ամենին հասնելու նպատակն էլ մեզ հանգեցրեց քաղաքական նոր մտածողության:

Մենք քաղաքական նոր մտածողության միջոցով առաջարկում ենք նոր մոտեցումներ և համաշխարհային զարգացման պրոբլեմների լուծման նոր մեթոդներ, հաշվի առնելով արդի իրողությունները: Սրանք հավակնություններ և պատվախնդրություններ չեն, այլ ամենքին համագործակցության կոչող հրավեր:

Մենք տեսնում ենք մեր պատասխանատվությունը, բնականաբար, պաշտպանում ենք մեր շահերը, բայց պատրաստ ենք ուրիշների շահերը, ուրիշների կարծիքը հաշվի առնելու, և նաև մյուս երկրների պատասխանատվությունն ենք ենթադրում աշխարհի իրավիճակի բարեփոխման համար, նոր մտածողության հասնելու համար:

Մենք ոչ միայն առաջադրել, ձևակերպել ենք սկզբունքները, այլև դրանք փոխարկել ենք ռեալ քաղաքականության և մի շարք էական քայլեր առաջարկել այն ասպարեզում, որը վերաբերում է անվտանգության և զինաթափման ոլորտին, ռեգիոնալ կոնֆլիկտների, երրորդ աշխարհի երկրների զարգացմանն առնչվող պրոբլեմներին, էկոլոգիական պրոբլեմների կարգավորմանը և շատ ուրիշ բաների:

Ես հեռու եմ մեր նոր աշխարհընկալումը ավարտուն, մեկընդմիշտ տրված համարելու մտքից: Ըստ էության մենք անընդհատ հարստացնում ենք մեր պատկերացումները, մեր քաղաքականությունը: Այս առումով նոր քայլ են վերջերս Միավորված ազգերի կազմակերպությունում ունեցած ելույթում արտահայտված նկատառումներն ու առաջարկությունները: Կարծում ենք, հարկ չկա ծավալուն փաստարկներ բերել՝ հիմնավորելու մեր քաղաքական նոր մտածողությունը, բայց կան հարցեր, որոնց վրա կուզենայինք ուշադրություն հրավիրել:

Այնուամենայնիվ, մենք հիմա զգում ենք, որ հետ ենք մնացել համամարդկային արժեքների և դասակարգային շահերի հարաբերակցության դիալեկտիկայի մշակման հարցում: Եվ այստեղ մեր գիտությունը աշխատելու բան ունի: Այդ թերացումը հանգեցնում է որոշակի թյուրըմբռնման և նույնիսկ (ուղղակի ասենք) սոցիալիզմի դիրքերը զիջելու, դասակարգային մոտեցումներից և ազգային-ազատագրական շարժման շահերից հրաժարվելու անհեթեթ մեղադրանքների: Ընդսմին անուշադրության են մատնվում քաղաքական նոր մտածողության այնպիսի էական բաղկացուցիչ տարրեր, ինչպիսիք են սեփական ընտրություն կատարելու յուրաքանչյուր ժողովրդի իրավունքի ճանաչումը և բոլոր պետությունների ներքին գործերին չմիջամտելը: Ասենք, ոչ միայն դա: Քաղաքական նոր մտածողությունը, ինչպես հայտնի է, ենթադրում է միջպետական հարաբերությունների ապագաղափարայնացում: Բայց դա բնավ էլ չի նշանակում (ինչպես որ դա ուզում են մեկնաբանել ոմանք) միջազգային հարաբերությունների ապագաղափարայնացում: Ոչ, դա կլիներ հրաժարում ռեալ իրավիճակի ճանաչումից՝ սեփականության տարբեր ձևերի վրա, տարբեր գաղափարախոսությունների վրա հիմնվող սոցիալական սիստեմների առկայությունից: Մենք տեսնում ենք հասարակական երկու սիստեմների տարբերությունների խորությունը, բայց դա պատճառ չէ ուժային դիմակայության և պետությունների առճակատման համար:

Մենք ապրում ենք թեև հակասական, բայց մեծապես միասնական, ամբողջական աշխարհում, միավորված ենք մեկ քաղաքակրթությամբ, որը լուրջ փորձությունների է ենթարկվում համապարփակ պրոբլեմների ծագման և սրման կապակցությամբ: Սա համագործակցության, փոխգործողության խթանն է իր սոցիալական ընտրությանը հավատարիմ մնալու պայմաններում:

Քաղաքական նոր մտածողության դիրքերից մենք սոցիալիզմը համարում ենք ժամանակակից քաղաքակրթության օրգանական մասը, առանց որի աներևակայելի է մարդկության առաջընթացը: Համոզված ենք (և այդ համոզմունքը հիմնվում է գիտական տվյալների վրա), որ սոցիալիզմը դեռ կբացահայտի իր վիթխարի հնարավորությունները որպես մի հասարակարգ, որը վստահորեն է նայում իր ապագային:

Քաղաքական նոր մտածողությունը դեռ նոր-նոր է նվաճում մտքերը: Այն կյանք մտցնելու համար յոլա չենք գնա առանց քաղաքագետների, գիտական, ստեղծագործող մտավորականության, հասարակության լայն շրջանների համատեղ ջանքերի: Իրոք, այսօր աշխարհի բախտը չի կարող լինել միայն քաղաքագետների գործողությունների առարկա: Դա համաշխարհային հասարակական ուժերի համատեղ ջանքերի արդյունքն է:

Կարծում եմ, չի կարելի պատրանքների մեջ ընկնել այդ բարդ և դժվարին գործում: Սպասվում է միջազգային հարաբերությունների կառուցման նոր սկզբունքների հաստատման բազմամյա և համառ աշխատանք, հաշվի առնելով բազմապիսի շահերը: Համենայն դեպս անդարձ անցնում է ուժային քաղաքականության ժամանակը, երբ մեկ երկրի հայացքները պարտադրվում էին ամբողջ համաշխարհային ընկերակ-



ցությանը: Եվ որքան ավելի արագ դա գիտակցեն համաշխարհային ընկերակցության բոլոր անդամները, այնքան լավ կլինի ամենքիս համար: Դրան օգնելը մեր ընդհանուր խնդիրն է, մեր ընդհանուր պարտքը:

Ահա, ընկերներ, որոշ նկատառումներ, որ ես ուզում էի արտահայտել մեր հանդիպման սկզբում: Հուսով եմ, որ մենք կարծիքների հիմնավոր փոխանակում կկատարենք, համենայն դեպս մենք դրանով շատ շահագրգռված ենք:

Ամփոփելով հանդիպման արդյունքները, **Մ. Ս. Գորբաչովը** ասաց.

Կարծում եմ՝ մենք մեծ և կարևոր խոսակցություն ունեցանք: Կոնսուլտացիաների այսպիսի յուրօրինակ մեխանիզմը Կենտրոնական կոմիտեին, քաղբյուրոյին անհրաժեշտ է: Գիտական ու գեղարվեստական մտավորականության երևելի ներկայացուցիչների հետ հանդիպումները պետք է կանոնավոր բնույթ կրեն: Այսօր ոչ բոլորը կարողացան արտահայտվել: Հուսով եմ, ընկերները չեն նեղանա: Եթե որևէ մեկը ցանկություն կունենա իր ասելիքը հասցնել մեզ, ապա թե՛ ես և թե՛ մյուս ղեկավար ընկերները ձեր տրամադրության տակ ենք:

Ես գոհ եմ հանդիպման մթնոլորտից: Նման խոսակցությունից հետո փորձիր ապացուցել, թե մեզանում վերակառուցում չկա կամ էլ թե այն իրեն արդեն սպառել է: Վերակառուցումը արդեն նստած է մեր մեջ: Սերգեյ Պավլովիչ Զալիգինը լավ ասաց. «Եթե մեզանից դուրս քաշեն այն ամենը, ինչ կապված է վերակառուցման հետ, հայտնի չէ, թե ինչ կմնա, երևի՝ պատյանը»: Օգտակար և կարևոր շատ բաներ մենք իրարից լսեցինք: Իսկ սա արդեն քիչ չէ, ընկերներ:

Ես կարծում եմ, մենք բոլորս համամիտ էինք այն մտահոգությանը, որի մասին ես խոսեցի վերակառուցման նոր փուլի առնչությամբ: Վերակառուցման բոլոր ուղղություններով հարկավոր է առաջ ընթանալ: Միայն այդպես կարելի էր հաջողության հույս ունենալ: Եվ կցանկանայինք հուսալ, որ բոլորն են հասկացել, որ մեզ հարկավոր է համախմբում: Ոչ թե ամեն գնով: Ոչ, այլ վերակառուցման քաղաքականությանը նվիրվածության ուղիներում, մեր սոցիալիստական արժեքների հիման վրա: Որպեսզի առաջ մղվի վերակառուցումը, որպեսզի ավելի շատ շեշտը դրվի ստեղծարար աշխատանքի վրա, այն ամենին զորավիգ լինելու վրա, ինչը մեզ այնպես դժվարությամբ է տրվում բոլոր ոլորտներում՝ էկոնոմիկայի մեջ, քաղաքական պրոցեսում, հոգևոր կյանքում:

Կարծիքներ փոխանակելով, բանավիճելով, համադրելով՝ մենք պետք է հարընթացնենք այդ պրոցեսը: Եվ ոչ մի պարագայում չմտածենք, թե ահա ոմանք ձեռքներին բռնել են ճշմարտությունը, իսկ մյուսները նրանք են, ովքեր բարձրացնում են կեղծ արժեքների դրոշը:

Ես ուշադրություն դարձրի, որ ելույթ ունեցողներից շատերը, այնուամենայնիվ, բավականաչափ որոշակիորեն էին պաշտպանում իրենց «անկյունը», իրենց «հատվածը»: Հավանաբար վախենում էին, որ հետո, երբ իրենց շրջապատում հավաքվեն քննարկելու արդյունքները, ոչ ոք չկասկածի, թե ինչ-որ մեկը ինչ-որ մեկին զիջել է: Իսկ չէ որ, ընկերներ, դա զիջում չէ: Դա փոխըմբռնում է: Փոխըմբռնում, որը մեզ բոլորիս այսօր այնքան անհրաժեշտ է: Բոլոր ելույթներում, այդ թվում նաև ծայրահեղ ելույթներում, կար հիմնավոր մտահոգություն: Բայց մտահոգությունը չի կարող զուգորդվել անվստահության հետ, անբարյացակամության հետ: Հարկավոր է դրանից ձերբազատվել. ես լիովին համամիտ եմ այստեղ բազմիցս արտահայտված այդ կարծիքին:

Ժողովուրդն ասում է՝ չարությունը համը հանել է: Իսկ ինչ ասես խոսքի վարպետի շարադրած չարության մասին: Նման չարությունը մղկտացնող է, հասկանու՞մ եք: Դա հնչում է ամբողջ երկրով մեկ: Ինչի՞ վրա է վատնվում տաղանդը: Ու՞ր ենք տանում մենք մեր խոսքը: Չէ որ խոսքը զորավոր է: Չէ որ ուսյալ երկրում խոսքը մեծ բան է:

Այսօր հասարակության մեջ նոր մթնոլորտ է: Որպեսզի մտավորականության դերը ակտիվ լինի, մենք էլ ստեղծել ենք հրապարակայնության, բացախոսության այս մթնոլորտը, ստեղծագործական, ստեղծարար մթնոլորտը, որի մեջ պաշտպանություն գտներ այն ամենը, ինչը առողջ է: Չզիջելով վերակառուցողական դիրքերը, չզիջելով այն, ինչ նվաճել ենք, հարկավոր է վճռականորեն արմատախիլ անել այն ամենը, ինչ մեզ խանգարում է, հարկավոր է հրաժարվել դաժանությունից ու չարությունից:

Եկեք մտորենք մեր դիսկուսիայի այդ կողմի մասին: Ես կարծում եմ, բոլորիս մեջ էլ տագնապ կա: Բայց, վերջիվերջո, չէ որ մենք պատասխանատու մարդիկ ենք:

Մեզանում գնահատում են իմաստուն խոսքը: Ականջ են դնում նման խոսքին: Եկեք լինենք պատասխանատու մարդիկ:

Կարելի է արձանագրել, որ ըմբռնում կա գլխավորի հարցում՝ անհանգստություն երկրի համար, նրա նորացման համար, ժողովրդի համար, այն բանի համար, որ առաջ մղվի մեր վերակառուցումը: Այսօր մենք ունենք մեծագույն հնարավորությունը, միայն թե չպետք է խուճապի, հոռետեսության, հուսալքության մատնվել: Նման շրջադարձային, բեկումնային պահերին դժվարությունները բնական են:

Հարկավոր է ապրել հասարակության մեջ և աշխատել, աշխատել ակտիվորեն, նորացնելով մեր կյանքը: Բոլորս էլ մասնակցում ենք վերակառուցմանը, մեկը՝ շատ, մեկը՝ քիչ: Մարդիկ տարբեր են, ամեն մեկն ունի իր բնավորությունը, իր կամքը: Տարբեր է նրբանկատության, վճռականության չափանիշը: Այն ամենը, ինչ կապված է մարդու հետ, չի կարելի աչքաթող անել: Բայց հիմա, երբ մենք մեծ արշավի ենք դուրս եկել, եկեք, այնուամենայնիվ, գտնենք շփման կետեր, ցուցաբերենք հարգալիրություն, ավելի շատ փաստարկներ բերենք վեճերի ժամանակ: Այնուամենայնիվ, մենք, իրոք, ես կարծում եմ, բախտավոր ենք նրանով, որ նման մեծ գործի մասնակիցներն ենք: Ձնալած պրոբլեմների ողջ բարդությանը, դրանց ողջ սրությանը, այն ամենին, ինչի հարկ է լինում բախվել՝ ամենաանակնկալ հարցերին, շրջադարձերին, բարոյական ու ֆիզիկական բեռնվածություններին, կարելի է ասել, որ մենք ապրում ենք մեծ ժամանակներ և անպայման պետք է տոկանք ամեն ինչի, տոկանք՝ չվատնելով արժեքները և չկորցնելով չափանիշները:

Ոմանք ընթացիկ գործերի ճնշման տակ անխոհեմ, չկշռադատված հանձնարարականներ են տալիս: Հարկավոր չէ, ընկերներ, անապարել, հատկապես ձեր շրջանի մարդիկ, որոնց խոսքին շատ են ականջ դնում:

Մենք համագործակցության, ըմբռնման, փոխըմբռնման հույս ունենք: Մենք բաց ենք ձեր առջև, և այն հարցերը, որոնք բխում են մեր գիտական և ստեղծագործող մտավորականությունից, մենք փորձում ենք, որքան բավականացնում են ուժերը, քննարկել ժամանակին և բանիմացորեն: Այդպես եղել է, այդպես էլ կլինի: Շնորհակալություն հանդիպմանը մասնակցելու համար: Հաջողություն ձեզ:

**(ՏԱՍՍ)**

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1989 թվականի հունվարի 10-ին կայացավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց հետևյալ հարցերը.

1. Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուներ առաջադրելու մասին:

2. «Կուսակցությանը, սովետական ժողովրդին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմումի մասին:

3. Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների անցկացման մասին:

Այս հարցերի վերաբերյալ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումում ելույթ ունեցան ՍՄԿԿ Թաթարիայի մարզկոմի առաջին քարտուղար Գ. Ի. Ուսմանովը, Ուկրաինայի կոմկուսի Կիևի մարզկոմի առաջին քարտուղար Գ. Ի. Ռևենկոն, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Գ. Վ. Կոլբինը, «Սովետական Միություն» ամսագրի գլխավոր խմբագիր, ՍՍՀՄ գրողների միության վարչության քարտուղար Ն. Մ. Գրիբաչովը, ՍՍՀՄ գրողների միության վարչության առաջին քարտուղար Վ. Վ. Կարպովը:

Պլենումն առաջադրեց Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուներին: Այդ թեկնածությունները սահմանված կարգով կներկայացվեն Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների ընտրական հանձնաժողովի գրանցմանը:

Պլենումն ընդունեց «Կուսակցությանը, սովետական ժողովրդին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմում:

Պլենումն ընդունեց «ՍՄԿԿ-ից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների անցկացման մասին» որոշում:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ

## 1989 թվականի հունվարի 10-ին

Ընկերներ:

Այսօր մենք անցկացնում ենք մի պլենում, որը նմանը չունի մեր կուսակցության պատմության մեջ: Պլենումի օրակարգը բխում է անմիջականորեն այն վերակառուցողական պրոցեսներից, որոնք լայնորեն ծավալվել են երկրում, սովետական հասարակության դեմոկրատացումից, քաղաքական սիստեմի ռեֆորմից, որի իրագործմանը մենք ընդհուպ ձեռնամուխ ենք եղել:

Քաղաքական ռեֆորմի առաջին փուլի նպատակներին համապատասխան, որի ընթացքում նախատեսվում է վերակառուցել պետական իշխանության բարձրագույն մարմինները, երկրում ծավալվել է ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների ընտրական կամպանիան: Մենք պետք է ձևավորենք այն քաղաքական պլատֆորմը, որով կուսակցությունը գնում է դեպի ընտրություններ: Կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը դրված է ձեր քննարկմանը:

Ինչպես բխում է նոր ընտրական օրենքից, մեր պլենումը պետք է առաջադրի կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուներ և այդ թեկնածությունները ներկայացնի ՍՄԿԿ-ից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների ընտրական հանձնաժողովի գրանցմանը: Այս բոլորը, ինչպես տեսնում եք, շատ կարևոր հարցեր են: Դրանք մեծ նշանակություն ունեն ոչ միայն ՍՄԿԿ-ի համար՝ որպես կառավարող կուսակցության, այլև հասարակության քաղաքական սիստեմի բոլոր օղակների համար:

### I

Կարծում ենք, որ անհրաժեշտություն չկա սույն պլենումում տալու այժմյան ընտրական կամպանիայի առանձնահատկությունների ծավալուն փաստարկումը: Դրանք ուղղակի բխում են սովետական պետության պատմության այն պատասխանատու, բեկումնային փուլից, որի միջով երկիրը անցնում է վերակառուցման ուղիներով: Հենց վերակառուցումն է ստեղծել հասարակության մեջ տիրող այժմյան մթնոլորտը, ավելի շատ դեմոկրատացման, հրապարակայնության մթնոլորտը, աշխատավորների քաղաքական ակտիվության աճի մթնոլորտը: Սա՝ առաջին:

Երկրորդ՝ վերակառուցումն էլ է թևակոխել զարգացման նոր փուլ: Նախորդ փուլերում ձևավորվեցին վերակառուցման տեսությունն ու քաղաքականությունը, ընդունվեցին կարևորագույն որոշումներ: Հիմա մեր առջև ամբողջ հասակով ծառացել են վերակառուցման կուրսի պրակտիկ մարմնավորման խնդիրները: Սա անցած տարվա մեր աշխատանքի առանձնահատկությունն է և էլ ավելի մեծ չափով բնորոշ կլինի ընթացիկ՝ 1989 թվականին: Այնպես որ վերակառուցման արդի փուլը կուսակցությանն ու սովետներին, հասարակական կազմակերպություններին ու աշխատավորական կոլեկտիվներին, մեր ամբողջ հասարակությանը դուրս է բերում պատասխանատվության մի նոր մակարդակ, երբ գնահատման գլխավոր չափանիշը դառնում են ստեղծարար գործունեության իրական պտուղները: Այսպիսին է, ես կասեի, ընթացիկ պահի լեյտմոտիվը:

Ասվածը, իհարկե, ամենևին չի նշանակում, թե անցած տարիներին մենք պրակտիկ գործերով չենք զբաղվել: Ճիշտ այդպես անիրավական կլիներ այն հետևությունը, թե, հետագայում մարելու է մեր հետաքրքրությունը տեսական մշակումների



նկատմամբ, լավագույն քաղաքական վճիռների, աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների որոնման նկատմամբ: Ոչ, սա, անշուշտ, այդպես չէ: Միայն ուզում եմ ընդգծել արդի փուլի սուր անհրաժեշտությունը՝ ծանրության կենտրոնը կտրուկ տեղափոխել մշակված քաղաքականության և ընդունված որոշումների իրականացման պրակտիկ աշխատանքի վրա:

Ընկերներ: Երբ մենք ասում ենք, որ արդի փուլում պետք է աճի և ուժեղանա կուսակցության՝ որպես հասարակության քաղաքական ավանգարդի, դերը, սա չի կարելի ընկալել որպես ինչ-որ վերացական կոչ: Այս մասին ասում եմ այն պատճառով, որ հաճախ այս կամ այն տեսական դրույթը առանց մտածելու կրկնում են բոլորը, բայց ընդսմին քչերն են խորամուխ լինում, թե դրանից ինչ է բխում պրակտիկայի, կոնկրետ կյանքի համար:

Քիչ խոսքեր չեն ասվել ՍՄԿԿ-ի՝ որպես վերակառուցման պայմաններում հասարակության քաղաքական ավանգարդի դերի մասին: Բայց արդարացի է նաև այն, որ բնավ ոչ բոլորն են մինչև վերջ գիտակցել, թե դա գործնականորեն ինչ է նշանակում: Ու դրա համար էլ մենք հետ ենք մնում տեղի ունեցող պրոցեսների իմաստավորման մեջ: Մենք միշտ չէ, որ վերակառուցական պրոբլեմների ճիշտ լուծումներ ենք գտնում: Դրա հետևանքով մարդկանց մտքերում հաճախ առաջանում է խառնաշփոթություն և դրանից էլ՝ խափանումները պրակտիկ գործերում:

Տեղին է, որ հեղափոխական կտրուկ շրջադարձերում առանձնապես մեծ է կուսակցության՝ որպես հասարակության կազմակերպիչ, ինտեգրացնող ուժի դերը: Ընդ որում, այնպիսի կուսակցության, որը ուժեղ է իր կազմակերպվածությամբ, համախմբվածությամբ, ունի տեսական մտքի պարզություն և պրակտիկ գործողությունների հստակություն:

Տեղին է սա ասել նաև հիմա, երբ մենք կանգնած ենք մի այնպիսի խոշոր քաղաքական իրադարձության առջև, ինչպիսին է ներկա ընտրական կամպանիան: Չէ որ խոսքը վերաբերում է նոր սկզբունքով դեպուտատական կորպուսի ձևավորմանը: Նրա ուսերին կընկնի պետական իշխանության ու կառավարման նոր մարմինների ստեղծումը, որոնք կոչված են լուծելու վերակառուցման խնդիրների գործնական իրականացման բոլոր առավել էական հարցերը:

Այս բոլոր հարցերը շատ սերտորեն կապված են ժողովրդի շահերի հետ, երկրի ու սոցիալիզմի բախտի հետ: Ահա, ընկերներ, ինչի մասին է խոսքը: Այս բարձր ու պահանջկոտ դիրքերից էլ մենք պետք է մոտենանք գործին, լավ կշռադատելով կուսակցության անելիքները այս ընտրական կամպանիայում: Հենց մեր բարձր պատասխանատվության ըմբռնումը հանգեցրեց այն եզրակացությանը, որ անհրաժեշտ է ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների կապակցությամբ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անունից դիմել երկրի կոմունիստներին, բոլոր աշխատավորներին:

ՍՄԿԿ Կենտկոմը դիմում է սովետական ժողովրդին, ելնելով այն բանից, որ ՍՄԿԿ-ն կառավարող կուսակցություն է, ուստի և սովետական հասարակության հանդեպ լիակատար պատասխանատվություն է կրում սոցիալիզմի բախտի, երկրի բախտի համար: Սովետական մարդիկ իրավունք ունեն իմանալու այն նպատակները ու խնդիրները, որ կուսակցությունը առաջադրում է մոտ ապագայի համար, իմանալու, թե նա ինչով է գնում դեպի ընտրություններ:

Մենք առաջին անգամ ենք կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված դիմում ընդունում Կենտկոմի պլենումում: Դա թելադրված է ոչ միայն երկրի բախտի համար առաջիկա ընտրությունների հսկայական նշանակալիությամբ և ոչ միայն ներկա քաղաքական մոմենտի առանձնահատուկ կարևորությամբ, ինչի մասին ես արդեն ասացի: Դա բխում է ներկա փուլում կուսակցության նոր դերի ըմբռնումից, նրա՝ որպես հասարակության քաղաքական ավանգարդի, ֆունկցիայի նշանակության մեծացումից:

Ներկա իրավիճակում մենք պետք է ելնենք այն բանից, որ մյուս հասարակական կազմակերպությունները դեպի ընտրություններ կգնան սեփական նախընտրական փաստաթղթերով: Ասենք, դեպուտատության առանձին թեկնածուներ էլ կարող են հանդես գալ երկրի առջև կանգնած խնդիրների իրենց ըմբռնումը շարադրելով:

Ստեղծվող իրավիճակում, ինչպես երբեք, ՍՄԿԿ-ի քաղաքական պլատֆորմի մեծ անհրաժեշտություն է զգացվում, որն արտահայտեր համաժողովրդական շահերը, միավորեր հասարակության տարբեր խավերի կարծիքների ու պահանջմունքների ամբողջ բազմազանությունը, դրանց նպատակասլաց բնույթ հաղորդեր վերակառուցման ներկա փուլի կոնկրետ խնդիրների առումով: Մեր ժողովուրդը՝ բանվոր դասա-

կարգը, գյուղացիությունը, մտավորականությունը, այս կարևոր պատմական պահին կուսակցության խոսքին են սպասում։ Մենք պետք է լավ հասկանանք հասարակական կյանքի դիալեկտիկան, ճիշտ գնահատենք այն նշանակությունը, որ կունենա ՍՄԿԿ Կենտկոմի նախընտրական դիմումը։

Հասարակությանն առաջարկելով մեր նախընտրական քաղաքական պլատֆորմը՝ մենք դա անում ենք շիտակորեն և ազնվորեն, հանդես գալով որպես հասարակության ճանաչված ավանգարդ։

Կուսակցությունը մեծ արիություն հանդես բերեց՝ իր վրա վերցնելով նախորդ տարիներին թույլ տրված լուրջ սխալների, վրիպումների համար պատասխանատվությունը։ Եվ դրա հետ մեկտեղ հենվելով լենինյան սկզբունքների վրա, ելնելով ժողովրդի շահերից՝ կուսակցությունն առաջարկեց սոցիալիզմի նորացման նորարարական ծրագիր, մի ծրագիր, որը մենք անվանեցինք «վերակառուցում»։

Կարծում ենք, մենք չենք չափազանցնում՝ հավաստելով, որ ժողովուրդը պատշաճորեն գնահատեց կուսակցության այդ քաղաքական արիությունը։ Հենց վերակառուցման ընթացքում են հասարակության մեջ մեծանում և ամրապնդվում կուսակցության կուրսին ցույց տրվող վստահությունն ու աջակցությունը։ Բայց, բնականաբար, վստահության վարկը առհավետ չի տրվում։ Ամեն անգամ, սոցիալիստական շինարարության յուրաքանչյուր փուլում կուսակցությունը պետք է այդ վստահությունը հաստատի իր պրակտիկ ու տեսական գործունեությամբ։ Հենց այսպես է դրված հարցը նաև այսօր։

Կուսակցության նկատմամբ ժողովրդի վստահությունն ամրապնդելու համար, կարծում եմ, կա միայն մի ուղի՝ վերակառուցման պրոցեսների ծավալումն ու խորացումը, սովետական մարդկանց բարեկեցության աճի նկատմամբ անդուլ հոգատարությունը։ Սա է Կենտրոնական կոմիտեի կողմից ժողովրդին ուղղված նախընտրական դիմումի գլխավոր բովանդակությունը, գլխավոր շարժառիթը։

Կուսակցությունը պետք է տեսնի վերակառուցական պրոցեսների ամբողջ պատկերը, իմաստավորի դրանց ուժեղ և թույլ կողմերը, ժամանակին մտցնի այս կամ այն ճշտումները, որոնք բխում են բուն կյանքից, և հասնի հասարակության բոլոր առողջ ուժերի համախմբման վերակառուցման պլատֆորմի վրա, դրա համար օգտագործելով քաղաքական, գաղափարախոսական և կազմակերպական ներգործության միջոցների հսկայական զինանոցը։

Ինչպես ցույց է տալիս կուտակված փորձը, այստեղ մենք բախվում ենք նորացման պրոցեսներն արգելակող պահպանողականության դրսևորումների, արտադրության մեջ և կյանքի մյուս ոլորտներում կազմակերպման ու կառավարման առաջադիմական ձևերի ներդրման արհեստական կասեցմանը։

Կա ևս մի վտանգ։ Մենք տեսնում ենք, թե որոշ ընկերներ որքան են դժվարանում խուսափել «ձախ» ծայրահեղություններից, փուլերի վրայով թռչելու, նպատակներ ու խնդիրներ առաջադրելու ձգտումից՝ հաշվի չառնելով ռեալ հնարավորությունները։

Մենք երբեմն բախվում ենք նաև այս կամ այն դժվարությունների, էկոնոմիկայում, սոցիալական ոլորտում վիճակն ավելի արագորեն բարելավելու մարդկանց բնական ցանկության շահարկումների։ Եվ նույնիսկ հայտնվել են այնպիսի մարդիկ, որոնք, շահարկելով այդ բանը, ձգտում են էժան հեղինակություն նվաճել իրենց համար։

Կարևոր է այդ ամենը ոչ միայն տեսնել, այլև լուրջ քաղաքական վերլուծության ենթարկել, տալ անհրաժեշտ գնահատականներ, բացատրել ու վերացնել դժվարությունները և հաստատորեն, քայլ առ քայլ առաջ ընթանալ վերակառուցման հարթած կուրսով։

Դիմումի նախագծում, ինչպես դուք երևի ուշադրություն դարձրիք, ռեալիստական դիրքերից է տրվում ձեռք բերվածի, վերակառուցման բարդությունների գնահատականը, և շարադրվում են ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառի խնդիրները երկրի իշխանության նոր բարձրագույն մարմինների լիազորությունների ժամանակաշրջանի համար։ Կարծում եմ, դիմումի ներկայացված նախագիծը ամբողջությամբ վերցրած այն փաստաթուղթն է, որը մեզ պետք է և որով մենք կարող ենք դիմել սովետական ժողովրդին։ Կուզենայի ձեզ, ընկերներ, հրավիրել ուշադրությամբ քննության առնելու ներկայացված նախագիծը և քննարկելու այն, որպեսզի Կենտկոմի պլենումում մենք ընդունենք վերակառուցման ներկա փուլի խնդիրներին համապատասխանող փաստաթուղթ։

Միաժամանակ պարզ է, որ դիմումը, լինելով կարևորագույն քաղաքական փաս-



տաթուղթ, այնքան ավելի մեծ դեր կխաղա, որքան բոլոր կուսակցական կազմակերպություններն ավելի հիմնավորապես պարզաբանեն ու պրոպագանդեն դրա բովանդակությունը, հենվեն դրա հիմնարար գաղափարների վրա։ Ահա թե ինչու հարկ կլինի դիմումն ամրապնդել կազմակերպական ու գաղափարախոսական միջոցառումներով։

Կոմունիստական կուսակցության համար ոչ միայն կարևոր է, որ նրա նախընտրական ծրագիրը պաշտպանեն ամբողջ ժողովուրդը, բոլոր աշխատավորները։ ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուներ առաջադրելիս կուսակցությունը կենսականորեն շահագրգռված է ակտիվորեն փոխգործակցելու բոլոր հասարակական կազմակերպությունների ու աշխատավորական կոլեկտիվների հետ, առաջվա պես հանդես գալու անկուսակցական մասսաների հետ միասնական դաշինքով։

Այժմ, երբ ընտրական կամպանիան թևակոխել է մի այնպիսի փուլ, ինչպիսին դեպուտատության թեկնածուների առաջադրումն է, մենք կարող ենք գոհունակությամբ արձանագրել, որ ժողովրդական նախաձեռնության, հասարակական ակտիվության ալիքը ամենուրեք ժողովրդի ապագա ընտրյալների մակարդակին է բարձրացնում ամենից առաջ վերակառուցման ակտիվ ջատագովներին՝ ինչպես կոմունիստների, այնպես էլ անկուսակցականների թվից։ Եվ սա է ամենակարևորը։ Նրանց մեջ կան կոմունիստներ և անկուսակցականներ, բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության, վետերանների, երիտասարդության, կանանց ներկայացուցիչներ։ Դա հնարավորություն է ընձեռում առավել արժանավորներին ընտրելու համար։

Պետք է ընդգծել նաև ներկա ընտրական կամպանիայի այնպիսի առանձնահատկություններ, ինչպիսիք են դրա ավելի բացահայտ, դեմոկրատական բնույթը, մարդկանց նախաձեռնությունը։ Ամբողջ հասարակությունը շահագրգռված է, որ այդ կարևորագույն քաղաքական կամպանիան ընթանա վերակառուցական պրոցեսների հունով։ Բայց նշելով հրապարակայնության, բացախոսության, քաղաքացիական նախաձեռնության աճը, մենք, այնուամենայնիվ, պետք է նախընտրական կամպանիային մոտենանք ոչ թե որպես ինչ-որ տարերային պրոցեսի, այլ որպես կարևորագույն մասսայական կամպանիայի, որի հաջողությունը կարող է ապահովվել բարձր կազմակերպվածությամբ ու պատասխանատվությամբ միայն։

Այն պայմաններում, որ բնորոշ են ներկա ընտրական կամպանիային, մենք կարող ենք բախվել մեզ համար միանգամայն նոր երևույթների՝ և ոչ միայն դրական բնույթի երևույթների։ Ընտրողների շահագրգռության հետ մեկտեղ, որոնք կուզենային իրենց դեպուտատներին տեսնել որպես վերակառուցման իսկապես ակտիվ, ջերմ կողմնակիցների, պետական իշխանության նոր բարձրագույն մարմինների աշխատանքում արժանի ավանդ ներդնելու ընդունակ մարդկանց, մենք կարող ենք բախվել նաև մի շարք բացասական մոմենտների։ Եվ այս իմաստով արդեն փաստեր կան։ Խոսքը վերաբերում է խմբակային եսամոլության, պատվախնդրության, քաղաքական կարիերիզմի դրսևորումներին։ Բացառված չեն նաև ազգամիջյան հարաբերությունների զարգացման հետ կապված պրոբլեմների շահարկումները։

Կուսակցական կազմակերպությունները այս բոլոր հարցերում պետք է հստակ, սկզբունքային դիրք բռնեն։ Անհրաժեշտ է պաշտպանել իրոք առաջավոր մարդկանց, պայմաններ ապահովել թեկնածուների օբյեկտիվ գնահատման համար։ Եվ, իհարկե, հասնել այն բանին, որ ընտրական կամպանիայի շնորհիվ սովետական իշխանության բարձրագույն մարմիններում ներկայացված լինեն մեր հասարակության բոլոր խավերը, բոլոր ազգերն ու ազգությունները։ Սա սկզբունքորեն կարևոր է։

Կուսակցությունը հենց այսպիսի ազնիվ դիրքորոշումով կմասնակցի ընտրական կամպանիային, ելնելով նոր ընտրական օրենքի դեմոկրատական բովանդակությունից։

Այնպես որ ներկա ընտրությունները առաջ քաշեցին բազմաթիվ նոր, հետաքրքրական հարցեր, անսովոր պահանջներ և խնդիրներ։ Դրանց իրականացման համար հարկավոր է լուրջ գաղափարախոսական աշխատանք, և ոչ թե ինչ-որ ժամանակ ապագայում, այլ արդեն հիմա։ Եվ այն հարկավոր է ծավալել լայն ճակատով, ամենուրեք։ Մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը պետք է ակտիվորեն ներգրավվեն ընտրական կամպանիայում, ժամանակին լուսաբանեն դրա բոլոր կողմերն ու պրոցեսները, նպաստեն ընտրությունների հաջող անցկացմանը այն սկզբունքներով, որոնք բխում են մեր քաղաքական ռեֆորմի նպատակներից։

Սրանք են ներկա քաղաքական պահի մի շարք կարևոր առանձնահատկությունները։

## II

Ընկերներ: Պլենումում մենք պետք է քննարկենք Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուների առաջադրման հարցը:

Ինչպես հայտնի է, անցյալ տարվա դեկտեմբերի 9-ին ՍՄԿԿ-ից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների ընտրական հանձնաժողովը մամուլի միջոցով դիմեց կուսակցական կազմակերպություններին, ՍՄԿԿ անդամներին և անդամության թեկնածուներին, խնդրելով առաջարկություններ անել կուսակցությունից դեպուտատության թեկնածուների վերաբերյալ:

Հանձնաժողովը սահմանեց ՍՄԿԿ Կենտկոմին այդ առաջարկությունները ներկայացնելու կարգը: Որոշվեց, որ տեղերում աշխատող կոմունիստներին առնչվող առաջարկությունները քննարկվում են սկզբնական կուսակցական կազմակերպություններում, այնուհետև՝ վերադաս կուսակցական մարմիններում, ընդհուպ մինչև միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները:

Հանձնաժողովը նաև սահմանեց, որ ուրիշ հանրապետությունների, երկրամասերի և մարզերի տարածքում աշխատող կամ բնակվող նշանավոր քաղաքական, պետական և հասարակական գործիչների, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, գիտության և մշակույթի ականավոր ներկայացուցիչների թեկնածություններին առնչվող առաջարկությունները կարող են ուղարկվել նաև անմիջականորեն ՍՄԿԿ Կենտկոմ:

Այսպիսով ձևավորվեց առաջարկությունների երկու հոսանք, որոնք ամեն մի կոմունիստի հնարավորություն տվեցին մասնակցելու դեպուտատության թեկնածուների առաջադրմանը: Դա բարենպաստ պայմաններ ստեղծեց թեկնածուների ընտրության համար և արդարացրեց իրեն:

Կայացած քննարկման դեմոկրատական բնույթն են վկայում հետևյալ տվյալները. տեղերում աշխատող կոմունիստների թվից դեպուտատության թեկնածուների առաջադրմանը մասնակցել է ավելի քան 105 հազար սկզբնական կուսակցական կազմակերպություն: Նրանք վերադաս մարմինների քննարկմանն են ներկայացրել 31,5 հազար թեկնածություն: Հետագա քննարկման ժամանակ կուսակցության քաղկոմները, շրջկոմները հավանություն են տվել երեքուկես հազար մարդու: Հետագայում քննարկումն ընթացել է կուսակցության մարզկոմներում, երկրկոմներում, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներում: Այստեղ օգտագործվում էին տարբեր ձևեր՝ կուսակցական կոմիտեների պլենումներ, կուսակցական ակտիվի ժողովներ, բյուրոների ընդլայնված նիստեր: Վերջին հաշվով կուսակցական կոմիտեները ՍՄԿԿ Կենտկոմ ներկայացրին 207 թեկնածություն: Այդ ընկերների ցուցակը դուք ունեք:

Զորամասերի և քաղմարմինների կուսակցական կազմակերպություններից սովետական բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությունում մանրամասնորեն քննարկելուց հետո ՍՄԿԿ Կենտկոմ է ներկայացվել 5 թեկնածություն: Այդ ընկերները նույնպես մտցված են ձեզ մոտ գտնվող ցուցակի մեջ:

Հիմա այն առաջարկությունների մասին, որոնք ՍՄԿԿ Կենտկոմում ստացվել են անմիջականորեն կուսակցական կազմակերպություններից, աշխատավորական կոլեկտիվներից և առանձին անձանցից: Ընդամենը ստացվել է 12 հազար հեռագիր, նամակ, ժողովների որոշումների քաղվածք: Այդ առաջարկությունների մեծ մասը վերաբերում էր քաղբյուրոյի անդամներին, քաղբյուրոյի անդամության թեկնածուներին և ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարներին: Իսկ ընդամենը այդ ուղիով առաջարկվել էր 382 թեկնածություն: Դրանց մոտավորապես կեսը համընկավ կուսակցական կազմակերպություններում քննարկված առաջարկություններին: Դա հաշվի առնելով՝ թեկնածությունների ցուցակը կրճատվեց: Այն ձեզ մոտ նույնպես կա:

Այսպիսով, ընկերներ, մենք պետք է ընտրություն կատարենք առաջին և երկրորդ ցուցակներում նշված 312 մարդուց, եթե հանենք կրկնությունները:

Քաղբյուրոն քննության առավ ստացված բոլոր առաջարկությունները և ձեր քննարկմանն է ներկայացնում 100 թեկնածություններից կազմված ցուցակ: Այդ ցուցակը ձեզ մոտ նույնպես կա:

Ուզում եմ պլենումին զեկուցել այն նկատառումները, որոնցով ղեկավարվում էր քաղբյուրոն՝ կազմելով թեկնածությունների ցուցակը: Առաջին հերթին մենք հենվում էինք կուսակցական կազմակերպությունների հանձնարարականների վրա: Դրանում կարելի է համոզվել, համադրելով տեղերից ներկայացված թեկնածությունների ցուցակները և քաղբյուրոյի կողմից ձեր քննարկմանը ներկայացվող ցուցակը:



Քաղբյուրոն նաև հաշվի էր առնում, որ տեղերից արված առաջարկություններում նախապատվությունը տրված էր բանվոր դասակարգի և գյուղացիության առավել ակտիվ, հեղինակավոր ներկայացուցիչներին: Մենք գտնում ենք, որ դա սկզբունքորեն կարևոր է և ճիշտ: Նման մոտեցումն արտահայտում է կուսակցության շարքերի ռեալ կազմը, որոնցում առավելությունը բանվորների և գյուղացիների կողմն է:

Ընդսմին նկատի էր առնվում նաև այն, որ այդ մարդիկ իրենց լավագույն կերպով էին դրսևորել տարիներ շարունակ և հատկապես վերակառուցման տարիներին: Նրանք անհրաժեշտ քաղաքական, գործարար, քաղաքացիական հատկանիշներ ունեն ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների վսեմ պարտականությունները կատարելու համար:

Դուք երևի նաև ուշադրություն դարձրած լինեք, որ մեծ մասամբ դրանք ուժերի ծաղկման շրջան ապրող մարդիկ են, որոնք ընդունակ են ակտիվորեն և արգասավոր կերպով աշխատելու: Կուսակցական կոմիտեները ներկայացրել են այն ընկերների ծավալուն բնութագրերը, որոնք երաշխավորվում են քննարկման: Եթե ոմանց մեջ հարցեր ծագեն, ապա դրանց կարող են պատասխանել նաև միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների և մարզկոմների այստեղ ներկա գտնվող առաջին քարտուղարները:

Կուզենայի ուշադրություն հրավիրել այն բանի վրա, որ երաշխավորվածների մեջ շատ են կոմունիստները, որոնց հետ մեր մեծամասնությունը լավ ծանոթ է: Նրանք հայտնի են ամբողջ երկրին: Հաստատելու համար կարող եմ նշել այնպիսի մարդկանց, ինչպիսիք են Կեմերովոյի մարզից հանքափոր Վ. Մ. Գվոզդևը, տյումենցի նավթագործ Վ. Լ. Սիդորենկոն, կուբանցի Մ. Ի. Կլեպիկովը, Ուկրաինայից Ե. Ն. Պարուբոկը: Կարծում եմ նաև, որ բոլորը լավ գիտեն նաև Վ. Ն. Գոլուբևային, կոլտնտեսության նախագահ, գյուղի վերակառուցման ակտիվ ջատագով Մ. Գ. Վագինին, Լատվիայի բանվոր դասակարգի ներկայացուցիչ Կ. Ի. Նյուկշային, բամբակագործուհի և ակտիվ հասարակական աշխատող Թ. Բ. Կիրգիզբաևային: Դուք ցուցակում տեսնում եք նաև գիտության, տեխնիկայի և մշակույթի հանրահայտ ներկայացուցիչների: Թեկնածությունների ցուցակում ընկերներ են ընդգրկված բոլոր միութենական հանրապետություններից: Մեզ թվում է, որ դա նույնպես սկզբունքային նշանակություն ունի:

Պլենումում պետք է քննարկել նաև այն, թե մենք ինչպես ենք վարվելու կուսակցության ղեկավարության անդամներին ՍՄԿԿ-ից դեպուտատության թեկնածուների կազմում առաջադրելու հարցում: Քաղբյուրոն կուզենար այդ կապակցությամբ արտահայտել իր նկատառումները և դրանք ներկայացնել պլենումի քննարկմանը:

Ինչպես գիտեք, մեզ մոտ կառավարության կազմի մեջ մտնող ընկերները, բացի Մինիստրների խորհրդի նախագահից, չեն կարող դեպուտատ լինել: Մենք ելել ենք դրանից:

Քաղբյուրոն նպատակահարմար է գտնում, որ տեղերում աշխատող քաղբյուրոյի անդամները և անդամության թեկնածուները, ինչպես նաև միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության և երկրկոմների և մարզկոմների տերիտորիալ կամ ազգային տերիտորիալ օկրուգներում առաջադրված քարտուղարները համաձայնություն տան քվեարկվելու այդ օկրուգներից մեկում: Թեև պետք է ասեմ, որ կուսակցական կազմակերպությունները նրանցից շատերին մտցրել են առաջադրված թեկնածությունների ցուցակի մեջ:

Ինչ վերաբերում է Կենտկոմի քաղբյուրոյի անդամներին, քաղբյուրոյի անդամության թեկնածուներին և ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարներին, նրանց այն մասը, որը նոր օրենքին համապատասխան կարող է ընտրվել ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատ, կարող էր առաջադրվել ՍՄԿԿ-ից դեպուտատության թեկնածու:

Ահա այն նկատառումները, որոնք ես անհրաժեշտ էի համարում զեկուցել Կենտկոմի պլենումին:

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի 1989 թվականի հունվարի 10-ի**

## ՈՐՈՇՈՒՄԸ

**Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների անցկացման մասին**

*1. Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրություններին նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը գումարել 1989 թվականի մարտի 15—16-ը, Մոսկվա քաղաքում։*

*2. ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրություններում քվեարկությունն անցկացնել ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուների, ՍՄԿԿ Կենտրոնական, ինչպես նաև միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների ու մարզկոմների՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի կազմի մեջ չմտնող առաջին քարտուղարների, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների երկրորդ քարտուղարների, միութենական հանրապետությունների գերագույն սովետների նախագահությունների նախագահների և մինիստրների խորհուրդների նախագահների, մինիստրների և կենտրոնական գերատեսչությունների ու կազմակերպությունների ղեկավարների, զինվորական օկրուգների հրամանատարների մասնակցությամբ։*

*3. ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին հանձնարարել Կենտկոմի պլենումում քվեարկողների ցուցակը օրենքով սահմանված կարգով ներկայացնել ՍՄԿԿ-ից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների ընտրական հանձնաժողովին։*

---

ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

## ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

### ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ՍՍՀ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ԻՆՔՆԱՎԱՐ ՄԱՐԶՈՒՄ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՏՈՒԿ ՁԵՎ ՍԱՀՄԱՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում և նրա առնչությամբ ազգամիջյան հարաբերությունների շարունակվող լարվածության կապակցությամբ, նպատակ ունենալով կանխել դրանց հետագա սրումը և կայունացնել իրադրությունն այդ ռեգիոնում, հաշվի առնելով Ադրբեջանական ՍՍՀ-ի և Հայկական ՍՍՀ-ի կուսակցական ու պետական մարմինների, ինչպես նաև Ազգությունների սովետի հանձնաժողովի առաջարկությունները, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությունը, այդ հարցը քննության առնելով Ադրբեջանական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության հետ, ՍՍՀՄ սահմանադրության 119-րդ հոդվածի 14-րդ կետին համապատասխան որոշում է.*

*1. Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում ժամանակավորապես սահմանել կառավարման հատուկ ձև, պահպանելով Լեռնային Ղարաբաղի՝ որպես Ադրբեջանական ՍՍՀ-ի կազմում ինքնավար մարզի, ստատուսը։*

*Կազմել Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հատուկ կառավարման կոմիտե՝ ընկ. Ա. Ի. Վոլսկու նախագահությամբ։*

*Դադարեցնել Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի քսաներորդ գումարման ժողովրդական դեպուտատների սովետի լիազորությունները մինչև սովետի նոր կազմի ընտրությունների անցկացումը։*

*2. Սահմանել, որ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հատուկ կառավարման կոմիտեն ենթարկվում է անմիջականորեն ՍՍՀ Միության պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմիններին, լրիվ ծավալով օժտված է ինքնավար մարզի ժողովրդական դեպուտատների սովետի և նրա գործադիր կոմիտեի լիազորություններով, իսկ Կոմիտեի նախագահը՝ ժողովրդական դեպուտատների մարզային սովետի գործադիր կոմիտեի նախագահի իրավունքներով ու պարտականություններով։*

*Հիշյալ Կոմիտեի վրա դնել Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի պետական իշխանության և կառավարման տեղական մարմինների ղեկավարումը, ինչպես նաև նրան հանձնել ժողովրդական դեպուտատների մարզային սովետի գործադիր կոմիտեի ապարատը՝ որպես աշխատանքային մարմին։*

*3. Սահմանել, որ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի տարածքում գտնվող միութենական և հանրապետական ենթակայության ձեռնարկությունները, հիմնարկություններն ու կազմակերպությունները, ինչպես նաև նրանց մասնաճյուղերը, արտադրամասերն ու մյուս կառուցվածքային ստորաբաժանումները սույն հրամանագրի գործողության ժամանակամիջոցում, այն հարցերում, որ կորոշի ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը՝ հաշվի առնելով Ադրբեջանական ՍՍՀ Մինիստրների խորհրդի կարծիքը, ենթարկվում են Կոմիտեին։*

*Մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության, մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցների օրգանները, հրատարակչությունները, պոլիգրաֆիական ձեռնարկությունները, ներքին գործերի մարմինները, ինչպես նաև մշակույթի,*

ժողովրդական կրթության, առողջապահության հիմնարկությունների ու ոչ արտադրական ոլորտի մյուս կազմակերպությունները, անկախ իրենց ենթակայությունից ու գերատեսչական պատկանելությունից, իրենց գործունեությունը իրականացնում են Կոմիտեի կամ նրա լիազորած անձանց անմիջական ղեկավարությամբ։

Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի տարածքում դատախազության ու դատարանների գործունեությունն իրականացվում է գործող օրենսդրության ու այն կարգի համաձայն, որ կսահմանեն համապատասխանաբար ՍՍՀՄ գլխավոր դատախազը, ՍՍՀՄ արդարադատության մինիստրությունը և ՍՍՀՄ գերագույն դատարանը։

4. Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հատուկ կառավարման կոմիտեին իրավունք տալ.

դադարեցնել Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի ժողովրդական դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական, ավանային սովետների, նրանց գործադիր և կարգադիր մարմինների լիազորությունները, ինչպես նաև նշանակել հիշյալ տեղական սովետների ընտրություններ և կազմակերպել դրանց անցկացումը.

դադարեցնել հասարակական կազմակերպությունների և ինքնագործ միավորումների՝ ՍՍՀՄ սահմանադրությանն ու օրենսդրությանը հակասող գործունեությունը կամ, անհրաժեշտության դեպքում, արձակել դրանք։ Հանրապետական կամ ընդհանուր միութենական մարմիններ ունեցող նշված կազմակերպությունների ու միավորումների գրանցումը կամ արձակումը կատարվում է այդ մարմինների հետ համաձայնեցնելով.

անհրաժեշտության դեպքում պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության հարցերի առթիվ առաջարկություններ ներկայացնել անմիջականորեն ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահություն, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդ, ՍՍՀՄ Մինիստրություններ, պետական կոմիտեներ ու գերատեսչություններ։

5. Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի տարածքում ժամանակավորապես դադարեցնել «Պետական ձեռնարկության (միավորման) մասին» ՍՍՀՄ օրենքի 6-րդ հոդվածի 2-րդ, 3-րդ կետերի ու 5-րդ կետի երրորդ պարբ. և 7-րդ հոդվածի գործողությունը։

6. Ադրբեջանական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությանը՝ ընդունել սույն հրամանագրից բխող համապատասխան որոշումներ։

7. Սույն հրամանագիրը կիրարկել 1989 թվականի հունվարի 20-ից։

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝
Մ. ԳՈՐԲԱՉՈՎ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝
Թ. ՄԻՆԹԵՇԱՇՎԻԼԻ

Մոսկվա, Կրեմլ, 12 հունվարի, 1989 թ.

---

## Հանրապետական կուսակցական-տնտեսական ակտիվի ժողով

# ԸՆԿԵՐ Ն. Ի. ՌԻԺԿՈՎԻ ԵԼՈՒՅԹԸ

Հարգելի ընկերներ։

Ահա արդեն գրեթե մեկուկես ամիս է, ինչ այստեղ՝ Հայաստանին են ուղղված սովետական մարդկանց հայացքները, այստեղ է գալիս օգնության ու կարեկցանքի չնվազող ալիքը։ Մեր ամբողջ բազմազգ ժողովուրդն է մասնակցում դժբախտության հաղթահարմանը և անկեղծորեն ցանկանում է, որ հնարավորին չափ արագորեն սպիանան Հայաստանի վերքերը։

Ինչպես գիտեք, այդ ամբողջ ընթացքում աշխատում էր ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հատուկ ստեղծված հանձնաժողովը։ Երեկ, երեք շաբաթ անց, մենք նորից եղանք Լենինականում, Սպիտակում, Կիրովականում։

Վերհիշում ենք մեր ժամանումը այստեղ դեկտեմբերի 8-ի ահավոր առավոտը, հետագա ուղևորությունները երկրաշարժից տուժած քաղաքներում, շրջկենտրոններում և գյուղերում ու ակամայից համեմատում երեկվա տեսածի հետ։ Առաջընթացն, անշուշտ, շատ էական է, շատ նկատելի։ Վերացվում են վերջին փլվածքները, մաքրվում նոր շինարարության տեղերը, հնարավորին չափ դասավորվում է մարդկանց կենցաղը, աստիճանաբար կարգավորվում է արտադրական կյանքը։ Բայց միայն արտաքին պատկերը չէ, որ փոխվել է։ Բարեփոխվում է տրամադրությունը աղետի գոտում։ Երեկ մենք շատ հանդիպումներ ունեցանք։ Չեմ սկսի դրանք վերապատմել։ Գլխավորն այն է, որ մարդիկ ոգի են առել, նրանք իրենց մեջ ուժ ու արիություն են գտնում նոր կյանքի համար։ Ահա, թերևս, ամենացայտուն, թեկուզև առօրյա մանրամասն. փողոցներում մենք տեսանք պայուսակներով և ուսապայուսակներով երեխաների, դպրոցներում, տեխնիկումներում վերսկսվել են պարապմունքները։

Երեկ մենք լսեցինք տուժած շրջանների բնակիչների երախտիքի բազում անկեղծ խոսքեր եղբայրական հանրապետությունների, մինիստրությունների և գերատեսչությունների պատվիրակների հասցեին, որոնք այժմ աշխատում են այդ վայրերում։ Վիթխարի էր այդ օգնության նշանակությունը երկրաշարժից հետո առաջին օրերին։ Այն երբեմն, բառիս ուղղակի իմաստով, չափվում էր փրկված մարդկային կյանքերով։ Բայց այն պակաս կարևոր չէ նաև այժմ, քանի որ այդ եղբայրական օգնության հետ այստեղ են գալիս ոչ միայն հազարավոր տոննաներով բեռներ, ոչ միայն արդիական հզոր տեխնիկա, ոչ միայն փող ու մթերք, այլև միութենական հանրապետությունների, մինիստրությունների և գերատեսչությունների պատվիրակները, Մոսկվայից և Լենինգրադից, երկրի բոլոր անկյուններից ժամանած կամավորները, քաղաքաբնակներն ու գյուղաբնակները այստեղ են բերում կյանքի կոլեկտիվիզմի շունչը, աշխատանքային տրամադրությունը։ Նրանք տուժածներին օգնում են վերածնվելու ոչ միայն ֆիզիկապես, այլև հոգեպես։ Բազմազգ երկիրը Հայաստանի հետ կիսում է ոչ միայն նյութական ռեսուրսները, արժեքները, որոնք, ուղղակի ասենք, մեզ մոտ ոչ մի տեղ էլ լիառատ չեն, այլև նրան բաժին են հանում իրենց հոգու ջերմությունից ու կենսունակությունից։

Կենտկոմի քաղբյուրոն ամբողջությամբ վերցրած դրականորեն գնահատեց Հայաստանի համար այս անչափ դժվարին ժամին կոմունիստների, բոլոր աշխատավորների ուժերը համախմբելու հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեությունը։

Երկրաշարժի հետևանքները վերացնելու աշխատանքների երկրորդ փուլը մենք անվանում ենք վերականգնողական։ Բայց այն պակաս բարդ ու պակաս մարդասիրական չէ, քան առաջինը, որովհետև խոսքը տվյալ դեպքում նույնպես փրկության՝ մի

խոշոր ռեգիոնի կենսագործունեության փրկության մասին է: Չեմ կարող չասել նաև երկրաշարժի հետևանքների վերացման գործում հենց իր՝ հայ ժողովրդի ներդրած ավանդի մասին, որը հայտնի է իր աշխատասիրությամբ ու վարպետությամբ: Հանրապետությունից, քաղբյուրոյի հանձնաժողովի անդամներից ստացված հաղորդումները, երեկվա հանդիպումները ու դիտարկումները պերճախոս կերպով վկայում են, որ այդ ներդրումը օրեցօր աճում է: Հանրապետությունը աշխատում է, որպեսզի փլատակներից հնարավորին չափ արագ հառնեն քաղաքները ու գյուղերը, որպեսզի վերականգնվի ռեգիոնի սոցիալ-տնտեսական պոտենցիալը: Դրանում էլ են դրսևորվում ոչ միայն սերը Հայաստանի հանդեպ, կարեկցանքը իր ժողովրդի նկատմամբ, այլև սովետական ինտերնացիոնալիզմի զգացումը: Հայաստանի բնակչությունը հասկանում է, որ որքան արագ վերացվեն դժբախտության հետևանքները, որքան արագ վերականգնվի հանրապետության տնտեսությունը, այնքան կթեթևանա մեր ընդհանուր բեռը, այնքան ծանրակշիռ կդառնա Հայաստանի ներդրումը վերակառուցման գործին:

Այսպես, դժբախտությունը կրկին ցույց տվեց, որ մենք ուժեղ ենք, երբ միասին ենք, որ միայն ինտերնացիոնալիզմի և վերակառուցման ուղիներում է գտնվում բոլոր, այդ թվում հնացած պրոբլեմների լուծումը, ամեն տեսակ դժբախտությունների ու դժվարությունների հաղթահարումը: Այս միտքը ընդգծված է նաև կուսակցության, սովետական ժողովրդին ուղղված Կենտրոնական կոմիտեի օրերս հրապարակված դիմումի մեջ, որն ընդունվել է ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում: «Անշեղորեն կենսագործելով լենինյան ազգային քաղաքականությունը,— ասվում է դիմումի մեջ,— կուսակցությունը կստեղծի այնպիսի պայմաններ, որ սովետների երկրի յուրաքանչյուր ազգ ու ազգություն ապրի ավելի լավ, որ առավել լիովին բացահայտվի նրանց ազգային ինքնատիպությունը, ավելի հարստանա ու ամրապնդվի մեր եղբայրական Միությունը»:

Դուք գիտեք, ընկերներ, թե երկրաշարժի հետևանքների վերացման ինչ մեծ խնդիրներ են առաջադրել մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն և կառավարությունը, թե ինչպիսի հետևողական ուշադրություն է այդ հարցերին դարձնում Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը:

Անցյալ տարվա դեկտեմբերի 28-ին այդ հարցի վերաբերյալ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի զեկուցումը քննարկելիս Կենտկոմի քաղբյուրոն հատկապես ընդգծեց հանրապետության երկրաշարժից տուժած շրջանների սոցիալ-տնտեսական պոտենցիալի վերականգնման աշխատանքների ծավալումն արագացնելու անհրաժեշտությունը: Եվ մենք հավաքվել ենք այստեղ, որպեսզի ամփոփենք աշխատանքների այն փուլի առաջին արդյունքները, երբ փրկարար գործողությունները փաստորեն ավարտված են, ինչպես նաև քննարկենք կուսակցության Կենտրոնական կոմիտեի և Մինիստրների խորհրդի համապատասխան որոշումների իրականացման հետ կապված խնդիրները:

Խոսքը Հայաստանի շրջաններում վերականգնման ու շինարարական աշխատանքների խոշորամասշտաբ կոմպլեքսային ծրագրի մասին է: Նրա բաղկացուցիչ մասերն են՝

— երկրաշարժից տուժած քաղաքների վերականգնման ու կառուցման միջոցառումների մասին որոշումը: Այդ որոշման էությունը մյուս միութենական հանրապետությունների, ՍՍՀՄ մինիստրությունների ու գերատեսչությունների կողմից Հայաստանին օգնություն ցույց տալն է երկու տարվա ընթացքում չորս միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տների, դպրոցների, նախադպրոցական հիմնարկների, հիվանդանոցների և սոցիալական ոլորտի ու կոմունալ տնտեսության մյուս օբյեկտների վերականգնման ու կառուցման գործում.

— մյուս որոշմամբ նախատեսվում է 1989—1990 թվականներին միութենական հանրապետությունների պետագրոարդների շինարարական կազմակերպությունների ուժերով և նրանց հաշվին ավելի քան 1,6 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տների, սոցիալ-կուլտուրական և ագրոարդյունաբերական համալիրի արտադրական օբյեկտների վերականգնում ու կառուցում.

— երրորդ որոշմամբ էլ նախատեսվում է 1989—1990 թվականներին վերականգնել երկրաշարժից տուժած 130-ից ավելի արդյունաբերական ձեռնարկություններ:

Այդ շինարարական ծրագրի ընդհանուր արժեքը գնահատվում է մոտավորապես 8 միլիարդ ռուբլի:

Նախնական հաշվարկները ցույց են տալիս, որ քաղաքներում և շրջկենտրոննե-



րում շինարարական աշխատանքների ամբողջ ծրագրի իրականացման համար կպահանջվեն առնվազն հարյուր հազար, իսկ գյուղական վայրերում՝ մոտավորապես 40 հազար շինարարներ: Այդ բոլորին անհրաժեշտ է մոբիլիզացնել ինչպես Հայաստանում, այնպես էլ մյուս միութենական հանրապետություններից և ժողովրդական տնտեսության ճյուղերից:

Ինչպես հասկանում եք, այդ որոշումները հսկայական սոցիալական ու ժողովրդատնտեսական նշանակություն ունեն: Բայց պակաս մեծ չէ դրանց քաղաքական նշանակությունը, որովհետև լուծվում է հանրապետության մի խոշոր ռեգիոնի վերածննդի հարցը, որտեղ ապրում է նրա բնակչության ավելի քան քառորդ մասը: Դա կենսականորեն կարևոր հարց է ամբողջ Հայաստանի, նրա ժողովրդի, նրա ապագայի համար: Այդ իսկ պատճառով այն դարձել է նաև ընդհանուր միութենական հոգածության առարկա:

Կոնկրետ խնդիրներ են դրված յուրաքանչյուր միութենական հանրապետության, կենտրոնական մինիստրությունների ու գերատեսչությունների առջև, և պետք է նշեմ, որ նրանք բոլորն էլ մեծ ըմբռնումով, կուսակցական մեծ պատասխանատվությամբ ընդունեցին իրենց համար այդ շատ բարդ առաջադրանքները:

Բայց, ընկերներ, ինչքան էլ որ նշանակալից լինի օգնությունը, այն արդյունավետորեն և ժամանակին օգտագործելը կախված կլինի բուն հանրապետության ջանքերից, երկրաշարժի հետևանքները վերացնելու գործում նրա ներդրած իրական ավանդից: Դա պետք է հստակորեն գիտակցեն Հայաստանի կոմունիստները, հանրապետության ամբողջ կուսակցական-տնտեսական ակտիվը, բոլոր աշխատավորները:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի դեկտեմբերի 28-ի որոշման մեջ առաջնային է համարված ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՈԼՈՐՏԸ: Եվ հենց սկզբից այստեղ ամբողջ խորությամբ ի հայտ եկավ տուժած շրջանների բնակչության կենսապահովման խնդիրը: Այլ խոսքով, հարկավոր է հնարավորին չափ արագ ընդունելի կենսապայմաններ ստեղծել տուժածների և բոլոր նրանց համար, ովքեր օգնության են եկել նրանց: Մարդկանց նախ և առաջ պետք է տաք կացարան տալ: ՍՍՀՄ պետմատը հինգ հազար վագոն-տնակ, մոտ հազար գործարանային պատրաստության փայտե տներ է հատկացրել հանրապետությանը: Փաստորեն դա ամբողջն է, ինչ առկա է: Այժմ առաջնահերթ խնդիր է հանրապետությանը օգնություն ցույց տալու համար լրացուցիչ ռեսուրսներ մոբիլիզացնելը:

Ոչ լրիվ տվյալներով, պահպանված շենքերում, վագոն-տնակներում և երկաթուղային վագոններում ներկայումս ապրում է տուժած շրջանների բնակչության մոտավորապես 72 տոկոսը, իսկ վրան ավաններում՝ 28 տոկոսը:

Եվ եթե չենք կարող բոլոր տուժածներին միանգամից ապահովել հարմար կացարաններով, ապա ուրեմն եկեք հոգ տանենք վրաններում ապրելու առավելագույն հնարավոր հարմարություններ ստեղծելու մասին, որպեսզի մարդիկ չսառչեն ու չհիվանդանան:

Այսօրվա վիճակով սննդամթերքի հետ կապված լուրջ խնդիրներ չեն կարող լինել: Տուժած շրջաններն ապահովված են մսով, երշիկով, կաթնամթերքով: Բայց, չնայած մթերքների բավարար քանակին, շատերը դեռևս նորմալ սնունդ չունեն այն պատճառով, որ տաք ուտելիք չեն ստանում: Բոլորը չէ, որ հնարավորություն ունեն իրենց համար ճաշ եփել: Հարկավոր է ավելի շատ ճաշարաններ բացել, դրանց համար հարմարեցնել ավելի շատ վրաններ ու առկա շինություններ: Այդ ժամանակամիջոցում, այդ երեք շաբաթում, անշուշտ, շատ մեծ փոփոխություններ են տեղի ունեցել: Մեզ զեկուցեցին, որ միայն Լենինականում երեկվա դրությամբ գործում էին հարյուր խանութ և 75 ճաշարան՝ բնակչության սնվելու համար: Տեղ-տեղ արդեն այդպես էլ արվում է, բայց ոչ ամենուրեք: Եվ սա ամենավիրավորականն է, քանի որ նյութական պայմաններ ստեղծված են, պահեստներում կան մթերքներ, վրաններ, տաք հագուստ, իսկ մարդիկ շարունակում են թշվառ վիճակում մնալ տեղական իշխանության անկազմակերպվածության, անձեռներեցության պատճառով: Ասենք, հացի հերթեր են լինում ոչ թե այն պատճառով, որ այլյուրը չի բավականացնում, այլ այն, որ հաց թխելը, այն խանութներ հասցնելը, հենց վաճառքը շատ վատ են կազմակերպված: Ահա և ստացվում է, որ ոմանք ի դեպս ամեն պարագայի ավել են գնում, իսկ հերթը ստիպված է սպասել նոր հացի բերելուն:

Անհետաձգելի գործերի թվում մենք ոչ մի րոպե չպետք է թուլացնենք ուշադրությունը երեխաների նկատմամբ: Բանը միայն այն չէ, որ նրանք տաք հագնված, կոշիկով ապահովված, կերակրված լինեն. սա ինքնըստինքյան հասկանալի է: Երեխաները պետք է սովորեն: Ներկայումս աղետյալ շրջաններում գտնվում են նախա-

դպրոցական ու դպրոցական տարիքի 80 հազար երեխաներ, և նրանցից գրեթե 18 հազարը դեռևս ոչ մի տեղ չի սովորում: Պետք է բոլոր միջոցները ձեռնարկվեն՝ շենքեր, փոխադրամիջոց, դասագրքեր, ուսուցիչներ գտնել, որպեսզի արդեն մոտ ժամանակներս աշակերտական նստարաններին տեղ գրավեն բոլոր աշակերտները: Այդ տեսակետից լավ օրինակ ցույց տվեց Լենինականը: Երեկ մենք այնտեղ տեսանք, թե ինչպես են սկսվել պարապմունքները տաքացվող վրաններում, ինչը թույլ է տալիս չկորցնել ուսումնական տարին:

Դպրոցների կառուցումը պետք է իրականացնել բնակարանների շինարարության հետ միաժամանակ կամ ավելի արագ: Գործող դպրոցը նաև քիչ կարևոր հոգեբանական գործոն չէ, դպրոցը միշտ էլ մարդկանց նորմալ կյանքի նշան է եղել: Չմոռանանք այս մասին:

Այսօր տուժած շրջաններում եռուն կյանքը վերածնելու խնդիրը արդեն այնքան էլ նյութական խնդիր չէ. լավ թե վատ, այդ մարդիկ ծածկ ունեն, գործում են հաց, միս, երշիկ, կարագ, կաթնամթերք, շաքար վաճառող պարենային խանութներ, կան հագուստ ու տաք իրեր, գործում են բաղնիքներ, վարսավիրանոցներ, հիվանդանոցներ, դեղատներ: Դա առավելապես բարոյահոգեբանական խնդիր է: Մարդկանց մեջ մնում է վախը, նրանց կարելի է և պետք է հասկանալ, նրանք չեն ուզում գնալ ապրելու երկրաշարժին դիմացած տներում, պահպանված արտադրական մասնաշենքերում բարձրանալ երկրորդ հարկից վեր: Այստեղ իրենց խոսքը պետք է ասեն նախ և առաջ բժիշկները, ու, հավանաբար, նրանք ճիշտ են հարց դնում հանրապետությունում վերականգնողական հոգեբանական կենտրոն բացելու մասին: Ես կարծում եմ, որ մենք չպետք է ձգձգենք այս հարցը:

Վերածնվելու են ոչ միայն տարերքի ավերած քաղաքներն ու գյուղերը, այլև հազարավոր մարդիկ, որոնք ընկճված են ֆիզիկապես ու բարոյապես, կորցրել են իրենց ընտանիքները, հարազատներին ու մերձավորներին: Երկիրը ընդունակ է այդ մարդկանց օգնելու հագուստով, սննդով, օթևանով, բայց կյանքի իմաստը վերագտնելու համար նրանց կարող են օգնել նախ և առաջ հայրենակիցները, աշխատանքային ընկերները իրենց հոգատարությամբ, ուշադրությամբ, նրբանկատությամբ: Բուն մարդուն ջերմացնելը ավելի հեշտ է, քան նրա հոգուն շունչ հաղորդելը: Այսօր ողջ հայ ժողովրդի առջև դրված հիմնական խնդիրներից մեկն է թույլ չտալ, որ մարդը պարփակվի իր վշտի մեջ, մատնվի հուլության: Միայն աշխատանքը, կոլեկտիվ աշխատանքը կարող է մարդուն օգնել հոգով ու սրտով վերանալու ապրածից, ծանր խոհերից, վերգտնելու հավատ իր և ապագայի հանդեպ:

Առանձնապես կկամենայի, որ կոլեկտիվները անուշադրության չմատնեն իրենց զոհված ընկերների ընտանիքներին: Ոչ մի կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություն իրավունք չունի մոռանալ այդ մասին, ինչքան էլ որ ծանր դասավորվեն հանգամանքները:

Այստեղից էլ կուսակցական, սովետական ակտիվի առջև ծառացած հանգուցային խնդիրը՝ վերածնել աշխատավորական կոլեկտիվները, որոնք ընդունակ են ոչ միայն մարդուն ներգրավել աշխատանքի մեջ, այլև նրան օգնել վերագտնելու իրեն:

Հիմա առանձնապես պատասխանատու պահ է: Այդ ուղղությամբ արդեն որոշակի քայլեր են արված: Հանրապետության թեթև արդյունաբերության մեջ սկսել են աշխատել 23 ձեռնարկությունների կոլեկտիվներ, որոնց թվում Մարալիկի բամբակամանվածքային ֆաբրիկան, Կիրովականի կարի ֆաբրիկան, Թումանյանի տրիկոտաժեղենի ֆաբրիկան: Ագրոարդի վերամշակող արդյունաբերության տուժած 32 ձեռնարկությունից վերականգնված է 26-ը, այդ թվում մսի երկու կոմբինատ: Վերականգնվել և աշխատանքի են ձեռնամուխ եղել կենցաղի սպասարկման, առևտրի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի ձեռնարկությունների շատ կոլեկտիվներ: Ցավոք, բանը բնավ էլ ամենուրեք չէ այդպես: Մի շարք ձեռնարկություններում պատշաճ աշխատանք չի տարվում մարդկանց հետ, նպատակասլացորեն չեն ձևավորվում աշխատավորական կոլեկտիվները:

Կոլեկտիվի ձևավորման գործում կենտրոնական դեմքը ղեկավարն է: Նա ընդունակ է անձնական օրինակով ամրապնդել մարդկանց ոգին, համախմբել կոլեկտիվը: Այս օրերին ղեկավարները ոչ միայն գործնական ու մասնագիտական, այլև մարդկային հատկանիշների քննություն են հանձնում: Եվ այս անչափ բարդ ժամանակ, երբ ղեկավարները գտնվում էին հոգեկան, ֆիզիկական ծայրագույն լարված վիճակում, երկիրն իմացավ Լենինականի, Սպիտակի, Կիրովականի, Ստեփանավանի և շատ այլ կուսակցական կազմակերպությունների քարտուղարների անունները: Ժո-



ղովուրդը պատշաճն է մատուցում նրանց, քանի որ ամենածանր ժամանակ նրանք մարդկանց հետ էին, ապրում էին նրանց դժբախտությամբ ու ձախորդություններով:

Քաղաքների, ավանների, գյուղերի կենսագործունեությունն ապահովելու առաջիկա խնդիրները կարող են լուծվել միայն կառավարման կառուցվածքների ու նախ և առաջ տեղական սովետական մարմինների նորմալ գործունեության դեպքում: Առանց նրանց հնարավոր չէ ինչպես հարկն է կազմակերպել կոմունալ ծառայությունների, կենցաղային տնտեսության, տրանսպորտի, առողջապահության, ժողովրդական կրթության աշխատանքը, մի խոսքով՝ կարգուկանոն հաստատել:

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում շատ ահազանգեր են ստացվում հայ ժողովրդին նվեր ուղարկված արտասահմանյան իրերի բաշխման նկատմամբ եղած թույլ վերահսկողության մասին, որի մասին այսօր իր ելույթում ասաց ընկ. Հարությունյանը: Նույնն է դեղորայքի հետ կապված վիճակը: Ցավոք, հանրապետության իրավապահ մարմիններն այս գործում պատշաճ միջոցներ չեն ձեռնարկում: Առանց խստիվ հաշվառման դեղորայք պահելը հանցավոր է արդեն իսկ այն պատճառով, որ դեղերի մի մասը չվերահսկվող բաշխման դեպքում չի հասնում հիվանդներին, իսկ այդ դեղորայքի թվում քիչ չեն թմրամիջոցներ պարունակող պատրաստուկները:

Մեզ տագնապ է պատճառում երկրաշարժից տուժած որոշ վայրերում իրադրության նորմալացման պրոցեսի դանդաղումը: Օրինակ, Լենինականում չկա տարբեր մինիստրությունների և գերատեսչությունների բազմաթիվ շտաբները շաղկապող օղակ: Այսպիսի կոորդինացնող կենտրոն կարող է և պետք է դառնա տեղական իշխանությունը: Բայց այն դժվար է զգալ, եթե քաղգործկոմի նախագահի հեռախոսը օրերով չի գործում: Իրական ուժը՝ մարդիկ, տեխնիկան, կապը, ճյուղային շտաբների ձեռքին է, բայց շտաբներն ունեն, ինչպես ասում են, իրենց անբավ գործերը: Նրանք կենցաղային հոգսերով զբաղվելու ժամանակ չունեն: Ճիշտ է, դրանով պետք է զբաղվեն տեղական մարմինները, և բնակիչները գնում են հենց նրանց մոտ՝ քաղգործկոմ, որը, սակայն, վճռական միջոցներ չի ձեռնարկում իրավիճակին տիրապետելու համար:

Երկրաշարժից հետո անցած վեց շաբաթվա ընթացքում աղետի շրջաններում քիչ բան չի արված բնակչության բուժսպասարկումը վերականգնելու համար: Լենինականում, Կիրովականում և 18 շրջկենտրոններում գործում են հիվանդանոցներ, հարմարեցված շինություններում՝ պոլիկլինիկաներ, բուժկետեր, բուժարաններ: Բայց սրանք ժամանակավոր միջոցառումներ են: 1989—1990 թվականների աշխատանքների ծրագրով նախատեսված է վերականգնել 3,4 հազար մահճակալով հիվանդանոցներ և մեկ հերթափոխի ընթացքում 4,5 հազար այցելության համար նախատեսված պոլիկլինիկաներ:

Միութենական և հանրապետական մարմինների կողմից առողջապահության զարգացման նկատմամբ ուշադրությունը պետք է լինի մշտական և անդուլ:

ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ: Ինչպես արդեն նշվեց, կուսակցության և կառավարության որոշումներով երկրաշարժի գոտում նախատեսված է ընդարձակ շինարարական ծրագիր:

Այն նախատեսված է կատարել երկու տարում: Աշխատանքների նախատեսվող ծավալների համար նման ժամկետը շատ սուղ է: Ուստի և ոչ մի դեպքում չի կարելի հապաղում թույլ տալ աշխատանքների ծավալման, այս կամ այն հարցի լուծման գործում:

Մեծ նշանակություն կունենա այն, թե հանրապետությունը ինչպես կապահովի վերականգնման աշխատանքներում ներգրավված շինարարական կազմավորումների գործողությունների կոորդինացումը, ինչ պայմաններ կստեղծի:

Հատկապես պետք է ասել շինարարության որակի մասին: Մենք Հայաստանը գիտենք որպես շինարարության ասպարեզի լավ ավանդույթներ ունեցող հանրապետություն, իսկ հայերին՝ որպես ստեղծարար շինարարների: Տեսեք, թե ինչ հոյակապ տեսք ունի Երևանի կենտրոնական փողոցների կառուցապատումը: Իսկ ինչպե՞ս բացատրել այն աղաղակող անպատասխանատվությունն ու խալտուրան (ներեցեք այդ խոսքի համար), որոնք ուղղակի աչքի են զարնում երկրաշարժի շրջաններում բազմաթիվ բնակելի տներն ու մյուս կառույցները դիտելիս: Հարկավոր չէ մասնագետ լինել շինարարների աշխատանքի բացերը տեսնելու համար, որոնց խղճին է ծանրացած երկրաշարժի պատճառած զոհերի և ավերածությունների չափերի համար պատասխանատվության մեծ բաժինը: Եվ ես չեմ վախենում այդ մասին խոսել: Ուշադրություն են գրավում երկաթբետոնե կոնստրուկցիաների ցածր ամրությունը (երևի այն պատճառով, որ այնտեղ պարզապես քիչ է ցեմենտը), շինարարական աշխա-

տանքների վատ որակը։ Բետոնի և խառնուրդի փաստական ամրությունը երեք-չորս անգամ պակաս է նախագծայինից։ Եթե ամեն ինչ արվեր բարեխղճորեն, սահմանված նորմաների կիրառումով և որակով, ապա երկրաշարժի հետևանքները ուրիշ կլինեին։ Իսկ չէ որ հայ շինարարների այդ թերությունների վրա բազմիցս ուշադրություն են հրավիրել պետական շինարարական տեսչության մարմինները։

Հարկ չկա թվարկել Հայաստանի շինարարական արտադրությունում տեսչության նշած բոլոր բացթողումները։ Բայց կուզենայի բառացի մեջբերել քաղվածք 1987 թվականի մայիսին՝ երկրաշարժից մեկուկես տարի առաջ կազմված մի արձանագրությունից։ Մեջբերում եմ. «Նշված թերություններով շենքերի կառուցումը մեծ վտանգ է ներկայացնում սեյսմիկ շրջաններում, քանի որ նույնիսկ աննշան սեյսմիկ ազդեցության դեպքում տեղի կունենա դրանց լիակատար ավերում»։ Չէ որ դա հայտնի է եղել։ Մեկնաբանություններն այստեղ ավելորդ են։

Ինչպես հայտնի է, ՍՍՀՄ կառավարությունը ստեղծել է հատուկ հանձնաժողով, որը պետք է գնահատական տա աղետյալ շրջաններում զանգվածային սերիաների բնակելի տների նախագծման ու շինարարության որակին և սահմանված նորմաներին ընդունված տեխնիկական լուծումների համապատասխանությանը։ Հանձնաժողովն իր եզրակացությունը կներկայացնի ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին այս տարվա առաջին եռամսյակում։

Եզրակացության հիման վրա պետք է նախապատրաստվեն բարձր սեյսմիկություն ունեցող շրջաններում նախագծման և շինարարության պրակտիկայի կատարելագործման առաջարկություններ և խստացվեն շինարարական նորմաներն ու կանոնները։

Հանձնաժողովի հետևությունները հաշվի առնելով՝ կորոշվի թույլ տրված խախտումների համար շինարարության մասնակիցների պատասխանատվության աստիճանը։

Պարզ է, որ շինարարության մասին որոշումներ ընդունելիս, լինի դա բնակելի տուն, հասարակական շենք, թե արդյունաբերական կառույց, անկյունաքար պետք է դարձնել դրանց հուսալիության հարցերը, որպեսզի երաշխավորվի մարդկանց անվտանգությունը։ Սա նախագծողների և պատվիրատուների համար գլխավոր չափանիշն է նախագծային փաստաթղթերը և շինարարության վայրը ընտրելիս ու հաստատելիս։

Ես չէի ուզենա հանգամանորեն անդրադառնալ Լենինականի քաղաքում լրացուցիչ շինհրապարակների ընտրության հարցին։ Այդ մասին այսօր մեկ անգամ ևս ավեց զեկուցման մեջ։ Բնականաբար, նման բարդ որոշումների ընդունումը պահանջում է լուրջ գիտատեխնիկական վերլուծություններ։ Կարելի է և պետք է բանավիճել այդ գործերի շուրջը, բայց չի կարելի սեփական կարծիքը փոխել մի քանի օրից։

Կարծում եմ, մենք երեկ, ավելի ճիշտ՝ արդեն այսօր, ճիշտ որոշում ընդունեցինք, այս գործում վերջին խոսքը պատկանում է հանրապետությանը։ Դուք եք այստեղ ապրելու, դուք էլ պետք է որոշումներ ընդունեք։ Մենք այդ անչափ բարդ գիտական պրոբլեմների քննարկմանը մասնակից ենք դարձրել երկրի լավագույն գիտնականներին ու մասնագետներին։ Մենք այդ գիտնականներից լավը չունենք։ Եվ նրանց գիտելիքներն ու փորձը լիովին ձեր տրամադրության տակ են։

Ներկայումս տեղի է ունենում շինարարական ստորաբաժանումների և տեխնիկայի տեղաբաշխում։ Արդեն տեղերում են գտնվում ավելի քան 40 հազար շինարարներ։

Լենինականում աշխատանքներին կազմակերպված և պատասխանատու կերպով մոտեցավ Ռուսաստանի Ֆեդերացիան, Կիրովականում՝ Ուկրաինայի շինարարները։ Նրանք արդեն ձեռնամուխ են եղել բնակարանային շինարարությանը։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը պետք է ներգրավվող շինարարական ստորաբաժանումների համար ստեղծի աշխատանքների ծավալման բոլոր պայմանները։ Սակայն հանրապետական մարմինները միշտ չէ, որ օպերատիվորեն են լուծում հարցերը։ Այսպես, աղետի շրջաններ առաքելու համար պատրաստված շինմոնտաժային գնացքները երբեմն ուշանում են այն պատճառով, որ ժամանակին հարթակներ չեն հատկացվում։

Մեծ ծավալի աշխատանքներ պետք է կատարի հանրապետության շինարարական կոմիտեն շինարարության բազան զարգացնելու, սեփական ուժերով բնակարանային-քաղաքացիական, ինչպես նաև հանրապետական տնտեսության օբյեկտներում վերականգնման աշխատանքներ իրականացնելու համար։

Առանձնահատուկ նշանակություն ունի անհատական բնակարանային շինարարության ընդլայնումը։ Մարդիկ թույլտվություն են խնդրում իրենց տները կառուցելու համար։ Ես կարծում եմ, ընկերներ, դա, ինչպես ասում են, երկրաշարժի համախտանիշն է։ Ծատերը չեն ուզում բնակություն հաստատել բազմահարկ տներում և թույլտվություն են խնդրում բնակվելու առանձնատներում։ Նրանց պետք է այդպիսի հնարավորություն տալ, հողամասեր տրամադրել, նկատի ունենալով շրջանի սեյսմիկությունը, օգնել շինանյութերով, մեքենաներով։

Երկրաշարժի հետևանքների վերացման հետ կապված բոլոր ստորաբաժանումների աշխատանքում համակարգված մոտեցում և պլանայնություն ապահովելու համար ՍՍՀՄ մինիստրություններն ու գերատեսչությունները մշակել են ընդունված որոշումների կատարման կոնկրետ ծրագրեր։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովը քննության է առել այդ ծրագրերը, դրանց տվել համապատասխան գնահատականներ։

Հանձնաժողովի հավանությանն են արժանացել ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրության, ՍՍՀՄ գազարդմինի, ՍՍՀՄ սարքմինի, ՍՍՀՄ առողջապահության մինիստրության և հանրապետության ավտոճանմինի մշակած ծրագրերը։

Միևնույն ժամանակ ՍՍՀՄ թեթևարդմինի, ՍՍՀՄ անտառարդմինի, հանրապետության ժողովրդական կրթության մինիստրության ծրագրերը և որոշ այլ ծրագրեր ենթարկվել են քննադատության։ Այս ուղղությամբ աշխատանքը շարունակվում է։ Մի խոսքով, առաջիկա ժամանակաշրջանի նպատակներն ու խնդիրները սահմանվել են, գործողությունների պլանները՝ նշվել, լուծված են զգալի թվով կազմակերպական հարցեր։ Հիմա կոնկրետ ռործերի, բոլոր նրանց ակտիվ գործողությունների ժամանակն է, ովքեր մասնակից են այդ մեծ աշխատանքին։

ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՀԱՄԱԼԻՐ։ Նախնական հաշվարկները ցույց են տվել, որ երկրաշարժի հետևանքով կորցրել ենք մոտ 1,9 միլիարդ ռուբլու արտադրանքի թողարկման արտադրական կարողություններ։

Ներկայումս արդյունաբերական մինիստրությունների ու գերատեսչությունների առջև խնդիր է դրված շտապույթ կերպով և լիովին վերականգնել Հայկական ՍՍՀ արտադրական պոտենցիալը, իսկ մի շարք դեպքերում՝ նաև գերազանցել այն, հաշվի առնելով լրացուցիչ աշխատատեղերի ստեղծումը։

Կարելի է նշել, որ միութենական և հանրապետական մինիստրությունների մեծամասնությունը լիակատար պատասխանատվությամբ է մոտեցել այդ խնդրին։

Յուրաքանչյուր մինիստրությունում կազմակերպվել են նախագծային խմբեր և շինարարական կազմակերպություններ։ Ներկայումս օբյեկտների մեծ մասում մաքրվել են ավերակույտերը, անցկացվում է շենքերի պահպանված մասերի և կառուցվածքների դիմացկունության հետազոտում, որոշվում են վերականգնման և շինարարական աշխատանքների ծավալները։

Աշխատանքի արդյունքներն արդեն երևում են։ Արտադրանքի թողարկումն սկսել են ՍՍՀՄ էլեկտրատեխարդմինի 6 վերականգնված ձեռնարկություններ և ՍՍՀՄ էլեկտրոնարդմինի 10 ձեռնարկություններ։

Իր ձեռնարկությունների վերականգնման հարցերին լրջորեն և հանգամանորեն է մոտենում ՍՍՀՄ ճանմեքմինը։ Չնայած Լենինականի «Ստրոմմաշինա» գործարանում եղած հսկայական ավերածություններին, արդեն առաջին եռամսյակում նախատեսված է այն շահագործման հանձնել և արտադրել այնքան անհրաժեշտ քար արդյունահանող և քարամշակ հաստոցներ, որոնք երկրում թողարկվում էին միայն այդ գործարանում։ Դա, ընկերներ, միակ գործարանն է մեզ մոտ։ Իսկ առայժմ պիտանի մակերեսների վրա կսկսեն թողարկել ժողովրդական սպառման ապրանքներ։

Թեթևարդմինի վերականգնվող ձեռնարկություններն այս տարի մինիստրության պլանի համաձայն պետք է տան 328 միլիոն ռուբլու արտադրանք։ Դա անչափ քիչ է, նկատի ունենալով երկրում և հանրապետությունում ժողովրդական սպառման ապրանքների հարցում ստեղծվող ծանր վիճակը։ Ուստի և հանրապետության Մինիստրների խորհուրդը ՍՍՀՄ թեթևարդմինի հետ մեկտեղ պետք է մեկ անգամ ևս տեսնի, թե ինչ կարելի է անել նախատեսված ծրագրի կատարման ժամկետները կրճատելու համար։

Ծատ մինիստրություններ իրավացիորեն նշում են, որ հողամասերի հատկացման որոշումների, այդ շրջանների սեյսմիկ վիճակին վերաբերող եզրակացության բացակայությունը ձգձգում են վերականգնման և հատկապես նոր շինարարության աշխատանքները։ Հայաստանի Մինիստրների խորհուրդը և ՍՍՀՄ պետշինը պետք է արագորեն ավարտեն այդ գործը։

Հարկավոր է մինիստրությունների և գերատեսչությունների ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ անհրաժեշտ է ուժեղացնել սոցիալ-կուլտուրական ոլորտում և ենթակա ձեռնարկությունների բանվորներին ու ծառայողներին աշխատանքի տեղավորելու նպատակով կատարվող աշխատանքը: Նախ և առաջ հարկավոր է լըրջորեն զբաղվել բարեկարգ բնակարանների շինարարությամբ ու նորոգմամբ, այդ աշխատանքը առաջանցումով կատարելով արդյունաբերության վերականգնման աշխատանքների համեմատությամբ:

ՏՐԱՆՍՊՈՐՏԱՅԻՆ ՀԱՄԱԼԻՐ: Խնդիր է դրված հանրապետության ամբողջ տրանսպորտային համալիրի աշխատանքը վերակառուցել այն հաշվով, որ այն գերազանցի շինարարության սոցիալ-կենցաղային ապահովման տեմպերը:

ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրության և ՍՍՀՄ տրանսպորտային շինարարության մինիստրության կոլեգիաները, ինչպես նաև Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդն ունեն առաջադրված խնդրի լուծման ծավալուն ծրագիր: Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է ապահովի բեռնման-բեռնաթափման գործողությունների ռիթմիկության բարձր մակարդակը, հաղթահարելով այնպիսի արմատացած հիվանդություն, ինչպիսին է աշխատանքի անբավարար ծավալն օրվա առաջին կեսին, հանգստյան և տոն օրերին:

Այսօր երկաթուղու Երևանի բաժանմունքի կայարաններում գիշերները բեռնաթափվում է ցերեկային նորմայի 20 տոկոսից ոչ ավելին: Տեմպերը հարկավոր է արագացնել ոչ պակաս, քան կրկնակի չափով: Կիրակի և տոն օրերին տեմպերը չպետք է թուլացվեն:

Միանգամայն անթույլատրելի է, երբ կայարաններում, բեռնաբակերում, պահեստներում և մերձատար ուղիներում ամեն օր մնում են չտարված տասնյակ հազարավոր տոննաներով տարբեր բեռներ: Նույնիսկ ներկա պահին ժամանակին չի բեռնաթափվում կենսականորեն կարևոր այնպիսի բեռ, ինչպիսին են տնակները:

Երկրորդ հարցը բեռնման-բեռնաթափման ճակատների ընդլայնումն է 90 կիլոմետր ընդհանուր երկարությամբ երկաթուղային փակուղիների և բեռնաթափման բազաների կառուցման հաշվին:

Բոլոր միութենական հանրապետությունները, միութենական մինիստրություններն ու գերատեսչությունները Հայաստան են ուղարկում անհրաժեշտ ամեն ինչ, բայց հաջողություն կարող է ձեռք բերվել միայն երկաթուղիներում պատշաճ կարգուկանոնի և օպերատիվության պայմաններում, այդ թվում նաև բուն Հայաստանում:

ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՀԱՄԱԼԻՐ: Բնակչության և ժողովրդական տընտեսության շահերը պահանջում են գյուղատնտեսական արտադրության արագացված վերածնում: Պետք է մտածել այն մասին, որ դա վերականգնվի նախկինից ավելի արդիական մակարդակով, հատկապես արդյունավետության առումով:

Այս խնդրի լուծման համար հանրապետական և միութենական պետագրոարդները մշակել են համապատասխան ծրագիր: Անասունների ձմեռման, գարնան դաշտային աշխատանքների նախապատրաստման գործում օգնություն ցույց տալու նպատակով բոլոր տուժած կոլտնտեսություններն ու սովխոզներն են գործուղվել մասնագետներ երկրի բազմաթիվ մարզերից: Օգնություն է ցույց տրվել սերմացուով, տեխնիկայով: Առաջնահերթ գործերի թվում են բոլոր վարելահողերի օգտագործումը, 90 հազար հեկտար մակերեսի վրա ոռոգման համակարգերի վերականգնումը:

Բայց միայն տարերքը չէ, որ դժբախտություն բերեց գյուղին: Ադրբեջանաբնակ 105 գյուղերում միայն հանրային հատվածում կային 72 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն և 218 հազար ոչխար: 1988 թվականի պլանով այստեղ նախատեսվում էր գնել 44 հազար տոննա կաթ և 9,5 հազար տոննա միս: Հիմա ադրբեջանցիները հիմնականում մեկնել են: Կադրերի պակասության պատճառով անասնապահության մեջ բարդ վիճակ է ստեղծվում:

Կուսակցական, սովետական մարմինները պետք է տքնաջան բացատրական աշխատանք տանեն ադրբեջանցի բնակչության շրջանում, հասնեն գյուղում մարդկանց ամրացման և մեկնածների վերադարձման՝ երաշխավորելով նրանց անվտանգությունը: Պետք է ասել, որ այդ ուղղությամբ կուսակցական մարմինների և ակտիվի կողմից տարվող աշխատանքը դեռևս խիստ անբավարար է:

Առանձնակի պետք է ասել այն մասին, թե առաջիկա ժամանակաշրջանում ինչպես է ընթանալու էլեկտրաէներգիայի մատակարարումը Հայաստանի ժողովրդական տնտեսությանն ու բնակչությանը: Դուք արդեն գիտեք, որ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը քննության է առել Հայաստանի ատոմակայանի հետագա ճակատագրի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի և առաջատար մասնագետների առաջարկությունները: Հաշվի առնելով երկրաշարժի կապակցությամբ ստեղծված ընդհանուր սեյսմիկ իրադրությունը, ինչպես նաև հանրապետությունում տիրող հասարակական կարծիքը, կառավարությունը շատ բարդ որոշում ընդունեց Հայաստանի ատոմակայանը կանգնեցնելու ավելի շուտ, քան նախատեսված էր:

Նման որոշում ընդունելը այնքան էլ հեշտ չէր Անդրկովկասի ռեգիոնում էներգակարողությունների արդեն առկա պակասի պայմաններում: Հայաստանի ատոմակայանի աշխատանքի դադարեցումը քիչ դժվարություններ չի ստեղծի Հայաստանի էլեկտրամատակարարման գործում: Ատոմակայանի էներգաբլոկների կանգնեցումով կարողությունների պակասը մարտին կկազմի ավելի քան 300 հազար կիլովատ, իսկ տարվա վերջին, հաշվի առնելով էլեկտրասպառման աճը, պակասը կավելանա ու կհասնի 700 հազար կիլովատի: Հայաստանը և Անդրկովկասի մյուս հանրապետությունները սովաբաժնի թողնել մենք, իհարկե, չենք կարող: Ուստի որոշում է ընդունված նյութական ու ֆինանսական մեծ ռեսուրսներ հատկացնել նոր էներգետիկ կարողությունների և էլեկտրացանցային օբյեկտների գործարկումն ապահովելու համար: Բայց այդ ամենը ժամանակ կպահանջի, և մոտակա երկու տարում դրությունը չափազանց լարված կլինի: Ուստի պետք է այդ գործին ռեալ կերպով նայել:

Արդյունաբերական ձեռնարկությունների, գյուղատնտեսության, տրանսպորտի, էկոնոմիկայի մյուս ճյուղերի համեմատաբար նորմալ գործունեությունն ապահովելու և բնակչության կենցաղային կարիքները բավարարելու համար անհրաժեշտ է իրականացնել էլեկտրաէներգիայի լրացուցիչ տնտեսման և էլեկտրական առավելագույն բեռնվածությունների ժամերին դրա սպառման պակասեցման միջոցառումների մի ամբողջ համալիր: Դրա համար հարկ կլինի ձեռնարկություններն ու կազմակերպությունները փոխադրել անընդհատ աշխատանքային շաբաթի՝ խառը հանգստյան օրերով և աշխատանքային հերթափոխություններով, անցնել ձմռան ժամանակաշրջանում էներգատար սարքավորումների նորոգման և ինչ-որ չափով դիմել կոմունալ-կենցաղային կարիքների համար էլեկտրաէներգիայի սպառման սահմանափակման:

Իհարկե, դժվար է, բայց անհրաժեշտ: Պետք է ապահովվի խիստ կարգապահություն յուրաքանչյուր ձեռնարկության և կազմակերպության կողմից էլեկտրաէներգիայի սպառման գործում, պետք է բացառվեն էներգիայի ոչ ռացիոնալ, շռայլողական ծախսման դեպքերը:

Կառավարությունը ընդունված որոշմամբ նախատեսված առաջադրանքների կատարումը դիտում է որպես կարևոր պետական խնդիր և դրա համար անձնական պատասխանատվությունը դրել է համապատասխան մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների վրա: Այս ամենը բխում է հանրապետության շահերից, և նրա կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները պետք է լրջորեն հոգան բոլոր նախատեսված միջոցառումների իրականացման համար: Այդ հարցերը պետք է գտնվեն Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների խորհրդի մշտական հսկողության ներքո: Ժողովուրդը դա պետք է իմանա:

Աղետի առաջին ժամերից դեպքերի էպիկենտրոնում էր գտնվում մեր սովետական բանակը: Եվ այսօր այդ գոտում գործում են մոտավորապես 20 հազար սովետական ռազմիկներ, ներառյալ քաղաքացիական պաշտպանության կազմավորումները: Դժվար է գերագնահատել մեր բանակի ավանդը հայ ժողովրդին օգնելու ընդհանուր գործում: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն գտնում է, որ սովետական բանակը այսուհետև էլ անհրաժեշտ ամեն ինչ կանի տարերային աղետի գոտում վերականգնման աշխատանքները արագացնելու համար:

Ընկերնե՛ր: Այսօր քննարկելով հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեության կարևոր հարցերը, չի կարելի կանգ չառնել այն բանի վրա, թե ինչ իրադրության մեջ է այն ընթանում: Ես չէ, որ ձեզ պիտի ասեմ. հանրապետության ամբողջ հասարակական կյանքի վրա ծանր կնիք թողեց ազգամիջյան երկպառակության սրումը: Դա խոր ցավ պատճառեց սովետական մարդկանց: Այդ հողի վրա ռեգիոնի իրադրության վատացումը հանգեցրեց մասնավորապես մեր հասարակության մեջ անթույլատրելի մի այնպիսի երևույթի, ինչպիսին է բնակչության արհեստականորեն հրահրվող գաղթը Հայաստանից Ադրբեջան և Ադրբեջանից Հայաստան: Ժողովրդի բառապաշարի մեջ նորից հայտնվեց «գաղթական» դառնաշունչ բառը:

Այդ երևույթը, թերևս, ամենահամոզիչ հավաստիքն է այն պարզ ճշմարտության,

որ ազգամիջյան բախումները ավելի հաճախ հրահրում, ունենացնում է բնավ ոչ աշ-
խատավոր ժողովուրդը, բայց դրանց համար, որպես կանոն, հատուցում է հասարակ
մարդը, շարքային աշխատավորը՝ իր բարեկեցությամբ, հայրենի օջախով, առողջու-
թյամբ, իսկ երբեմն էլ՝ հենց կյանքով:
Հայաստանի մի շարք քաղաքներից և շրջաններից մեկնել է փաստորեն ամբողջ
ադրբեջանցի բնակչությունը, ինչը, ի դեպ ասած, բացասաբար է անդրադառնում
ռեգիոնի ոչ միայն քաղաքական, այլև տնտեսական իրավիճակի վրա: Այդ դժբախ-
տությանը հասցրին ամենից առաջ կուսակցական կոմիտեների կազմակերպական և
քաղաքական աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունները: Այսօր նրանց ջան-
քերը, բոլոր կոմունիստների ջանքերը պետք է նպատակամղված լինեն ինտերնա-
ցիոնալիզմի դիրքերում աշխատավորների համախմբմանը, ՍՄԿԿ Կենտրոնական
կոմիտեի, սովետական կառավարության, ինչպես նաև Հայաստանի կոմկուսի Կենտ-
կոմի որոշումների կատարմանը, որոնք ուղղված են հանրապետության դրության
կայունացմանը, ազգամիջյան հարաբերությունների առողջացմանը:
Այնպիսի իրավիճակներում, երբ կրքեր են բորբոքվում, մեծանում է չմտածված,
կործանարար մասսայական գործողությունների վտանգը, երբ առկա են ճգնաժամա-
յին վիճակի նշաններ, միշտ էլ առանձնապես զգալի է մտավորականության՝ ժողո-
վրդի հոգևոր դաստիարակի դերը: Դարեր ի վեր իսկական մտավորականը, այդ
թվում նաև Հայաստանում, եղել է իսկական քաղաքացի, որը կիսել է ամբողջ հայրե-
նիքի վիշտը, կարեկցել մարդուն, աչքի ընկել լայնախոհ մտածողությամբ:
Այս իմաստով ծայրաստիճան դժվարին պայմանները, որոնցում հայտնվել են հայ
և ադրբեջանցի ժողովուրդները, խիստ հաշիվ ներկայացրին նաև նրանց մտավորա-
կանությանը:
Ցավոք, որոշ մարդկանց, նույնիսկ պրոֆեսիոնալ ստեղծագործական աշխատան-
քի մարդկանց այդ ծանր փորձությունների օրերին չբավականացրին ոչ լայնախոհու-
թյունը, ոչ էլ կարեկցանքը իրենց ժողովրդի նկատմամբ, չխոսելով արդեն հարևան
ժողովրդի մասին: Մի՞թե լայնախոհության ու մարդասիրության այս դեֆիցիտը իրեն
զգալ չտվեց, երբ ոչ կոռեկտ ու նույնիսկ կատաղի կերպով վիճում էին այս կամ այն
դարաշրջանում հողի պատկանելության մասին՝ չտեսնելով կամ չցանկանալով հաշ-
վի առնել, որ իրենց բուռն բանավեճը խռովում է հազարավոր մարդկանց մտքերը,
մղում հակաիրավական գործողությունների, երկպառակություն սերմանում ժողովուրդ-
ների միջև, հանգեցնում արցունքի ու արյան:
Եթե մտավորականությանը պատմականորեն միշտ ներհատուկ է երեխայի ար-
ցունքի համար ցավը, ապա մի՞թե այսօր նրանցից ոմանք պատասխանատվություն
չեն զգում Հայաստանում և Ադրբեջանում այդ ժամանակամիջոցում թափված արցուն-
քի գետերի համար:
Այսօր մտավորականության մտայնության մեջ նկատվում են դրական փոփոխու-
թյուններ: Գուցե ամենաահավոր վիշտն իրենց տեղե՞րն է դրել հոգևոր արժեքներն
ու առաջնային խնդիրները: Գուցե երկրի բոլոր անկյուններից հանրապետություն
հորդած մարդկային կարեկցանքի ալիքը, գուցե վերակառուցման բուռն ընթացքը
նպաստու՞մ են մտքի այդ դժվարին պայծառացմանը: Գլխավորը այն է, որ այդ ա-
ռողջացնող պրոցեսները չարգելակվեն, մի կողմ չշեղվեն, դառնան անշրջելի: Վըս-
տահ եմ, Հայաստանի մտավորականությունը միանգամայն ընդունակ է գիտակցելու
իր պատմական պատասխանատվության ամբողջ խորությունն իր ժողովրդի բարօրու-
թյան, հոգևոր առողջության համար, մարդկային հարաբերությունների վեհության և
կուլտուրայի համար, որոնց ձևավորման մեջ նրան անչափ էական դեր է պատկա-
նում, և նա հաստատուն, սկզբունքային ու կուսակցական դիրք կբռնի:
Ընկերներ: Հանրապետությունում ստեղծվել է այնպիսի իրավիճակ, երբ վերա-
կառուցման գաղափարները, նրա մարդասիրությունը, հրապարակայնությունը և դեմո-
կրատիան վահան են դարձել որոշ անպատասխանատու մարդկանց կասկածելի գոր-
ծողությունների և արարքների համար:
Ինչպե՞ս տարբերել, թե ինչն է ճշմարիտը և ինչն է կեղծը ազգային ինքնագի-
տակցության այն պոռթկման մեջ, որ նկատվում է այժմ: Կարծում ենք, հեշտ է տար-
բերել, ղեկավարվելով միակ չափանիշով, թե որտեղ են արարքները թելադրված
հասարակության, սոցիալիզմի, վերակառուցման բախտի համար անկեղծ ցավով և
որտեղ են դրանք ձեռնարկված սոսկ ի հաճույս սեփական ամբիցիաների, որոնք
տառապանք են պատճառում ուրիշ մարդկանց: Մենք շատ ենք խոսում վերակառուց-
ման աշխղեկների, դրա համախոհների, այն մարդկանց մասին, ովքեր աշխատում են
ջանասիրությամբ, իսկ երբեմն նույնիսկ զոհաբերում սեփական բարեկեցությունը հա-



նուն հասարակության մեջ սոցիալական արդարության ու մարդկային արժանապատ-
վության հաստատման. այդպիսի համախոհներ կան նաև Հայաստանում: Սակայն պա-
կաս կարևոր չէ պարզորոշ խոսել նաև վերակառուցման խոտանարարների, այն
մարդկանց մասին, ովքեր հեղափոխական քաղաքական պահն օգտագործում են զուտ
պատվախնդրական նպատակների համար:
Պետք է անկեղծորեն ընդունել այն, ինչ Հայաստանում և Ադրբեջանում տեղի էր
ունենում վերջին ամիսներին, միլիոնավոր մարդկանց աչքում աղավաղում էր այդ
ժողովուրդների դարերով ստեղծված կերպարը, գցում նրանց վարկը: Այսօր շատերն
են իրենց տանջալի հարց տալիս. իսկ ինչպե՞ս պատահեց, որ Հայաստանում, որը
հայտնի է իր մարդկանց հոգու շռայլությամբ ու սրտաբացությամբ, փոխադարձ վի-
րավորանքների թոհուբոհում կարծես թե մոռացան «ուրիշի վշտի հաշվին երջանկու-
թյուն չես կառուցի» դարավոր իմաստությունը:
Նման իրավիճակներում պետք է գերակշռեն պատասխանատվությունը, կշռա-
դատվածությունը, խելամիտ քաղաքական փոխզիջումներին ընդառաջելու կարողու-
թյունը և երկու ժողովուրդների ժողովրդական իմաստնությունը: Այսօր ռեալ իրա-
դրությունն անհրաժեշտ է ողջամտորեն գնահատել նաև Լեռնային Ղարաբաղի վե-
րաբերյալ կարևոր որոշման կապակցությամբ, որի մասին դուք արդեն գիտեք:
ԼՂԻՄ-ի Հատուկ կառավարման ստեղծված կոմիտեն կենթարկվի անմիջակա-
նորեն ՍՍՀ Միության պետական իշխանության ու կառավարման բարձրագույն մար-
միններին, խնդիր ունենալով կարգավորել հասարակական, քաղաքական իրադրու-
թյունն ինքնավար մարզում, ապահովել հասարակական կարգն ու քաղաքացիների
անվտանգությունը, բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների անխափան
աշխատանքի կազմակերպումը, կարգավորել բնակչության նորմալ կենսապայման-
ները: Նրա գլխավոր նպատակն է հասնել ինտերնացիոնալիստական հիմքի վրա
հասարակական բոլոր ուժերի համախմբմանը:
Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ ընդունված որոշումն, իհարկե, կենտրոնի
էական օգնությունն է երկու միութենական հանրապետություններին: Միութենական
մարմինները ԼՂԻՄ-ում տիրող իրադրության կարգավորման, նրա սոցիալ-տնտեսա-
կան զարգացման հետ առնչվող հոգսերի քիչ բեռ չեն ստանձնում: Դա մի փոխզի-
ջում է, որի դեպքում պահպանվում է երկու միութենական հանրապետությունների
շահերի փոխադարձաբար ընդունելի հաշվեկշիռը: Որոշման մեջ դրսևորվել է կուսակ-
ցության կշռադատված, սկզբունքային կուրսը ազգային քաղաքականության բնագա-
վառում, որը նպատակամղված է ազգամիջյան երկպառակության հաղթահարմանը,
իրադրության կայունացմանն ու ժողովուրդների բարեկամական, եղբայրական հա-
րաբերությունների ամրապնդմանը: Կարծում եմ, որ այդպիսի որոշումը առավելագույն
հնարավորն է ներկա ոչ դյուրին պայմաններում, և այն կարելի է գնահատել որպես
բոլոր նրանց նվաճումը, ովքեր հասկանում են, թե մարդկանց ինչպիսի անդունդ կա-
րող են նետել քաղաքական արկածախնդիրները, եթե նրանց հակահարված չտանք,
կտրուկ չենթարկվենք հույզերին, կորցնենք ողջամտությունը:
Կենտրոնական մարմինների գծով միջոցների ձեռնարկումն ամենևին չի թոթա-
փում ամբողջ պատասխանատվությունը Հայաստանի և Ադրբեջանի կոմկուսների
կենտրոնական կոմիտեների վրայից՝ Լեռնային Ղարաբաղին առնչվող քաղաքական
և գաղափարական մթնոլորտի առողջացման համար: Նրանք պետք է կուսակցա-
կան կազմակերպությունների, բոլոր կոմունիստների ջանքերը նպատակամղեն իրա-
վիճակի արմատական փոփոխմանը, հանրապետություններում հասարակական կյան-
քի առողջացմանը, վերակառուցման հետևողական իրականացմանը: Եվ, իհարկե,
երկու հանրապետությունների կոմկուսների կենտրոնական կոմիտեները հնարավոր
ամեն ինչ պետք է անեն իրար հետ աշխատանքային սերտ կապեր հաստատելու,
ծագող հարցերը լուծելիս փոխգործակցությունն ապահովելու և սովետական հանրա-
պետությունների դաշինքը խարխլող հակավերակառուցողական ուժերի դեմ, ազգային
գժտություններ հրահրող ամեն մի գործողության դեմ միասնական ճակատով հանդես
գալու համար:
Ազգամիջյան հարաբերությունների գործին հսկայական վնաս հասցրին նրանք,
ովքեր չարարկում էին մարդկանց սոցիալական դժգոհությունը, որն աճագնացել էր
լճացման շրջանում, սոցիալական արդարության սկզբունքների խախտումներից
նրանց դժգոհությունը, կադրային քաղաքականության ասպարեզի լուրջ ձևախեղում-
ները: Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի արդարացի լուծման լոզունգի քողի տակ
նրանք ցինիկ պայքար էին ծավալել իշխանության համար, որը հանգեցրեց ծանր
հետևանքների:

Հաշվենկատորեն օգտագործելով մարդկանց ազգային զգացմունքները, ստեղծագործական մտավորականության որոշ ներկայացուցիչների հեղինակությունն ու անգամ տաղանդը, իշխանությունների թողտվությունը, իսկ երբեմն էլ բացահայտ հովանավորությունը, քաղաքական արկածախնդիրները կաշառքի մեջ խրված տարրերի հետ համատեղ վերջին հաշվով իրենց հակադրեցին ընդհանուր դեմոկրատական պրոցեսներին, հանրապետությունում գոյություն ունեցող հասարակական առողջ ուժերին, գլորվեցին նեղ ազգայնական, հակավերակառուցողական դիրքեր:

«Ղարաբաղ» կոմիտեի ակտիվիստները ճակատագրական դեր խաղացին ազգամիջյան կրքերի բորբոքման, մասնավորապես ազգային հողի վրա անկարգությունների կազմակերպման, հայրենի տներից հազարավոր միանգամայն անմեղ քաղաքացիների արտաքսման, հանրապետությունում սոցիալ-քաղաքական լարվածության բորբոքման գործում: Այդ կոմիտեի ապեկուլյատիվ էությունը հստակորեն դրսևորվեց համաժողովրդական աղետի օրերին, երբ վախենալով համընդհանուր վշտի և ինտերնացիոնալիզմի ալիքով հետին պլան մղվելուց, ազգային շահերի այդ վայպաշտպանները սկսեցին ուղարկել ամեն կարգի սպառնալի վերջնագրեր, վախեցնել զենքով, աղ ցանելով ժողովրդի վերքին, տարածել ասեկոսներ, մի խոսքով, ամեն ինչ անել իրենց մասին հիշեցնելու և ջրի երեսին մնալու համար:

Կյանքը մեզ սովորեցնում է իրատեսություն, այն, որ ոչ մի պրոբլեմ ինչ-որ մեկի կախարդական փայտիկի շարժումով չի լուծվում, որ ամեն ինչ կախված է կոլեկտիվ կամքից ու մտքից, միմյանց հասկանալու և միմյանց կարեկցելու ընդունակությունից, վերջապես, աշխատել կարողանալուց և ցանկանալուց, ինչպես պահանջում է վերակառուցումը: Իսկ դյուրահավատությունն առասպելներ և խոր հիասթափություններ է ծնում: Գաղտնիք չէ, մասնավորապես, որ հիմա էլ հանրապետությունում ոմանք ասես գտնվում են «արդարասերների» այն հիպնոսի ներքո, որ իրենց համար ջանադրաբար ստեղծում էին կոմիտեականները, ճիշտ է, ոչ առանց բազմաթիվ օգնականների:

Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ ընդունված որոշումը փաստորեն վերացնում է ազգամիջյան գժտությունների բազան: Բայց հուսալ, թե կարգավորումը կգա ինքն իրեն, բացառապես վերևից, ճիշտ չէ: Այստեղ հարկավոր է խելամիտ, հետևողական աշխատանք երկու կողմից և բոլոր մակարդակներում: Այդ աշխատանքում չափազանց կարևոր է ուժեղացնել առողջ ազդեցությունը երիտասարդության վրա, նրա ակտիվությունը շրջել դեպի վերակառուցման հուն, ստեղծարար նպատակների հուն: Թե՛ կուսակցական կոմիտեները, թե՛ կոմերիտմիությունը, թե՛ արհմիությունները չպետք է հաշտվեն պասիվության հետ, չպետք է անգործության մատնվեն, հարկավոր է գնալ մարդկանց մոտ, հարկավոր է նրանց տանել իրենց հետևից դեպի մեծ գործեր, դեպի կենսական պրոբլեմների լուծում, դեպի երկրի բոլոր ազգերի ու ազգությունների օգնությամբ ավերիչ երկրաշարժի հետևանքների հաղթահարում:

Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ ընդունված որոշումը որևէ մեկի հաղթանակը կամ որևէ մեկի պարտությունը չէ: Դա մեր ընդհանուր հաղթանակն է: Այն թելադրված է մեկ բանով՝ թուլացնել լարվածությունը ռեգիոնում, վերականգնել կարգուկանոնը, մարդկանց հնարավորություն տալ նորմալ ապրելու, աշխատելու, երեխաներ մեծացնելու: Այս չափանիշով էլ հարկավոր է մոտենալ դրան մեր բացատրական ու քաղաքական աշխատանքում:

Այստեղ մտածելու շատ բան կա: 1988 թվականին Հայաստանի էկոնոմիկան զարգանում էր ավելի դանդաղ տեմպերով, քան մյուս միութենական հանրապետությունների մեծ մասում և ընդհանուր առմամբ երկրում: Իսկ եթե վերցնելու լինենք 1988 թվականի 11 ամիսը (նախքան երկրաշարժն ընկած ժամանակաշրջանը), ապա ընդհանուր առմամբ երկրում արդյունաբերական արտադրության չորս տոկոս ընդհանուր աճի դեպքում արդյունաբերական արտադրանքի արտադրությունը Հայկական ՍՍՀ-ում ավելացավ ընդամենը 0,4 տոկոսով, այսինքն տասն անգամ պակաս ընդհանուր միութենական մակարդակից: Հանրապետության արդյունաբերության ձեռնարկությունների և միավորումների 40 տոկոսը չապահովեց պայմանագրային պարտավորությունների կատարումը և սպառողներին թերամատակարարեց 320 միլիոն ռուբլու արտադրանք:

Ամբողջությամբ վերցրած երկրի արդյունաբերության գծով պլանային առաջադրանքների թերակատարումը շատ բանով անմիջականորեն կապված էր Հայաստանի ձեռնարկությունների անբավարար աշխատանքի հետ:

Այդ ձախողումների պատճառները քաջ հայտնի են: Դա նախ և առաջ գործադուլների հետևանքն է, որոնք անցյալ տարի տևնդի մեջ էին պահել ամբողջ հան-



րապետությունը: Զանգվածային գործադուլները ծանր անդրադարձան նաև հանրապետության սոցիալական պրոբլեմների լուծման վրա: 1988 թվականի 11 ամսում բնակարանների գործարկման տարեկան ծրագիրը կատարվեց ընդամենը 58 տոկոսով: Միայն տարեկան առաջադրանքի մեկ քառորդով կատարվեց ակումբների, մշակույթի տների, պոլիկլինիկաների գործարկման առաջադրանքը: Ձախողվեց հիվանդանոցների, դպրոցների և նախադպրոցական հիմնարկների գործարկումը:

Այսպես այլևս անհնար է ապրել: Մի՞թե այս պայմաններում կարելի է խոսել ժողովրդի կենսամակարդակի բարձրացման մասին: Կարծում եմ, որ Հայաստանի մտավոր, աշխատանքային և արտադրական կարողությունը հանրապետությանը լիովին հնարավորություն է ընձեռում ոչ միայն հաղթահարել թերացումը, այլև առաջ անցնել սոցիալ-տնտեսական զարգացման բոլոր կարևորագույն ուղղություններում: Վստահ եմ, որ դա մեծ ըմբռնումով ու հարգանքով կընդունվի ամբողջ երկրում, կբարձրացնի հանրապետական կուսակցական կազմակերպության, ամբողջ Հայաստանի հեղինակությունը եղբայրական ժողովուրդների ընտանիքում:

Ընկերնե՛ր:

Այսօր յուրաքանչյուրին ակնհայտ է. Հայաստանում վերականգնման աշխատանքների մասշտաբներն այնպիսին են, որ հանրապետությունը մենակ դրանք ի վիճակի չէ կատարել: Այստեղ անհրաժեշտ են միացյալ ջանքեր: Օգտվելով առիթից, կցանկանայի ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, սովետական կառավարության անունից ի սրտե շնորհակալություն հայտնել բոլոր հանրապետություններին, կենտրոնական մինիստրություններին ու գերատեսչություններին, բոլոր ընկերներին, ովքեր այժմ օգնում են եղբայրական Հայաստանին, ապահովում բեռների փոխադրումն ու մարդկանց էվակուացումը, ովքեր իրենք են աշխատում երկրաշարժի էպիկենտրոնում: Շնորհակալություն հայտնել և միաժամանակ դիմել բոլոր աշխատավորներին, աշխատավորական կոլեկտիվներին. ավերվածը երկու տարում վերականգնելու, այդ ընդարձակ ռեգիոնում կյանքը կարգաբերելու համար անհրաժեշտ է այսուհետ ևս չթուլացնել եղբայրական Հայաստանին օգնություն ցույց տալու ջանքերը:

Այս կապակցությամբ թե՛ կենտրոնական տնտեսական գերատեսչությունների, թե՛ միութենական հանրապետությունների, մինիստրությունների ու ձեռնարկությունների առջև ծառանում է բոլոր հնարավոր ռեզերվներն ակտիվորեն գործի դնելու խնդիրը: Եվ, իհարկե, շատ մեծ խնդիր է ծառանում հենց Հայաստանի առջև՝ ոչ միայն այն հարցում, որը վերաբերում է օգնության առավել ռացիոնալ օգտագործմանը, այլև վերակառուցման ճանապարհին հանրապետության ժողովրդատնտեսական ամբողջ համալիրի արդյունավետության բարձրացման գործում:

Ահա ինչի վրա է հարկավոր ուշադրությունը բևեռել այս բեկումնային շրջանում: Դրանում է վերակառուցման ճակատագիրը, որից կախված է թե՛ մեր բազմազգ ժողովրդի բախտը, թե՛ նրա քաղաքացիական, սոցիալական ինքնազգացողությունը, թե՛ արդի աշխարհում նրա հեղինակությունը: Վերակառուցումն ինտերնացիոնալ է իր ոգով, քանի որ նրա նպատակները ներառնում են սովետական բոլոր ժողովուրդների իղձերը, այդ թվում նաև ազգամիջյան հարաբերությունների ոլորտում: Եվ այսօր ինչ էլ անելիս լինենք, ամեն ինչ հարկավոր է չափել մի չափանիշով՝ մենք նպաստու՞մ ենք նրա առաջընթացին, թե՞ ընդհակառակն՝ արգելակում ենք այն:

Ինտենսիվ, համերաշխ աշխատանքը բազմաչարչար Հայաստանի վերքերի բուժման ասպարեզում, տեղի ունեցածից սթափ, իսկ եթե պետք է, նաև դաժան դասեր քաղելը, ընդարձակ ռեգիոնի ժողովրդական զանգվածների կյանքի ու աշխատանքի կայունացումը, էկոնոմիկայում, հոգևոր, հասարակական, քաղաքական ոլորտում լուրջ խեղումների հաղթահարումն էլ հենց այսօր յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական մարդու գլխավոր գործն է՝ հօգուտ վերակառուցման, հօգուտ ամբողջ երկրում տեղի ունեցող բարեփոխումների, հօգուտ մեր բոլոր ժողովուրդների բարօրության, բարեկեցության բարձրացման, որոնք թեկուզև ոչ անմիջականորեն, բայց նույնպես զգում են երկրաշարժի հետևանքները, որքան էլ որ հեռու ապրեն Հայաստանից: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, կառավարությունը հույս ունեն, որ Հայաստանի կոմունիստները, նրա առողջ հասարակական ուժերը, նրա աշխատասեր ժողովուրդը ընդհանուր փորձությունների և պատասխանատվության այս ժամին կգտնվեն իրենց խնդիրների բարձրության վրա:

---

# ԸՆԿԵՐ Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

Ընկերնե՛ր։

Անցած տարին ժողովրդի հիշողության մեջ մնաց որպես մեծագույն ողբերգության, հսկայական մարդկային զոհերի տարի, մեր ժողովրդի համար աննախադեպ փորձությունների տարի։

Դժվար է ասել, թե հանրապետությունը հիմա ինչ վիճակի մեջ կլիներ, եթե ճակատագրական օրվանից՝ դեկտեմբերի 7-ից հետո ամբողջ թափով չդրսևորվեին սովետական մարդկանց միասնության, համախմբվածության, եղբայրության ստեղծարար հնարավորությունները։ Այդ մասին իմաստալի ու համոզիչ կերպով ասված է կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի մեջ. «Այսօր որևէ մեկին պետք չէ համոզել, որ մենք ուժեղ ենք, երբ միասին ենք։ Ամբողջ երկիրը, յուրաքանչյուր հանրապետություն, յուրաքանչյուր սովետական ընտանիք Հայաստանի վիշտը զգացին որպես իրենց սեփականը։ Եվ յուրաքանչյուրը կիսեց այդ վիշտը, օգնության շտապեց։ Ժողովուրդների բարեկամությունն ու համագործակցությունը, համախմբվածությունը, ինտերնացիոնալիզմը, համերաշխությունը մեծ ձեռքբերումներ են։ Դրանք սրբորեն կպահպանենք և կբազմապատկենք»։ Մենք այսօր կարող ենք ասել, որ սովետական մարդկանց գործարար ինտերնացիոնալիզմը դարձավ աղետին դիմագրվելու վճռական գործոնը։

Ստեղծված արտակարգ բարդ իրավիճակում ինչպես հանրապետությունում, այնպես էլ երկրում ուժերի ու ռեսուրսների մոբիլիզացման, հոգևոր մթնոլորտի և հասարակական կարծիքի ձևավորման գործում վճռական նշանակություն ունեցավ աղետի օրը ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Մ. Ս. Գորբաչովի հղած դիմումը հայ ժողովրդին։ Նրա արտասահմանյան ուղևորության ընդհատումը, անմիջականորեն տարերային աղետի շրջան ժամանելը, բնակչության հետ կայացած բազմաթիվ հանդիպումներն ու զրույցները, հանրապետությանը անհետաձգելի և համակողմանի օգնություն ցույց տալու նպատակով տեղում խոշոր վճիռների կայացումը և պրակտիկ միջոցների ձեռնարկումը քաղաքական ու բարոյահոգեբանական մեծ ներգործություն ունեցան, մարդկանց ներշնչեցին լավատեսություն, վստահություն՝ տարերքի հետևանքների շուտափույթ վերացման նկատմամբ։

Հանրապետության համար բացառիկորեն կարևոր մոբիլիզացնող գործոն եղավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի գործունեությունը Ն. Ի. Ռիժկովի գլխավորությամբ։ Հանձնաժողովը, որի կազմի մեջ մտնում են Ն. Ն. Սլյունկովը, Դ. Տ. Յազովը, Յու. Պ. Բատալինը, Լ. Ա. Վորոնինը, Բ. Ե. Շչերբինան, շատ կարճ ժամանակամիջոցում կազմակերպական հունի մեջ դրեց երկրաշարժի հետևանքների վերացման ողջ աշխատանքը։ Հանձնաժողովի աշխատանքը ուսանելի օրինակ է բոլորիս համար, հանրապետության ղեկավար կադրերի համար։ Մենք անցնում ենք բարդ և արտակարգ պայմաններում քաղաքական ու տնտեսական ղեկավարման լավ դպրոց, ես նույնիսկ կասեի՝ համալսարան։

Հանձնաժողովի ձեռնարկած միջոցառումների օպերատիվությունն ու ընդգրկումը, կառավարման արդյունավետ մեխանիզմի ստեղծումը, երկրի միասնական ժողովրդատնտեսական համալիրի բոլոր անհրաժեշտ ռեսուրսների և ուժերի նպատակամետ կենտրոնացումը և, ինչը միանգամայն էական է, ամբողջ աշխատանքը լայն հրապարակայնության պայմաններում կատարելը հնարավորություն ընձեռեցին փրկարար և վերականգնման լայնընդգրկուն աշխատանքներ ծավալել, կարգաբերել բնակչության կենսագործունեությունը տարերային աղետի գոտում։

Հայ ժողովուրդը խորին երախտագիտությամբ և անկեղծ հարգանքով կհիշի հանձնաժողովի անդամների անձնվեր և հիրավի տիտանական աշխատանքը, ինչպես



նաև այն արգասավոր գործունեությունը, որ մեր հանրապետությունում ծավալել են ՍՍՀ Միության մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարները։

Հուզիչ էին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, Լենինգրադի կուսմարզկոմի առաջին քարտուղար Յու. Ֆ. Սոլովյովի հանդիպումները Լենինականի աշխատավորների, Լենինգրադից եկած շինարարների ու մասնագետների հետ։ Հայաստանում եղել են միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների քարտուղարներ, մինիստրների խորհուրդների նախագահների տեղակալներ։ Նրանք տեղում ծանոթացել են առաջիկա աշխատանքի մասշտաբներին, գործնական, կոնկրետ միջոցառումներ մշակել արտադրական ու սոցիալական ոլորտի տուժած օբյեկտների վերականգնման նպատակով։ Բոլոր հանրապետությունների հետ ձեռք ձեռքի տված էլ մենք կվերածնենք մեր հողը։

Ավերիչ երկրաշարժը և նրա հետևանքների դեմ ուղղված պայքարը դարձան արտակարգ պայմաններում արդյունավետորեն գործելու մեր ընդունակությունների խիստ քննություն։ Այդ քննությունը պահանջեց ուժերի նշանակալի լարում, կազմակերպվածություն, հստակություն, գործի դրեց հանրապետության աշխատավորության, ամբողջ հայ ժողովրդի խորքային հոգևոր պոտենցիալը։

Այսօր համաժողովրդական վշտով համակված լինելով անժամանակ հեռացածների համար, մեկ անգամ ևս խոր ցավակցություն հայտնելով նրանց հարազատներին ու մերձավորներին, մենք սրտագին շնորհակալության խոսքերով ենք դիմում բոլորին, ովքեր իրենց ավանդն են ներդրել և ներդնում են արհավիրքի հետևանքների հաղթահարման գործում։

Հսկայական ավանդ են ներդրել և շարունակում են ներդնել սովետական ռազմիկները, ՍՍՀՄ ՆԳՄ ներքին զորքերը, որոնք ստանձնեցին առաջնահերթ փրկարար աշխատանքների գլխավոր ծանրությունը, ռազմափոխադրական և քաղաքացիական ավիացիան, երկաթուղայիններն ու բժիշկները։

Ժողովրդի մեծ հավանությանը և երախտագիտությանը արժանացան սովետական արհմիությունների, կոմերիտմիության, մյուս հասարակական կազմակերպությունների մարդասիրական ջանքերը, որոնք լայնընդգրկուն աշխատանք ծավալեցին՝ առաջնահերթ օգնություն ցույց տալու, երեխաներին, կանանց ու ծերերին էվակուացնելու համար։

Մենք անկեղծ շնորհակալություն ենք հայտնում այն արտասահմանյան պետություններին, միջազգային կազմակերպություններին, ֆիրմաներին, առանձին օտարերկրյա քաղաքացիներին, որոնք ջերմ կարեկցանքով արձագանքեցին մեր աղետին։ Այսքան լայն միջազգային համերաշխությունը նախ և առաջ այն արտաքին քաղաքական կուրսի արգասիքն է, որ ՍՄԿԿ-ն վարում է 1985 թվականի ապրիլից, մեր պետության հարաճուն միջազգային հեղինակության արգասիքը։ Դա քաղաքական նոր մտածողությունն է գործողության մեջ։

Երկրաշարժի բոթը հսկայական մորմոքով ընդունվեց սփյուռքահայ համայնքներում։ Նրանց սրտագին օժանդակության և ապրումների մեջ մենք տեսնում ենք մեր հայրենակիցների հավերժական կապը մայր հայրենիքի՝ Սովետական Հայաստանի հետ։

Մենք առանձնակի ցավով ու մորմոքով ենք հիշում ռազմափոխադրական ինքնաթիռի սովետական անձնակազմի անդամների ու ռազմիկների և հարավսլավական ինքնաթիռի անձնակազմի անդամների ողբերգական կորուստը, որոնք աղետի ենթարկվեցին, երբ օգնության էին եկել մեր ժողովրդին։

Այսօր կցանկանայինք նշել հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական ու հասարակական կազմակերպությունների մեծ աշխատանքը։ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի դեկտեմբերի վերջին կայացած նիստում, որտեղ խոր ու համակողմանի քննարկման ենթարկվեց երկրաշարժի հետևանքների վերացման հետ առնչված պրոբլեմների ողջ կոմպլեքսը, դրական գնահատականի արժանացավ նաև հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեությունը։ Հայաստանի կոմունիստները մեծ արհավիրքի առաջին իսկ րոպեներից գլխավորում էին ողբերգական վիճակից դուրս գալու հանրապետության աշխատավորների աշխատանքը, անձնվեր գործողությունների օրինակ էին ցույց տալիս փրկարար ու վերականգնման աշխատանքների ամենադժվարին, ամենապատասխանատու տեղամասերում։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, հանգամանորեն վերլուծելով աշխատանքների առաջին փուլի ողջ ընթացքը, անհրաժեշտ համարեց արագացնել աշխատանքների երկրորդ փուլի ծավալումը, որի գլխավոր նպատակն է մոտակա երկու տարում ապահովել ամբողջ տուժած ռեգիոնի սոցիալ-տնտեսական պոտենցիալի վերականգ-

նումը: Այս կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունեցին մեր հանրապետության համար մի շարք բախտորոշ որոշումներ, որոնցում երկրաշարժի հետևանքների վերացումը կոմպլեքսային և հետևողական բնույթ է ստացել: Այդ որոշումներում շարադրված է կոնկրետ. կոնստրուկտիվ միջոցառումների մի ծավալուն ծրագիր: Դրանցով նախատեսվում է օգնություն ցույց տալ Հայկական ՍՍՀ-ի երկրաշարժից տուժած բնակչությանը, քաղաքների, քաղաքատիպ ավանների ու շրջկենտրոնների, արդյունաբերական ձեռնարկությունների ու նրանց ենթակա սոցիալական ոլորտի օբյեկտների, գյուղական բնակավայրերի ու ագրոարդյունաբերական համալիրի արտադրական օբյեկտների վերականգնմանն ու շինարարությանը, ինչպես նաև երկաթուղային տրանսպորտի հետագա զարգացմանը, շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության արտադրական բազայի հետագա զարգացմանը:

Որոշումներով սահմանված խնդիրները մասշտաբային բնույթ են կրում: Վիթխարի աշխատանք է կատարվելու: Չէ որ երկրաշարժը ընդգրկել է հանրապետության տարածքի 40 տոկոսը՝ գրեթե մեկ միլիոն բնակչությամբ: Տուժել են 21 քաղաք ու շրջան, 342 գյուղ, որոնցից 58-ը ավերվել է լիովին: Այսօրվա տվյալներով զոհվել է շուրջ 25 հազար մարդ, տարբեր աստիճանի խեղումներ ու վերքեր է ստացել 19 հազար մարդ:

Կորսվել է ութ միլիոն քառակուսի մետր բնակելի մակերես, ինչը կազմում է հանրապետության ամբողջ բնակելի ֆոնդի 17 տոկոսը: Անօթևան է մնացել 514 հազար մարդ: Ավերվել կամ վթարային վիճակում է գտնվում 277 դպրոց, 245 մանկական նախադպրոցական հիմնարկ, առողջապահության 250 օբյեկտ, ինչպես նաև 324 ակումբ ու մշակույթի տուն: Լիովին խախտվել էին ջրամատակարարումը, ջերմամատակարարումն ու էներգամատակարարումը, ավերվել են կոմունալ-կենցաղային, տրանսպորտի ու կապի օբյեկտներ, ինժեներային շատ կառուցվածքներ ու կոմունիկացիաներ:

Դադարել են գործելուց ավելի քան 170 արդյունաբերական ձեռնարկություն, մասնաճյուղ և արտադրամաս: Ընդհանուր առմամբ կորսվել են տարեկան 1,9 միլիարդ ռուբլի արդյունաբերական արտադրանքի թողարկման կարողություններ, 82 հազար աշխատատեղ:

Երկրաշարժը հսկայական վնաս հասցրեց ագրոարդյունաբերական համալիրին: Էապես տուժել են 209 սովխոզ և 90 կոլտնտեսություն: Ավերվել կամ սաստիկ վնասվել են վերամշակման արդյունաբերության ավելի քան 80 ձեռնարկություն, մոտ 1200 անասնապահական շենք և արտադրական ուրիշ շատ օբյեկտներ: Կոտորվել է մեծ քանակությամբ անասուն և թռչուն: Հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի կորուստը կազմում է ավելի քան 2 միլիարդ ռուբլի:

Շարքից դուրս է եկել շինարարական ճյուղի ձեռնարկությունների զգալի մասը:

Ամբողջությամբ վերցրած ժողովրդատնտեսական ընդհանուր վնասը գնահատվում է մոտավորապես 10 միլիարդ ռուբլի:

Տարերքը շարքից հանել է նաև աղետի ընդարձակ գոտու հասարակական ու տնտեսական համակարգը: Զոհվել են շատ ղեկավարներ ու մասնագետներ, որոնք պատասխանատու էին աշխատանքի այս կամ այն տեղամասի համար: Հոգեբանական ցնցման պայմաններում դա հսկայական լրացուցիչ դժվարություններ էր ստեղծում փլատակների տակ մնացած մարդկանց փրկության աշխատանքների ծավալման գործում:

Ընդհանուր գծերով այսպիսիք են երկրաշարժի հետևանքները:

Առաջին իսկ օրերին ստեղծված կառավարման կազմակերպական նոր կառուցվածքները հնարավորություն ընձեռեցին օպերատիվորեն գործի դնել մարդկային ու նյութական մեծ ռեսուրսներ և դրանք օգտագործել մարդկանց փրկության և վերականգնման աշխատանքների ծավալման նախապատրաստության համար:

Ձեռնարկված օպերատիվ միջոցների շնորհիվ հաջողվեց փրկել 15254 մարդու կյանք:

Բարձր գնահատականի է արժանի բնակչության բուժսանիտարական օգնության կազմակերպումը: Արդեն 45 րոպե հետո Երևանից աղետի շրջաններ ուղարկվեցին շտապ բուժօգնության առաջին 20 բրիգադները, իսկ երկու ժամ անց, երբ հայտնի դարձան ավերածությունների չափերը՝ ևս մոտ 100 բրիգադ: Դեկտեմբերի 7-ի երեկոյան Մոսկվայի առաջատար բուժպրոֆիլակտիկ հիմնարկներից ՍՍՀՄ առողջապահության մինիստր ընկ. Ե. Ի. Չազովի գլխավորությամբ Երևան ժամանեց մոտ 100 բարձրորակ մասնագետ: ՍՍՀՄ պաշտպանության մինիստրությունը աղետի շրջան



ուղարկեց 350 մասնագետ բժիշկ: Մյուս հանրապետություններից ու մարզերից 130 բժշկական բրիգադների կազմում ժամանեց ավելի քան 1150 բժիշկ:

Փրկարար աշխատանքներին զուգընթաց անհետաձգելիորեն կազմակերպվեց տուժած շրջաններից երեխաների, կանանց ու ծերունիների էվակուացումը: Այդ աշխատանքը գլխավորում էր ՀԱՄԿԽ-ի նախագահ ընկ. Ս. Ա. Ծալանը: Էվակուացվել է մոտ 115 հազար մարդ: ՀԱՄԿԽ-ն ցույց է տվել ավելի քան 170 միլիոն ռուբլու նյութական օգնություն: 4—5 ամիս առողջարաններում էվակուացվածների անվճար խնամքը կպահանջի ևս 70—75 միլիոն ռուբլի:

Ընդհանուր գործում մեծ ավանդ մուծեցին Լենինի անվան սովետական մանկական ֆոնդը, կարմիր խաչի և կարմիր մահիկի ընկերությունը:

Սովետական երիտասարդությանը հատուկ հիանալի հայրենասիրական հատկանիշներ դրսևորեցին պատանիներն ու աղջիկները: Նրանք անհրաժեշտ ամեն ինչ արել և անում են փրկարար և վերականգնողական աշխատանքների հաջող իրականացման համար: Դրանք նաև կամավորների՝ բանվորների, ուսանողների, սովորողների բազմահազարանոց ջոկատներ են, որոնք Մոսկվայից, Լենինգրադից, բոլոր միութենական հանրապետություններից եկած երիտասարդական դրուժինաների հետ մեկտեղ հերոսաբար աշխատում էին փլատակների մաքրման վրա, ապահովում տրանսպորտային երակների անխափան աշխատանքը, օր ու գիշեր հերթապահում հիվանդանոցներում ու կլինիկաներում:

Առանձնապես հարկավոր է նշել «Որոնում» խմբի արժեքավոր նախաձեռնությունը, որի շնորհիվ բազում հազարավոր մարդիկ գտել են և շարունակում են գտնել իրենց հարազատներին ու մերձավորներին:

Անցած օրերի ընթացքում առաջնահերթ անհետաձգելի միջոցներ են ձեռնարկվել տուժածների կենսագործունեության ապահովման համար: ՍՍՀՄ պետմատի ակտիվ օգնությամբ ստացվել և բաշխվել է ավելի քան 95 հազար վրան, 3270 յուրտ, 910 փայտե տնակ, 3400 վագոն-տնակ, մեծ քանակությամբ շինարարական տեխնիկա ու մեքենաներ:

Մասնակիորեն վերականգնվել է աշխատանքը մանրածախ առևտրի և հասարակական սննդի համակարգում: Կազմակերպվել է վառելիքի անվճար մատակարարում:

Ինտենսիվորեն աշխատանքներ են տարվում ջրմուղի, գազամատակարարման, կոյուղու ցանցերի, ճանապարհների և այլ ինժեներային կոմունիկացիաների վերականգնման ուղղությամբ:

Արդեն նոր տարվա նախօրեին անվնաս մնացած տների մեծ մասում վերականգնված էին ջրամատակարարումը և գազամատակարարումը: Բնակչությանն սկսեցին սպասարկել վարսավիրանոցները, լվացքատները, կարի արհեստանոցները, վարձույթի կետերը, կահույքի նորոգման արհեստանոցները, հագուստի քիմիական մաքրման շրջիկ կետերը:

ՍՍՀՄ կառավարության ընդունած որոշմանը համապատասխան, տուժածներին միանվագ նպաստներ են վճարվում, հատուցվում է կորսված գույքի արժեքը, լրիվ չափով վճարվում է բնակելի տների, այգետնակների, տնտեսական շինությունների, գյուղատնտեսական կենդանիների, տրանսպորտային միջոցների, ինչպես նաև տնային գույքի արժեքը: Արդեն օգնություն է ցույց տրվել մոտ 400 հազար քաղաքացիների՝ մոտ 300 միլիոն ռուբլի ընդհանուր գումարով:

Փրկարար աշխատանքներին, տուժածներին անհետաձգելի օգնություն կազմակերպելուն զուգընթաց, խնդիր էր առաջադրվում ամենակարճ ժամկետներում կարգավորել և գործի գցել երկրաշարժի հետևանքների վերացման ամբողջ պրոցեսի կառավարման ամբողջական մեխանիզմը:

Սակայն աղետի հենց առաջին օրերից անկազմակերպվածության և դանդաղաշարժության պատճառով չհաջողվեց օպերատիվորեն լուծել կենսականորեն կարևոր շատ հարցեր: Ցավալի խափանումներ թույլ տրվեցին մարդկանց սննդով, տաք հագուստով ապահովելու, վրաններ խփելու գործում:

Սկզբում շատ թերություններ կային ստացված օգնության բաշխումը կազմակերպելու գործում: Դրա համար խիստ ու արդարացի քննադատության ենթարկվեց հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Յու. Խոջամիրյանի գլխավորած հանձնաժողովի գործունեությունը: Այստեղ անհրաժեշտ է կարգավորել հստակ աշխատանքը, ոչ ոք չպետք է կասկած ունենա, որ հանրապետության ստացած ամեն ինչը հասնում է մարդկանց:

Մենք ուշացումով սկսեցինք ռեալ օգնություն ցույց տալ գյուղին: Ապշեցուցիչ է,

բայց փաստ. մեր պետագրոարդը (ընկ. Վ. Մ. Մովսիսյան) երկրաշարժից նույնիսկ 5—7 օր հետո էլ ագրոարդյունաբերական համալիրում իրական կորուստների ընդհանուր պատկերը չուներ:

Այս բոլոր թերությունները որոշակի չափով հետևանք են մեր մի շարք ղեկավար կադրերի անպատասխանատու վերաբերմունքի, այն բանի, որ նրանք սնընդունակ են վճռականորեն և նախաձեռնողաբար գործել ծայրագույն պայմաններում: Այսօր նման վրիպումներն անթույլատրելի են:

Մենք ձեռնամուխ ենք եղել բացառիկ կարևոր ծրագրի իրականացմանը, որի հիմնական գումարելիները տուժած շրջանների բնակիչների աշխատանքի տեղավորումն է, ավերված քաղաքների, բնակավայրերի, ձեռնարկությունների ու կազմակերպությունների վերականգնումն ու վերակառուցումը, աղետյալ գոտում մինչև երկրաշարժը գոյություն ունեցած արտադրական ծավալների ձեռքբերումը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական կազմակերպությունների գլխավոր խնդիրը 1989—1990 թվականներին բոլոր միութենական հանրապետությունների, ՍՍՀՄ մինիստրությունների ու գերատեսչությունների օգնությամբ տուժած տարածքում ամբողջ սոցիալ-տնտեսական պոտենցիալի, արտադրական և սոցիալ-կուլտուրական ոլորտի օբյեկտների վերականգնման ապահովումն է:

Խնդիրը շատ բարդ է, քանի որ այդ երկու տարում մենք պետք է իրացնենք մոտ 8 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ, վերականգնենք և կառուցենք 6,3 միլիոն քառակուսի մետր բնակմակերես, 112700 աշակերտական տեղով դպրոցներ, 48100 տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ, 6700 մահճակալով հիվանդանոցներ, հերթափոխում 12400 այցելությամբ պոլիկլինիկաներ, արտադրական, գյուղատնտեսական, կոմունալ-կենցաղային և մշակութային, ինչպես նաև էներգետիկայի, առևտրի, տրանսպորտի և կապի բազմաթիվ օբյեկտներ, վարչական և այլ շենքեր ու կառույցներ:

Դրա կատարումը մեզանից պահանջում է մեծ պատասխանատվություն, կազմակերպվածություն և կարգապահություն: Երկրաշարժի հետևանքների վերացման գործում նախ և առաջ օրինակ պետք է ծառայեն հանրապետության կուսակցական և սովետական մարմինները, մինիստրություններն ու գերատեսչությունները, բոլոր աշխատավորական կոլեկտիվները: Սա մեր սրբազան պարտքն է ժողովրդի հանդեպ: Մենք պետք է հիշենք, որ հույսով և սպասումով մեզ են նայում հազարավոր աղետյալ ընտանիքներ: Նրանց բնականոն կյանքի վերածնումը մեր առաջնագույն բարոյական և քաղաքական պարտականությունն է: ՍՄԿԿ Կենտկոմի, երկրի կառավարության, եղբայրական միութենական հանրապետությունների, ՍՍՀՄ մինիստրությունների ու գերատեսչությունների, աշխատավորական կոլեկտիվների մեծ օգնությունը, որոնք մեզ անգնահատելի աջակցություն են ցույց տալիս չափազանց ծանր այս օրերին, ոչ միայն չի վերացնում հանրապետության պատասխանատվությունը, այլև, ընդհակառակը, մեզ պարտավորեցնում է աշխատել կրկնապատկված, եռապատկված եռանդով:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշումները, որոնք նախատեսում են քաղաքների և գյուղական բնակավայրերի, արդյունաբերական և գյուղատնտեսական, շինարարական և տրանսպորտային ձեռնարկությունների, ոչ արտադրական ոլորտի օբյեկտների, ամբողջ սոցիալ-տնտեսական պոտենցիալի վերականգնման ամբողջական ծրագիր, դրա համար ռեալ կազմակերպական և նյութատեխնիկական հիմք են ստեղծել:

Ելնելով այդ որոշումներից, միութենական հանրապետությունները, տարերային աղետի հետևանքների վերացմանը մասնակցող մինիստրություններն ու գերատեսչությունները, աշխատավորական կոլեկտիվներն այսօր արդեն հիմնականում ավարտում են տուժած շրջանները բնականոն կյանքի վերադարձնելու կոնկրետ ծրագրերի մշակումը:

Վերականգնման աշխատանքների ամբողջ ծավալն այսօր առանձնացված է չորս գլխավոր ուղղությունների՝ բնակարանների և սոցիալական ենթակառուցվածքի օբյեկտների շինարարություն, արդյունաբերության, ագրոարդյունաբերական համալիրի վերականգնում ու վերակառուցում, ինչպես նաև աղետի գոտում կենսապահովման կանոնավոր գործող համակարգի ստեղծում:

Մինիստրություններն ու գերատեսչությունները հիմնականում ավարտում են այդ



ծրագրերի մանրամասնումը, կազմել են վերականգնման աշխատանքների ժամանակաշրջանի հանգամանալի և կոնկրետ պլաններ:

Եղբայրական միութենական հանրապետությունների, Մոսկվայի և Լենինգրադի աշխատավորական կոլեկտիվների ուժերով կվերականգնվեն Լենինական, Կիրովական, Սպիտակ, Ստեփանավան, Ալավերդի, Արթիկ, Դիլիջան քաղաքները, Մարալիկ ավանը, Ամասիա, Ախուրյան, Ղուկասյան և Գուգարք շրջկենտրոնները: Նրանք կկառուցեն չորս միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ՝ սոցիալ-կուլտուրական և կոմունալ-կենցաղային բոլոր օբյեկտների հետ միասին:

Լուծելով այս ծրագրային խնդիրները, մենք չպետք է մոռանանք, որ հսկայական թվով մարդիկ այսօր մեզանից ակնկալում են իրենց կենսապահովման հետ կապված հարցերի անհետաձգելի լուծում: Դրանում մենք նորից համոզվեցինք երեկ Լենինականում, Սպիտակում, Կիրովականում: Բազմաթիվ տուժածներ առ այսօր տակավին օթևան չունեն, կանոնավորապես տաք սնունդ չեն ստանում, ապահովված չեն տաք հագուստով, չեն ներգրավված աշխատանքում: Մինչդեռ կուսակցության շատ քաղկոմներ ու շրջկոմներ, ժողովրդական դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմներ, հանրապետության մինիստրություններ ու գերատեսչություններ զարմանալի անփութություն են դրսևորում այդ կենսական կարիքների բավարարման հարցում, մոռանալով, որ հիմա այնտեղ ձմեռային դաժան պայմաններ են:

Ուստի և առաջնագույն խնդիրն է լուծել այս բոլոր հարցերը, ապահովել մարդկանց բնականոն կենսագործունեությունը ու նախ և առաջ նրանց լայնորեն ներգրավել վերականգնման ու շինարարական աշխատանքներում:

Աշխատանքների առաջիկա զգալի ծավալները, ուժերի ու միջոցների մեծ կենտրոնացումը պահանջում են քաղաքաշինական քաղաքականության վարման խորապես կշռադատված համակարգի ստեղծում:

Դեկտեմբերի 10-ից գործում է քաղաքաշինության պետական միջգերատեսչական հանձնաժողովը, որը հետազոտում է տուժած բնակավայրերի տարածքը, ճշգրտում բնակավայրերի գլխավոր հատակագծերը, ինժեներային ապահովման համակարգերը, նոր շինարարության շրջանների մանրակրկիտ հատակագծման ու կառուցապատման նախագծերը:

Բնակելի և հասարակական շենքերի ու շինությունների տեխնիկական վիճակի օպերատիվ հետազոտման աշխատանք է կատարվում կառույցների ամրացման և դրանց հետագա շահագործման հարցերի լուծման անհրաժեշտ միջոցների ձեռնարկման համար:

Ներկայումս սեյսմիկ շրջանացման քարտեզները նկատի ունենալով, մշակված են հանրապետության տուժած քաղաքների և շրջկենտրոնների գլխավոր հատակագծերի սխեմաներ: Դրանցից յուրաքանչյուրի համար որոշվել են առաջնահերթ շինարարության շրջաններն այն տարածքներում, որոնք ինժեներաերկրաբանական և ջրաերկրաբանական պայմաններով առավել նպաստավոր են: Վերակառուցման պրոցեսում առաջադրվում է նոր շինարարական-ճարտարապետական ստրատեգիայի մշակման ու իրագործման հարցը, որը կբացառեր անցյալում թույլ տրված սխալներն ու վրիպումները:

Ապագայում աշխարհի առջև ինչ տեսքով կհառնեն այսօր դեռ ավերված քաղաքներն ու գյուղերը, դրանք ինչպես կխորհրդանշեն վերածնման ոգին, ինչպես կմարմնավորեն շինարարության արդի նվաճումները և ազգային ավանդույթների ժառանգորդությունը՝ այս ամենը մեծապես պետք է պայմանավորի հանրապետական և ներգրավված նախագծային ու ճարտարապետական կազմակերպությունների նպատակասլաց ստեղծագործական աշխատանքը: Պետք է ամենայն որոշակիությամբ ասեմ, որ, վերջին հաշվով, այս բոլոր հարցերում վերջին խոսքը պատկանում է մեր հայ ճարտարապետներին, նախագծողներին և մասնագետներին:

Բացի ինժեներահետազոտական աշխատանքներից և գիտական հաշվարկներից, որոնք կոչված են ապահովելու ապագա շինությունների սեյսմակայունությունն ու անվտանգությունը, անհրաժեշտ է շինարարությունն այնպես կատարել, որ այն ճշտորեն համապատասխանի ժամանակակից պահանջներին ինչպես գեղագիտական-ճարտարապետական առումով, այնպես էլ շինարարության որակի տեսակետից:

Այսօր բոլորը պետք է ի վերջո գիտակցեն, որ Հայաստանի սեյսմիկ պայմաններում ոչ հեռու անցյալում եղած միայն ընդհանուր ցուցանիշների, քառակուսի մետրերի հետևից ընկնելու սովորությունը շինարարության մեջ պարզապես հանցագործություն է:

Մենք բոլորս համոզվեցինք, որ ավերածությունների մասշտաբները այդպիսի աղետալի չափերի չէին հասնի, եթե հարկ եղած ուշադրությունը դարձված լիներ շինարարության որակին: Ժողովուրդն այսօր արդարացիորեն դատապարտում է նման վերաբերմունքը, և մենք դրան պատշաճ, սկզբունքային գնահատական կտանք: Ներկայումս հատուկ միջգերատեսչական հանձնաժողովը զբաղվում է այդ հարցով: Ուսումնասիրման արդյունքները և ձեռնարկված միջոցները լայնորեն կհրապարակվեն:

Հանրապետության պետշինը որպես գլխավոր նախագծող և կապալառու պետք է մշտական ճարտարապետական-շինարարական վերահսկողություն իրականացնի քաղաքների հաստատված գլխավոր հատակագծերի, բնակելի շրջանների, մանրամասն հատակագծման նախագծերի իրականացման, նորոգման-վերականգնման աշխատանքների և շինարարության կոմպլեքսայնության ու որակի նկատմամբ:

Նախագծային աշխատանքների ծավալման համար պահանջվում է, որ պետշինը, հանրապետության գիտությունների ակադեմիան միկրոսեյսմիկ շրջանացման և ինժեներաերկրաբանական հետախուզումների մանրամասն հետազոտությունների կոմպլեքսը արագացնեն սեյսմիկ իրադրությունը առավելագույնս հաշվի առնելու նպատակով:

Շինարարական վերականգնման աշխատանքների ամբողջ կոմպլեքսի նպատակալաց կազմակերպման և իրականացման համար Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը պետք է արագացնի տուժած քաղաքներում և շրջանային կենտրոններում միասնական պատվիրատուի ծառայության, ինչպես նաև հանրապետության պետշինի համակարգում համապատասխան կառուցվածքային ստորաբաժանումների ստեղծումը:

Մենք հապաղելու ժամանակ չունենք: Բոլոր հարցերը հարկավոր է լուծել օպերատիվորեն, փոխկապակցված, համակարգված ձևով և խստիվ սահմանված ժամկետներում: Սակայն այսօր մենք արդեն բախվում ենք որոշակի դժվարությունների և ընդհատումների:

Հանրապետության պետշինը, նախագահ ընկ. Վ. Արծրունին, նրա տեղակալ ընկ. Ա. Ալեքսանյանն անչափ դանդաղ են ծավալում ինժեներային հետախուզումների, նախագծահատակագծման և նախագծանախահաշվային փաստաթղթերի մշակման աշխատանքները: Չի ապահովված անհրաժեշտ կոորդինացումը, ոչ բավարար հստակությամբ են սահմանված որոնողների ու նախագծողների խնդիրները և, ինչը միանգամայն անթույլատրելի է, անբավարար են օգտագործվում ներգրավված նախագծային կազմակերպությունների ուժերը:

Հարկ եղած ծավալին չեն հասել նոր կառուցապատման ենթակա գոտիներում բնահողի երկրաբանական և ջրաերկրաբանական վիճակի ուսումնասիրման աշխատանքները: Զգացվում է հատուկ սարքավորումների ու գործիքների, տեխնիկայի, մեքենաների ու մեխանիզմների մեծ պակաս:

Այս ամենը հանգեցրել է նրան, որ այսօր մենք փաստորեն չենք կարողանում ձեռնամուխ լինել քաղաքների ու շրջկենտրոնների զանգվածային կառուցապատմանը, արդյունավետորեն գործի դնել ներգրավված կազմակերպությունների ամբողջ պոտենցիալը: Կուսակցության Կենտկոմն էլ դրանով շատ մտահոգված է: Այս հարցերը լուծելիս հանդես բերվող դանդաղկոտությունը սպառնալիքի տակ է դնում սահմանված ժամկետներում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման կատարումը: Ուստի և դրանց առաջնահերթ, անհետաձգելի լուծումը պետք է գլխավորը դառնա հանրապետության Մինիստրների խորհրդի և պետշինի գործունեության մեջ:

Մեզ բնավ չեն բավարարում պահպանված շենքերի ու կառույցների տեխնիկական վիճակի ուսումնասիրման մեթոդները և տեմպերը: Դրանց պիտանիության գնահատումը մեծապես կատարվում է դիտողաբար, առանց մանրակրկիտ գործիքային ստուգման: Մինչև հիմա չեն մշակվել դրանց սեյսմակայունության ու հուսալիության մեծացման կոնկրետ հանձնարարականներ, չի տրվել ոչ մի նախագիծ:

Այս բոլոր հարցերին հանրապետության պետշինը պետք է առանձնահատուկ ուշադրություն դարձնի: Աշխատանքները պետք է այնպես կազմակերպվեն, որ իսպառ բացառվի սխալների ու վրիպումների կրկնության հնարավորությունը:

Տուժած քաղաքների ու բնակավայրերի վերականգնման և կառուցապատման ամբողջ ծրագրի հաջող իրագործման համար առանձնահատուկ հարց է տարածքների հատկացումը: Դրան պետք է մոտենալ ամենայն լրջությամբ և անհապաղ:



Ցավոք, հենց այդ հարցին պատշաճ ուշադրություն չի դարձվում: Դրա լուծման ձգձգումը դարձել է վերականգնման ամբողջ ճակատի ձևավորումն արգելակող հիմնական գործոններից մեկը: Մինչդեռ այդ աշխատանքը մենք պետք է այնպես կատարենք, որ նվազագույնի հասցնենք ոռոգելի արգավանդ հողերի հատկացումը: Անհրաժեշտ է, որ պետագրոարդն ամենաանմիջական ձևով մասնակցի այդ գործին:

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է խիստ վերահսկողություն հաստատի այն բանի նկատմամբ, որ թույլ չտրվեն հողերի շռայլում և աղտոտում:

Երկրաշարժի հետևանքների վերացման գործում մեծ ծավալի աշխատանքներ պետք է կատարի մեր հանրապետությունը: Չորս տուժած քաղաքներում (Իջևան, Հրազդան, Չարենցավան, Աշտարակ) և վեց շրջկենտրոններում (Կալինինո, Թալին, Նոյեմբերյան, Բերդ, Ապարան և Ծաղկահովիտ) սոցիալական ոլորտի օբյեկտների լիակատար վերականգնումը իրականացվում է մեր շինարարական կազմակերպությունների ուժերով: Հանրապետության պետպլանը արդեն պարզել է առաջիկա աշխատանքների նախնական ծավալները: Նախատեսված է նորից կառուցել կամ վերականգնել ավելի քան 700 հազար քառակուսի մետր միայն բնակելի ֆոնդ: Եթե նկատի ունենանք, որ հանրապետությունում երկրաշարժից առաջ բնակարանային շինարարության տարեկան ծավալը կազմում էր ընդամենը մեկ միլիոն 250 հազար քառակուսի մետր, ապա հանրապետական կազմակերպությունների ուժերով նման վիթխարի ծրագրի կատարումը այս քաղաքներում և շրջկենտրոններում պահանջում է առանձնահատուկ միջոցների ձեռնարկում: Բացի դրանից, մենք պետք է կառուցենք 1230 մահճակալով հիվանդանոցներ, հերթափոխում 2400 այցելությամբ պոլիկլինիկաներ, 8756 տեղով հանրակրթական դպրոցներ, ավելի քան երկու հազար տեղով նախադպրոցական հիմնարկներ, զգալի քանակությամբ պիոներների տներ, գիշերօթիկ դպրոցներ, պրոֆտեխուսումնարաններ, մշակույթի ակումբներ ու տներ, կինոթատրոններ և մարզակառույցներ, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական ոլորտի այլ օբյեկտներ: Մենք չպետք է մոռանանք, որ դրանից բացի հսկայական աշխատանք է սպասվում նաև Երևան քաղաքում:

Այս ամենը մեզանից պահանջում է ուժերի ու միջոցների առավելագույն կենտրոնացում, բոլոր առկա ռեսուրսների մոբիլիզացում, բարձր կազմակերպվածություն և հաստատակամություն: Սակայն տագնապ է հարուցում այն փաստը, որ այդ աշխատանքների կազմակերպման և կատարման գործում առայժմ չկան անհրաժեշտ որոշակիություն և կոնկրետություն, բացակայում է յուրաքանչյուր մինիստրության, գերատեսչության, տեղական սովետների գործկոմների գործողությունների հստակ ծրագիրը: Նման անպատասխանատու մոտեցումը հղի է անցյալ տարվա հետևանքներով, երբ միութենական հանրապետությունների մեջ մենք եղանք սոցիալական ոլորտի զարգացման բոլոր հիմնական ցուցանիշների կատարումը ձախողած միակ հանրապետությունը: Կարծում ենք, որ այս հարցը պետք է առանձնահատուկ քննարկման առարկա դառնա հանրապետության Մինիստրների խորհրդում:

Շինարարական վերականգնման աշխատանքների առաջիկա մասշտաբներն առանձնակի պահանջ են ներկայացնում շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության արտադրական բազայի զարգացմանը:

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հատուկ որոշմամբ արդեն այդ ուղղությամբ նախատեսված է կոնկրետ միջոցառումների կոմպլեքս: Դա վերաբերում է ինչպես երկրաշարժի գոտում գտնվող ձեռնարկությունների ու կազմակերպությունների վերականգնմանը, այնպես էլ հանրապետության մյուս ռեգիոններում կարողությունների զարգացմանը, դրանց օգտագործման մակարդակի բարձրացմանը, պատաշարի, ոչ հանքային և այլ տեղական շինանյութերի արտադրության ընդլայնմանը:

Միայն այս տարի մենք պետք է երկաթբետոնի, ատաղձագործական իրերի, քարի և մյուս շինանյութերի ծավալների աճն ավելացնենք 2—2,5 անգամ:

Երկրաշարժի հետևանքների շուտափույթ վերացումը պահանջում է, որ շինարարական համալիրի շատ ձեռնարկություններ ու կազմակերպություններ անցնեն եռահերթ-քառահերթ և անընդմեջ աշխատանքի, անհապաղ անցկացվի գործող ձեռնարկությունների անհրաժեշտ տեխնիկական վերազինում ու վերակառուցում:

Տարբեր շինանյութերի նկատմամբ շինարարության կարիքները բավարարելու համար մենք պետք է լիովին գործի դնենք հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների բոլոր հնարավորությունները: Այս հարցին պետք է առանձնակի ուշադրություն դարձնեն նաև կուսակցության շրջկոմները, տեղական սովետների գործկոմները, մինիստրություններն ու գերատեսչությունները:

Հանրապետության պետշինը պետք է անհապաղ վերանայի շինարարական համալիրի կառավարման կառուցվածքը, հստակորեն կոորդինացնի աշխատանքների ամբողջ ծավալը, առանձնակի ուշադրություն դարձնելով ինչպես սեփական, այնպես էլ ներգրավված կազմակերպությունների տեղական շինանյութերի կարիքների բավարարմանը:

Սա հսկայական կարևորության և մեծագույն պատասխանատվության խնդիր է և դրա կատարման համար առանձնահատուկ հաշիվ կպահանջվի:

Ընկերնե՛ր:

Երկու տարում մենք պետք է տարերային աղետի գոտու արդյունաբերական ձեռնարկություններում նորից ստեղծենք ավելի քան հարյուր հազար աշխատատեղ: ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմանը համապատասխան նախատեսված է միայն միութենական մինիստրությունների և գերատեսչությունների ուժերով վերականգնել և վերակառուցել 130-ից ավելի ենթակա արդյունաբերական ձեռնարկություն, ինչպես նաև բնակելի տներ և սոցիալական ոլորտի ուրիշ օբյեկտներ, որի համար կպահանջվի իրացնել մոտ 1,1 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ:

Ուզում եմ ընդգծել, որ լիովին ավերվածների փոխարեն նոր ձեռնարկությունների կառուցումը նախատեսվում է իրականացնել գիտատեխնիկական առաջադիմության այսօրվա պահանջներին, անհրաժեշտ սեյսմակայունության ապահովման խնդիրներին խստիվ համապատասխան, լայնորեն օգտագործելով թեթև շինարարական կառուցվածքները:

Արդյունաբերության վերականգնման ծրագրում հաշվի են առնված նաև հանրապետության արտադրական ուժերի զարգացման ու տեղաբաշխման պրոբլեմների լուծման նկատմամբ առկա նոր պահանջները, նկատի ունենալով առանձին արտադրությունների վերապրոֆիլացումը:

Տեղի ունեցած երկրաշարժը, ռեգիոնի սեյսմիկ բնութագրի խոր ուսումնասիրությունները մեզ պարտավորեցրին մտածել արտադրական ուժերի առավել նպատակահարմար տեղաբաշխման ու զարգացման մասին: Հանրապետության կարևոր արդյունաբերական կենտրոնները՝ Լենինականը, Կիրովականը, Երևանը, գտնվում են առավել սեյսմավտանգ գոտում: Արդյունաբերական պոտենցիալի և ամբողջությամբ վերցրած քաղաքների վերականգնումն ու հետագա զարգացումը նախատեսված է իրականացնել մինչև հիմա եղածից տարբեր սկզբունքներով: Մենք ՍՍՀՄ պետպլանին, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային, միութենական մինիստրություններին խնդրեցինք համապատասխան հանրապետական կազմակերպությունների մասնակցությամբ սահմանել արտադրական ուժերի զարգացման ու տեղաբաշխման առավել նպատակահարմար ուղղությունները, հաշվի առնելով ստեղծված իրադրության առանձնահատկությունները: Ընդսմին պահանջվում է առանձնակի ուշադրություն դարձնել այն հանգամանքին, որ հանրապետությունն ունի զգալի ավելցուկային աշխատանքային ռեսուրսներ: Աշխատունակ բնակչության 17 տոկոսը զբաղված չէ հանրային տնտեսությունում: Բայց դա երկրաշարժից առաջ էր: Հասկանալի է, որ հիմա իրադրությունը էլ ավելի է բարդացել: Այս կապակցությամբ արդյունաբերական օբյեկտների վերականգնման և շինարարության բոլոր աշխատանքները պետք է իրականացվեն, նկատի ունենալով ավելի աշխատատար և պակաս էներգատար ու նյութատար արտադրությունների զարգացումը:

Այսօր կուզենայինք հատկապես ընդգծել իրենց արտադրական ձեռնարկությունների բախտի, աշխատավորական կոլեկտիվների սոցիալական պրոբլեմների լուծման նկատմամբ բոլոր միութենական մինիստրությունների ու գերատեսչությունների պատասխանատու մոտեցումը և մեծ ուշադրությունը: Տեղերում վերականգնման աշխատանքների լրիվ կոմպլեքսի իրականացման համար նրանք ստեղծում են շինմոնտաժային կազմակերպություններ, շրջիկ մեքենայացված շարասյուններ, շինմոնտաժային գնացքներ: Սահմանվել են կատարվող աշխատանքների մասշտաբներն ու ժամկետները, մարդկանց աշխատանքային գործունեության մեջ ներգրավվելու միջոցառումները: Միայն մեքենաշինական համալիրի գծով երկու տարում նախատեսված է վերականգնել տարեկան 336 միլիոն ռուբլու արտադրանք թողարկող արտադրական կարողություններ, աշխատանքով ապահովել 21 հազար մարդու: Արդեն ընթացիկ տարվա առաջին եռամսյակում գործի կդրվեն 88 միլիոն ռուբլու կարողություններ՝ հինգ հազար աշխատատեղով:

Միայն միութենական ենթակայության ձեռնարկություններում 1990 թվականի



վերջերին կստեղծվի մոտ 60 հազար աշխատատեղ, թողարկվող արտադրանքի ավելի քան մեկ միլիարդ ռուբլի տարեկան ծավալով:

Ավերածությունների մասշտաբներով և աստիճանով, աշխատավորական կոլեկտիվներում մարդկանց կորուստներով ամենից շատ տուժել են թեթև արդյունաբերության ձեռնարկությունները: Երկրաշարժի գոտում է հայտնվել այդ ճյուղի 98 օբյեկտ՝ թողարկվող արտադրանքի 995 միլիոն ռուբլի տարեկան ծավալով: Դրանցում աշխատում էր 44 հազար մարդ: Հսկայական են նաև զոհերը: Զոհվել է ավելի քան 1700 մարդ: Նույնքան էլ գտնվում է հիվանդանոցներում: Այսօր աղետի գոտում մնացել է 28 հազար մարդ, որոնցից մոտ 20 հազարը կանայք են: Հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության խնդիրն է ոչ միայն մշակել արտադրական կարողությունների վերականգնման հստակ ծրագիր, այլև անհապաղ աշխատանքի տեղավորել անգործ մնացած մարդկանց: Պետք է նշել, որ մինիստրությունը ժամանակին չի մշակել մարդկանց աշխատանքի մեջ ներգրավելու կոնկրետ մեխանիզմ:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ ընկ. Լ. Սահակյանը, թեթև արդյունաբերության մինիստր ընկ. Ռ. Մկրտչյանը պետք է ավելի ակտիվորեն աշխատեն այդ ուղղությամբ, անհապաղ միջոցներ ձեռնարկեն տուժած ձեռնարկությունների պահպանված արտադրամասերն ու տեղամասերը գործարկելու, մարդկային ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու նպատակով: Տեղերում մնացած մարդկանց, հատկապես կանանց, կարելի է լայնորեն ներգրավել առևտրի և սպասարկման ոլորտում:

Աշխատավորական կոլեկտիվների զգալի մասին պետք է ներգրավել իրենց ձեռնարկությունների վերականգնման աշխատանքներում, ինչպես նաև կարճ ժամկետում լուծել արդյունաբերական ձեռնարկությունների բանվորներից ու ծառայողներից շինարարական ջոկատներ կազմելու հարցը:

ՀԱՄԽ-ը, աշխպետկոմը և տեղական սովետները պետք է դրա համար մշակեն և իրականացնեն աշխատանքի նյութական ու բարոյական խթանման համապատասխան միջոցառումներ:

Ցավոք, հանրապետության աշխպետկոմը (ընկ. Ի. Սեմյոնով) առայժմ ենթակա կազմակերպությունների, տեղերում աշխատանքի մարմինների ուժերի համախմբման գործում անհրաժեշտ ակտիվություն չի դրսևորում աշխատանքային ռեսուրսների մանրակրկիտ հաշվառում անցկացնելու, առկա պահանջներին և հանրապետությունում ազատ աշխատատեղերի առկայությանը համապատասխան մարդկանց մասնագիտական կողմնորոշումն ու վերապատրաստումը կազմակերպելու համար:

Մենք մեծ ծավալի աշխատանքներ պետք է իրականացնենք հանրապետության տնտեսության, հատկապես տեղական արդյունաբերության վերականգնման նպատակով: Երկրաշարժի գոտում տուժել են այդ ճյուղի 11 ձեռնարկություններ ավելի քան 3,5 հազար աշխատողներով: Որոշ արտադրություններ արդեն վերականգնվել են և ավելի քան հազար մարդ ներգրավվել է աշխատանքում: Միևնույն ժամանակ մինչև օրս ձգձգվում է հողի հատկացման, նախագծման, առանձին արտադրությունների վերապրոֆիլացման հարցերի լուծումը:

Երկրաշարժի հետևանքների վերացման աշխատանքի նոր փուլը պահանջում է նախ և առաջ պլանաչափ մոտեցում, ժողովրդատնտեսական համալիրի բոլոր օղակների աշխատանքի կոորդինացման ու հստակության բարձր մակարդակ: Այդ նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների խորհուրդը մշակել են կոնկրետ միջոցառումների կոմպլեքսային պլան: Այն ներկայացված է ձեր քննարկմանը: Դրա անվերապահ կատարման ապահովումը պետք է դրվի կուսակցության քաղկոմների ու շրջկոմների ամբողջ կազմակերպչական ու քաղաքական գործունեության, մինիստրությունների ու գերատեսչությունների, տեղական սովետների գործկոմների, ձեռնարկությունների և կազմակերպությունների գործնական աշխատանքի հիմքում: Հանրապետության Մինիստրների խորհուրդը իր հերթին պետք է հստակորեն կոորդինացնի պետպլանի, պետագրոարդի, պետշինի, պետմատի, մյուս մինիստրությունների և գերատեսչությունների աշխատանքը հանրապետության տնտեսության արագացված վերականգնման և աղետի գոտում բնականոն կենսագործունեության ապահովման կոնկրետ խնդիրների լուծման նկատմամբ համակարգված և ծրագրային մոտեցումն ապահովելու գործում:

Արդյունաբերության մեջ, հանրապետության ամբողջ էկոնոմիկայում այսօր էական ճշգրտումներ են կատարվում Հայաստանի ատոմակայանը կանգնեցնելու

կապակցությամբ: Ինչպես գիտեք, Հայկական ՍՍՀ տարածքում երկրաշարժի կապակցությամբ ստեղծված ընդհանուր սեյսմիկ իրադրությունը հաշվի առնելով՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների խորհուրդը դիմեցին ՍՄԿԿ Կենտկոմին և սովետական կառավարությանը, առաջարկելով Հայաստանի ատոմակայանը կանգնեցնել նախատեսվածից ավելի շուտ: Մեր առաջարկությունը այդ պրոբլեմի համակողմանի ուսումնասիրումից հետո ընդունվեց:

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ էլեկտրակայանի առաջին էներգաբլոկը կանգնեցվելու է այս տարվա փետրվարի 25-ին, իսկ երկրորդ էներգաբլոկը՝ մարտի 18-ին:

Սեյսմիկ վտանգավոր գոտում ատոմային էլեկտրակայանի հետագա գործունեության հարցի օպերատիվ լուծումը մեր ժողովրդի բախտի նկատմամբ երկրի ղեկավարության բացառիկ հոգածության և մեծագույն մարդասիրության դրսևորման համոզիչ օրինակ է: Հանրապետությունում ստեղծված պայմաններում այդ որոշումը անգնահատելի բարոյահոգեբանական և հասարակական-քաղաքական նշանակություն ունի: Թույլ տվեք մեր ակտիվի անունից, հանրապետության բոլոր աշխատավորների, ամբողջ հայ ժողովրդի անունից ՍՄԿԿ Կենտկոմին, երկրի կառավարությանը անկեղծ երախտագիտություն և խորին շնորհակալություն հայտնել Հայաստանի այսօրվա և վաղվա մասին հանդես բերած հսկայական հոգատարության համար:

Ատոմակայանի կանգնեցումը մեզ վրա մեծ պատասխանատվություն է դնում էլեկտրաէներգիայի արտադրության և սպառման հաշվեկշռվածությունն ապահովելու գործում: ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշմամբ նախատեսվում է կոնկրետ միջոցառումների կոմպլեքս իրականացնել Անդրկովկասի ամբողջական էներգահամակարգի բնականոն գործունեությունը և հետագա զարգացումն ապահովելու համար: Կպահանջվի ամենասեղմ ժամկետներում այդ նպատակով իրացնել հարյուր միլիոնավոր ռուբլիներ: Ձեռնարկված միջոցների ընդհանուր համակարգում նախատեսվում են ատոմակայանի վերասարքավորում ջերմային էլեկտրակայանի, Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի ընդլայնման արագացում, գործող էներգետիկ կարողությունների տեխնիկական վերազինում:

Ստեղծված պայմաններում անհրաժեշտ է, որ բոլոր ձեռնարկություններն ու կազմակերպությունները առաջնահերթ կարգով մշակեն և իրականացնեն էլեկտրաէներգիայի լրացուցիչ խնայողության կոնկրետ միջոցառումներ: Դրա համար անհրաժեշտ է մի շարք ձեռնարկություններ և կազմակերպություններ փոխադրել անընդմեջ աշխատանքային շաբաթվա, տեղաշարժելով հանգստյան օրերը, ճշգրտել աշխատանքային հերթափոխերի գրաֆիկները, ուժեղացնել տեխնոլոգիական պրոցեսների վերահսկողությունը:

Այսօր բացառիկ կարևոր դեր է խաղում կոմունալ-կենցաղային կարիքների համար էլեկտրաէներգիայի սպառման սահմանափակումը և խնայողական օգտագործումը: Մենք պետք է հանրապետության յուրաքանչյուր բնակչի հասցնենք, որ էլեկտրաէներգիայի խնայողությունը այսօր համազգային խնդիր է:

Տեղի ունեցած ողբերգությունը ցույց տվեց մեր երկրաշարժաբանական ծառայությունների գործնական անկարողությունը: Ուստի այսօր հասունացել է երկրաշարժաբանական հսկողության ամբողջ համակարգը արմատապես բարելավելու անհետաձգելի անհրաժեշտությունը: Այստեղ նախ և առաջ նկատի ունենք հիմնարար հետազոտությունների անցկացում երկրաշարժաբանության բնագավառում, ինչպես նաև երկրաֆիզիկական և երկրաքիմիական դիտարկումների ադդյունավետորեն գործող համալիրի ստեղծում, դրա հանդերձում արդիական տեխնիկայով, սարքավորումներով և ապահովում բարձրորակ մասնագետներով:

Խնդիրն այն է, որ անհետաձգելիորեն ստեղծվի հանրապետությունում երկրաշարժաիրադրության կանխատեսման համար անհրաժեշտ տվյալների ժողովման և օպերատիվ մշակման արդիական կենտրոն, ինչպես նաև կազմակերպվեն արագ ծավալման ծառայություններ: Աշխատանքների այդ ամբողջ համալիրի ընդհանուր ղեկավարումը պետք է ստանձնի Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան:

Ընկերնե՛ր:

Վերականգնման աշխատանքների մեծ ծրագիր է նախատեսվում հանրապետության ագրոարդյունաբերական համալիրում:

Իսկ որոշակիորեն ի՞նչ է նախատեսվում անել գյուղում առաջիկա երկու տարում: Նախ և առաջ գործարկվելու են ավելի քան 2,2 միլիոն քառակուսի մետր բնակելի մակերես, մանկական նախադպրոցական հիմնարկներ՝ 19500 տեղով, գյուղական դպրոցներ՝ ավելի քան 43 հազար աշակերտական տեղով, ամբուլատոր-պոլիկլինիկական հիմնարկներ՝ հերթափոխի ընթացքում 4.200 այցելության համար, ակումբներ և մշակույթի տներ՝ 33 հազար տեղով, և սոցիալական ոլորտի այլ օբյեկտներ:



Կոլտնտեսություններում ու սովխոզներում նախատեսվում է նորից կառուցել և վերականգնել շինություններ խոշոր եղջերավոր անասունների համար՝ 114,5 հազար, խոզերի համար՝ 48 հազար, ոչխարների և այծերի համար՝ 263 հազար տեղով: Կվերականգնվեն թռչնաբուծարանների կարողությունները, օգտագործելով ներմուծված և լավագույն հայրենական սարքավորումներ:

Կոլտնտեսություններում նկատի է առնվում վերականգնել և նորից կառուցել հացահատիկի ամբարներ և կարտոֆիլի ու բանջարեղենի պահեստարաններ, հանքային պարարտանյութերի պահեստներ և շատ այլ օբյեկտներ: Մինչև ոռոգման սեզոնի սկիզբը ապահովվելու է տուժած գոտու ոռոգվի հողերի կայուն ջրամատակարարումը:

Նախատեսվում է ամենակարճ ժամկետում վերականգնել և գործարկել մսակոմբինատներ, պանրի, հրուշակեղենի, ոչ ոգելից ըմպելիքների արտադրության ձեռնարկություններ, սառցակոմբինատներ, հացի, պահածոյի գործարաններ և այլ օբյեկտներ: Սպիտակի համակցված կերերի ավերված գործարանի փոխարեն նախատեսվում է 1990—1991 թվականներին Արթիկում և Ղափանում գործարկել նոր կարողություններ՝ օրական 500 տոննա համակցված կեր արտադրելու համար: Նոր տեղում կկառուցվի նաև Կիրովականի մսակոմբինատը՝ հերթափոխի ընթացքում 40 տոննա կարողությամբ:

ՍՍՀՄ պետագրոարդը 1989—1990 թվականներին օգնության կարգով հանրապետությանը լրացուցիչ կմատակարարի բարձր մթերատու ցեղատեսակի երինջներ ու հորթեր, համակցված կեր, տարբեր մշակաբույսերի սերմացու: Իսկ հանրապետության պետագրոարդի խնդիրն է դրանք առավելագույնս օգտագործել ոչ միայն տուժած շրջաններում, այլև ամբողջ հանրապետությունում սննդամթերքների ծավալներն ավելացնելու համար:

Շինարարության վերականգնման նախատեսված խնդիրների իրականացման ուղղությամբ քիչ բան չի արված: Ձևավորվել են 110-ից ավելի շինարարական ջոկատներ և մեքենայացված բրիգադներ, որոնցից 94-ը արդեն ձեռնամուխ է եղել աշխատանքի:

Աշխատանքներ են ծավալել ՌՍՖՍՀ-ի երկրամասերի ու մարզերի, միութենական բոլոր հանրապետությունների նախագծողները, շինարարները, տրանսպորտի աշխատողները: Ամեն օր ժամանում են շինարարների նոր ջոկատներ իրենց տեխնիկայով և նյութատեխնիկական ռեսուրսներով, նրանց գործողությունները փոխհամաձայնեցնում է ՍՍՀՄ պետագրոարդը: Օրինակ, Ռուսաստանի Ֆեդերացիայի պետագրոարդը երկու առավել տուժած շրջանների (Սպիտակի և Գուգարքի) համար տեղում ստեղծել է նախագծաշինարարական միավորում, որն արդեն այս տարի 170 միլիոն ռուբլու շինարարական աշխատանքներ կկատարի:

Այսօր անհրաժեշտ է արագացնել տուժած գյուղատնտեսական և անհատական կառուցվածքների ստուգման աշխատանքները: Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստրությունը և պետագրոարդը պետք է արագացնեն գյուղական բնակիչների բնակարաններին և ունեցվածքին, կոլտնտեսությունների ու պետտնտեսությունների հիմնական և շրջանառու ֆոնդերին պատճառված վնասի գնահատման ու հատուցման բոլոր հարցերը:

Պետք է հատուկ ուշադրություն դարձնել բնակչությանը անհրաժեշտ շինանյութերի վաճառքի կազմակերպմանը անհատական բնակելի տների և օժանդակ շինությունների վերականգնման համար:

Հաշվի առնելով բնակչությանը պարենով, հատկապես մսակաթնամթերքներով ապահովելու որոշակի դժվարությունները, նախ և առաջ անհրաժեշտ է լուծել անասնապահությունը վերականգնելու, մսի և կաթի արտադրության տեմպերի նվազում թույլ չտալու հարցերը: Այստեղ, տարերքի պատճառած վնասից բացի, վիճակը ավելի է վատացել հանրապետության սահմաններից անասնապահության շատ աշխատողների հեռանալու հետևանքով:

Հանրապետության պետագրոարդը և նրա տեղական մարմինները պետք է անհետաձգելի և կոնկրետ միջոցներ ձեռնարկեն յուրաքանչյուր ֆերմայի, յուրաքանչյուր տնտեսության ու շրջանի գծով, գյուղական բնակիչների անձնական օժանդակ տնտեսության վերականգնման նպատակով: Ֆերմաներում աշխատողների խիստ պակասի հետևանքով պետք է ներգործուն միջոցներ իրականացնել ամենուրեք վարձակալական կապալ, ընտանեկան ֆերմաներ, կոոպերատիվներ արմատավորելու, աշխատատար պրոցեսները առավելագույնս մեքենայացնելու համար:

Մեծ ծավալի աշխատանքներ են կատարվելու գարնան դաշտային կամպանիայի հաջող անցկացման համար, հաշվի առնելով, որ վարելահողերի և ոռոգվի հողերի զգալի տարածություններ աղտոտված են ու աղբոտված: Հայկական ՍՍՀ պետագրոարդը, տեղերի կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները պետք է այդտեղ էլ պատշաճ կարգուկանոն հաստատեն, ինչպես նաև մանրակրկիտ վերանայեն ցանքատարածությունների ամբողջ կառուցվածքը:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը պետք է խստիվ վերահսկողություն հաստատի շինարարական աղբով աղտոտված հողերը ժամանակին մաքրելու և վերստին մշակելի դարձնելու նկատմամբ, նկատի առնելով, որ այդ աշխատանքները պետք է ավարտվեն մինչև գարնանացանի սկիզբը: Գլխավոր խնդիրն այն է, որ արգավանդ հողի ոչ մի հեկտար պարապ չմնա:

Հայկական ՍՍՀ պետագրոարդը և հանրապետության մելիորացման ու ջրային տնտեսության մինիստրությունը (ընկ. Յու. Ջավադյան) պետք է մինչև 1989 թվականի ոռոգման սեզոնի սկիզբը ապահովեն ոռոգվի հողերի կայուն ջրամատակարարում:

Շատ կարևոր է, որ ագրոարդհամալիրի վերամշակող արդյունաբերության օբյեկտները նախագծելիս, կառուցելիս և վերականգնելիս ճշգրտվեին դրանց տեղաբաշխման սխեմաները, վերացվեին այդ գործում եղած անհամամասնությունները: Պետք է նաև առանձնահատուկ ուշադրություն դարձնել փոքր ու միջին հզորության ձեռնարկությունների, արտադրամասերի և արտադրությունների շինարարության ծավալների ավելացմանը անմիջականորեն տնտեսություններում, ագրոարդյունաբերական միավորումներում, ֆերմաներում և կոմբինատներում:

Տուժած շրջանների տնտեսություններին օգնություն ցույց տալու գործին պետք է եռանդագին մասնակցեն, ինչպես որ տարերային աղետի հետևանքների վերացման առաջին փուլում էր, հանրապետության մյուս շրջանների և քաղաքների աշխատավորական կոլեկտիվները: Մասնավորապես նկատի է առնվում մեխանիզատորների կադրերով և նյութատեխնիկական ռեսուրսներով օգնություն ցույց տալը, անասունների ձմեռումը հաջողությամբ ավարտելու և առաջիկա գարնան դաշտային աշխատանքների ամբողջ համալիրը կազմակերպված անցկացնելու համար:

Ագրոարդյունաբերական համալիրի մեջ մտնող մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է բոլոր պայմաններն ստեղծեն գյուղում նորմալ կենսագործունեության համար:

Հայկոոպը (ընկ. Մ. Մուրադյան), տեղերի կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները պետք է միջոցառումների համալիր իրականացնեն բնակչության, ներգրավված կազմակերպությունների առևտրական սպասարկումը արմատապես բարելավելու, ինչպես նաև սպառկոոպերացիայի նյութատեխնիկական բազան ամրապնդելու և նպատակահարմար կերպով օգտագործելու համար:

Ընկերնե՛ր: Վերականգնման աշխատանքների ամբողջ ընթացքում բացառիկ կարևոր, ես կասեի՝ վճռորոշ նշանակություն է հատկացվում երկաթուղու, ամբողջ փոխադրական կոնվեյերի անխափան աշխատանքի ապահովմանը:

Տարերքի առաջին իսկ օրերից կտրուկ աճեցին բեռնահոսքերն ու մարդատար գնացքների հոսքը հանրապետություն: Դրանք կշարունակեն ավելանալ, և միայն երկաթուղով բեռների ներհոսքը կհասնի տարեկան 40—42 միլիոն տոննայի կամ կավելանա ավելի քան կրկնակի:

Այդ հանգամանքը պահանջեց արմատապես վերանայել հանրապետության երկաթուղային տրանսպորտի վիճակն ու զարգացման հեռանկարները:

Երկրի կառավարությունը, ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրությունը և ՍՍՀՄ տրանսպորտային շինարարության մինիստրությունն արդեն մշակել և իրականացնում են կազմակերպական-տեխնիկական միջոցառումների համալիր՝ ամբողջ վերականգնման ժամանակամիջոցում փոխադրական զարկերակի անխա-



փան աշխատանքն ապահովելու նպատակով: Նախատեսված են ուղեհատվածների թողունակությունն ավելացնելու, լիմիտավորող միջուղիներում կիսակայարաններ, ուղեհատվածներում ավտոբլոկավորումների համասարքեր կառուցելու, կայարաններն ու հանգույցները զարգացնելու, բեռնաթափման փակուղիներն ընդարձակելու և այլ միջոցառումներ: Մշակվում է Կիրովական—Ֆիոլետովո երկաթուղու շինարարության հարցը: Այդ աշխատանքների իրականացման համար մոբիլիզացնող մեծ նշանակություն ունեցավ ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրության, ՍՍՀՄ տրանսպորտային շինարարության մինիստրության կոլեգիաների և երկաթուղային տրանսպորտի ու տրանսպորտային շինարարության բանվորների արհմիության Կենտկոմի նախագահության համատեղ նիստի անցկացումը Երևանում՝ հունվարի 7-ին:

Նախատեսված ծրագրի կատարումը կապահովի Երևանի երկաթուղու բաժանմունքի զարգացումը, որն անհրաժեշտ է վերականգնման աշխատանքների կատարման համար: Սակայն այսօր վատ աշխատանքի պատճառով դանդաղ են անում բեռնաթափման ծավալները: Օրական չբեռնաթափված են մնում երեք հարյուրից ավելի վագոններ:

Շատ ցածր է մնում գիշերվա ժամերի բեռնաթափման գործակիցը: Եվ միանգամայն անթույլատրելի է, երբ օրերով չեն բեռնաթափվում պարենամթերքով բեռնըված վագոնները:

Այսօր կոնկրետ խնդիր է դրվում հասնել օրական առնվազն 2000 վագոնի բեռնաթափման: Այդ աշխատանքի իրականացումը լրիվ դրվում է հանրապետության մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների վրա: Հաշվի առնելով այդ խնդրի բացառիկ կարևորությունը, կուսակցական կոմիտեները պետք է ամենօրյա խիստ վերահսկողություն սահմանեն դրա իրագործման նկատմամբ:

Մեծ խնդիրներ են դրված քաղաքացիական ավիացիայի աշխատողների առջև: Հերթափոխային խմբերը տեղ հասցնելու հետ կապված փոխադրումների տարեկան ծավալը կկազմի մոտավորապես 500 հազար ուղևոր: Զգալիորեն կմեծանան փոխադրվող բեռների ծավալները: Լենինականում պահանջվում է շատ կարճ ժամանակամիջոցում իրականացնել «Շիրակ» օդանավակայանի նախատեսված վերակառուցումը՝ այն հարմարեցնելով աերոբուսների ընդունման համար:

Քաղաքացիական ավիացիայի հայկական վարչության պետ ընկ. Է. Պապիկյանը, «Ավիաշին» տրեստի կառավարիչ ընկ. Ս. Ղազարյանը պետք է աշխատանքն այնպես կազմակերպեն, որ ժամանակին իրացվեն այդ նպատակներին հատկացված կապիտալ ներդրումները:

Այսօր մենք մեծ դժվարությունների առջև ենք կանգնած ավտոմոբիլային տրանսպորտի հստակ աշխատանքի կազմակերպման գործում: Հաշվի առնելով դրա առանձնահատուկ դերը, անհրաժեշտ է ամեն ինչ անել ապահովելու անխափան երթևեկությունը ոչ միայն աղետյալ գոտիներում, այլև դրանց մատույցներում: Դա պահանջում է շուտափույթ կերպով վերականգնել ավերված ճանապարհահատվածները, վերանայել առանձին ուղեմասերում ճանապարհների տեխնիկական պարամետրերը՝ հիմնական նորոգման և շրջանցիկ ճանապարհների շինարարության հաշվին: Ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման մինիստրությունից (ընկ. Գ. Մելքումյան) պահանջվում է երկու տարվա ընթացքում ընդհանուր առմամբ կառուցել և հիմնավորապես նորոգել ավելի քան 350 կիլոմետր ճանապարհներ: Անհրաժեշտ է այդ աշխատանքը իրականացնել առաջնահերթ կարգով և ավելի արագ տեմպերով:

Հանրապետության կապի մինիստրության (ընկ. Ռ. Ավոյան) խնդիրն է շատ կարճ ժամանակամիջոցում հուսալի կապ ապահովել կառավարման բոլոր մարմինների, ամբողջ տուժած գոտու հիմնական արտադրական և կենսապահովման օբյեկտների միջև:

Վերականգնման ու շինարարական աշխատանքների հստակ կազմակերպումը շատ բանով կախված է նաև նյութատեխնիկական մատակարարման ամբողջ համակարգի աշխատանքի ճիշտ կարգավորումից: Հայկական ՍՍՀ պետմատը (ընկ. Ս. Ստեփանյան) պետք է ստեղծի նյութատեխնիկական ռեսուրսների կառավարման ճկուն համակարգ, ժամանակին որոշի պահանջմունքը և ապահովի առաքումը: Նե-

նինականում, Կիրովականում, Սպիտակում անհրաժեշտ է անհապաղ ծավալել կոմիտեի մշտական ներկայացուցչություններ, ստեղծել համապատասխան ծառայություններ և պահեստային տնտեսություններ: Առանձնակի ուշադրություն է պահանջում ապրանքների խստիվ հաշվառման, հաշվետվության և դրանց փոխադրման վերահսկողության իրականացումը:

Հանրապետական մինիստրություններն ու գերատեսչությունները, տեղական սովետների գործկոմները պետք է հատուկ ուշադրություն նվիրեն քաղաքների և գյուղերի կոմունալ-կենցաղային ծառայությունների, ջրամատակարարման, ջերմամատակարարման, էլեկտրամատակարարման, գազամատակարարման, սանիտարական մաքրման ձեռնարկությունների վերականգնմանը և դրանց ներդաշնակ աշխատանքի ապահովմանը: Այդ բոլոր ուղղություններով մշակված են կոնկրետ միջոցառումներ, որոնց իրականացումը պետք է գտնվի տեղական կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների անդուլ վերահսկողության տակ:

Նախատեսվում է զգալիորեն ընդլայնել հանրապետության տուժած շրջաններում բնակչության և շինարարական կազմակերպությունների առևտրական ու կենցաղային սպասարկման գոտին: Արդեն 1989 թվականի առաջին կիսամյակում պետք է վերականգնվեն և թեթև կոնստրուկցիաներից կառուցվեն 26 հազար քառակուսի մետր առևտրական տարածքներ, 13 հազար տեղով հասարակական սննդի ձեռնարկություններ, 15 հազար քառակուսի մետր ընդհանուր ապրանքային պահեստներ:

Այսօր անհրաժեշտ է հիմնական ուշադրությունը նվիրել յուրաքանչյուր տուժած քաղաքում ու բնակավայրում առևտրական-պահեստային ցանցի ստեղծմանը այնպիսի ծավալներով, որոնք լրիվ ապահովեն բնակչության պահանջմունքները:

Մեծ ուշադրություն են պահանջում տուժած քաղաքացիներին կազմակերպված ձևով ֆինանսական և նյութական օգնություն ցույց տալու հարցերը:

Սակայն ամենուրեք չէ, որ այդ շատ պատասխանատու աշխատանքին հարկ եղած ըմբռնումով են մոտենում: Հանրապետության պետապը, ՍՍՀՄ խնայողական բանկի Հայաստանի հանրապետական բանկը մինչև օրս չեն կազմակերպել հստակ աշխատանքը, ձգձգում են նյութական վնասի գնահատումն ու փոխհատուցումը: Հանրապետության ֆինանսների մինիստր ընկ. Ջ. Ջանոյանը, որի վրա են դրված այդ աշխատանքի կոորդինացումն ու ղեկավարումը, պետք է ձգտի էական բեկման հասնել այդ գործում: Անթույլատրելի է, որ ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետների առանձին գործկոմներ տեղերում այդ աշխատանքը պատշաճ ձևով չեն կազմակերպել:

Այսօր աշխատանքներ են ծավալվում բոլոր տուժած բնակավայրերում բուժսպասարկման ցանցը զարգացնելու, ստացիոնարներ ստեղծելու, շտապբուժօգնության աշխատանքը կազմակերպելու համար: Հանրապետության առողջապահության մինիստրությունը ՍՍՀՄ առողջապահության մինիստրության հետ համատեղ մշակել է այդ ուղղությամբ կատարվելիք աշխատանքների կոնկրետ ծրագիր: Խնդիրն այն է, որ բոլոր մինիստրություններն ու գերատեսչությունները, տեղական շտաբները, կուսակցական և սովետական մարմինները գործնականորեն օժանդակեն այդ ծրագրի իրականացմանը, որ ոչ մի մարդ, ոչ մի բնակավայր բուժվերահսկողությունից դուրս չմնա: Միաժամանակ առողջապահության մինիստրությունը բնակկոմունտընտմինի հետ համատեղ պետք է կանոնավոր կերպով մանրէաբանական վերահսկողություն սահմանի օգտագործվող ջրի որակի նկատմամբ:

Երկրաշարժի ողբերգական հետևանքներից մեկը հաշմանդամների թվի զգալի ավելացումն է, որոնք ոչ միայն կենսաթոշակային ապահովման, այլև պրոթեզավորման կարիք ունեն: Նրանց օգնություն ցույց տալու համար անհրաժեշտ է հանրապետությունում արագացված տեմպերով վերակառուցել համապատասխան ձեռնարկությունները, որոնցում նախատեսվում է կազմակերպել փոխագուցավոր պրոթեզների թողարկում: ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հավանություն են տվել կարմիր խաչի ու կարմիր մահիկի ընկերությունների միության, կարմիր խաչի ու կարմիր մահիկի ընկերությունների լիգայի նախաձեռնությանը հանրապետությունում ողնաշարի և ողնուղեղի վնասվածքներ ունեցող հիվանդների համար հատուկ կենտրոնի, ինչպես նաև պրոթեզների ձեռնարկության կառուցման վերաբերյալ:

Հաշմանդամ դարձած յուրաքանչյուր մարդ պետք է շրջապատված լինի համընդհանուր հոգատարությամբ և ուշադրությամբ: Հանրապետության սոցապմինը (ընկ. Ն. Բալայան), տեղական սովետների գործկոմները պետք է օպերատիվորեն լուծեն նրանց կենսաթոշակային ապահովման, աշխատանքի և կենցաղի կազմակերպման



հարցերը, ինչպես նաև աղետյալ գոտու բոլոր միայնակ զառամյալ քաղաքացիների տնային սպասարկման հարցերը:

Զգալի աշխատանք պետք է կատարվի ժողովրդական կրթության համակարգի վերականգնման ուղղությամբ: Այսօր հանրապետության սահմաններից դուրս էվակուացված են ավելի քան 37 հազար երեխաներ: Մոտավորապես 23 հազար սովորողներ են էվակուացվել հանրապետության քաղաքներ ու գյուղեր, մի քանի հազարը գտնվում են մեր պանսիոնատներում ու առողջարաններում: Միաժամանակ տուժած գոտում շարունակում են մնալ դպրոցական ու նախադպրոցական տարիքի մոտ 80 հազար երեխաներ: Ստեղծված իրադրության մեջ հանրապետության ժողովրդական կրթության մինիստրությունից պահանջվում էր անհապաղ մշակել ինչպես էվակուացված, այնպես էլ տեղերում մնացած երեխաների ուսումնական պրոցեսի կազմակերպման հստակ ու կոնկրետ ծրագիր: Սակայն հանրապետության մինիստրության ղեկավարությունը (ընկ. Ս. Հախումյան) շատ դանդաղ է աշխատում այդ ուղղությամբ, փաստորեն լուրջ քայլեր չի ձեռնարկել ուսումնական ու դաստիարակչական պրոցեսների կարգավորման համար:

Ժողովրդական կրթության հարցերի լուծմանը մենք, անկասկած, պետք է առաջնային նշանակություն տանք: Ժողովրդական կրթության մինիստրությունը, տեղական սովետների գործկոմները պետք է անհապաղ, ամենասեղմ ժամկետներում բոլոր միջոցները ձեռնարկեն ամենուրեք կազմակերպելու ուսումնական պրոցեսը, այդ նպատակների համար օգտագործելով պիտանի շենքերը, տնակները, վրանները, ուրիշ շենքեր, ինչպես նաև պարապմունքների երկհերթ-եռահերթ ռեժիմը: Ոչ մի դպրոցական արհեստականորեն չպետք է դառնա երկտարեցի մեր անկազմակերպվածության պատճառով:

Երկրաշարժը հսկայական վնաս հասցրեց մշակույթի հիմնարկների նյութատեխնիկական բազային, պատմական ու ճարտարապետական հուշարձաններին: Անհրաժեշտ է ոչ միայն պահպանել ու վերականգնել բոլոր մշակութային արժեքները, թանգարանային ցուցանմուշները, այլև շարունակել տուժած գոտու բնակչության ակտիվ մշակութային սպասարկումը:

ՀԱՄԽ-ը, ՀԼԿԵՄ Կենտկոմը, հանրապետության կուլտուրայի մինիստրությունը և ստեղծագործական միությունները պետք է ուժեղացնեն աշխատանքը երկրաշարժից տուժած բնակչության, ինչպես նաև տարերային աղետի գոտում աշխատող մեծաթիվ շինարարական ջոկատների կուլտուրական պահանջմունքների լրիվ բավարարման ուղղությամբ:

Մենք պետք է առհավետ պահպանենք երկրաշարժի զոհերի հիշատակը: Այսօր քաղաքաշինական խնդիրները լուծելիս անհրաժեշտ է նախատեսել համաժողովրդական ողբերգության հուշարձանների, կոթողների, հուշահամալիրների ստեղծում:

Ներկա ծայրաստիճան դժվարին իրավիճակում մեծ պահանջներ են ներկայացվում գաղափարախոսական հիմնարկների, մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեությանը: Անհրաժեշտ է խոր, փաստարկված և համոզիչ կերպով մարդկանց հասցնել աղետյալ գոտու քաղաքների, ավանների, գյուղերի, ձեռնարկությունների, ամբողջ սոցիալ-կուլտուրական ու տնտեսական պոտենցիալի վերականգնման և շինարարության վերաբերյալ կուսակցության ու կառավարության նախատեսած միջոցառումների բովանդակությունն ու պատմական նշանակությունը: Մամուլի հանրապետական օրգանները, հեռուստատեսությունը և ռադիոն պետք է ուժեղացնեն շեֆական օգնությունը աղետյալ գոտու քաղաքներին ու գյուղերին, այնտեղ կազմակերպեն իրենց թղթակցական կետեր, թերթերի էջերում և հեռուստաէկրանին ստեղծեն հատուկ խորագրեր, սիստեմատիկ վերահսկողության տակ առնեն վերականգնման աշխատանքների ընթացքը, բնակչությանը լայնորեն ու հետևողականորեն բացատրեն երկրաշարժի հետևանքների վերացման նպատակով ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների ժողովրդատնտեսական ու քաղաքական նշանակությունը:

Դեռևս անբավարար է կազմակերպված մամուլի առաքումն ու տարածումը աղետյալ գոտում հայտնված բնակավայրերում, ինչպես նաև երկրի այն քաղաքներում ու շրջաններում, ուր Հայաստանից դուրս են բերվել երկրաշարժից տուժածների մեծ խմբեր: Այս ուղղությամբ պահանջվում է իրականացնել լրացուցիչ միջոցառումներ, մարդկանց ապահովելու բավարար քանակությամբ թերթերով ու հանդեսներով, բոլոր անհրաժեշտ ինֆորմացիայով:

Ընկերներ: ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումներով նախատեսված խոշորամասշտաբ միջոցառումների իրագործումը մեծ, որակապես նոր խնդիրներ է առաջադրում հանրապետական կուսակցական կազմակերպությանը:

Օրակարգում դրված բացառիկ կարևոր տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծումը զգալի ջանքեր է պահանջում դրանց կազմակերպական ապահովման համար, պահանջում է փոխել մոտեցումները ներկուսակցական ու կադրային աշխատանքի նկատմամբ, հաշվի առնել աղետյալ գոտում կյանքի վերականգնման ու նորմալացման պրոցեսի ղեկավարման գործում վերջին մեկ ամսվա ընթացքում կուտակված փորձը: Այդ պայմաններում կուսակցության քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները քաղաքական հասունության, կոլեկտիվները արդյունավետորեն կառավարելու, ծայրաստիճան դժվարին պայմաններում ճկունորեն կողմնորոշվելու կարողության իսկական քննություն են բռնում:

Հանրապետությանը պատուհասած հսկայական աղետի ողբերգական ժամերին և օրերին մարդկանց փրկելու և երկրաշարժի հետևանքները վերացնելու աշխատանքը գլխավորեցին կոմունիստները, հանդես բերելով մեծագույն պատասխանատվություն և անձնվեր հավատարմություն իրենց պարտքին: Տեղերում եռանդագին էին գործում օպերատիվ շտաբները կուսակցության քաղկոմների ու շրջկոմների առաջին քարտուղարների գլխավորությամբ:

Տարերային աղետը միաժամանակ ի հայտ բերեց նաև մեր գաղափարախոսական, կազմակերպչական ու տնտեսական աշխատանքի թույլ կողմերը: Պատուհասած աղետը լուրջ փորձություն եղավ մեզանից յուրաքանչյուրի համար, և ամենևին էլ ոչ բոլորը դիմացան այդ փորձությանը: Երբեմն դրսևորվում էին անպատասխանատվություն, անձեռնհասություն և անզորություն:

Մենք թևակոխել ենք երկրաշարժի հետևանքների վերացման աշխատանքների երկրորդ փուլը: Շատ տեղերում արդեն ստեղծված է ու շարունակում է ստեղծվել շինարարական աշխատանքների ճակատ, ձևավորվում են աշխատավորական կոլեկտիվներ: Կուսակցության քաղկոմները և շրջկոմները պետք է ապահովեն սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության վերսկսումը:

Կարևոր խնդիր է ժամանակավոր կուսկազմակերպությունների ստեղծումը շինարարների կոլեկտիվներում, որոնց թիվը ավելի ու ավելի է մեծանում: Հարկավոր է լավ կշռադատել նրանց գործողությունների կոորդինացման ձևերը, այդ կոլեկտիվներում կուսակցական-քաղաքական աշխատանք տանելու մեթոդները, հոգալ գործունյա, մարտական ակտիվի ստեղծման մասին:

Նկատի ունենալով, որ երկրաշարժի հետևանքով զոհվել են շատ ղեկավարներ, մասնագետներ, անհրաժեշտ է անհապաղ լուծել կադրային կորպուսի համալրման, աղետյալ գոտում կառավարման նոր կազմակերպական կառուցվածքների ստեղծման հարցերը:

Լուրջ պրոբլեմները դեռ պահպանվում են գյուղում: Դրության կայունացման, կյանքի կարգավորման գործում անհրաժեշտ է բարձրացնել գյուղական շրջկոմների, տեղական սովետների գործկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերը: Անհասկանալի է որոշ շրջկոմների դանդաղկոտությունը տեղերում կազմակերպական-կուսակցական աշխատանքի կարգավորման գործում: Չի կարելի բարձիթողի անել մեր ամենօրյա կուսակցական ու սովետական աշխատանքը՝ թե իբր արտակարգ պատահարը ամեն ինչ կհարթի: Չի հարթի: Ընդհակառակը, արտակարգ իրավիճակը միայն սրում է թերությունները ու բացթողումները: Մենք արդեն հնարավորություն ունեցել ենք դրանում համոզվելու:

Ձգտելով հասնել երկրաշարժի հետևանքների վերացման պրոցեսների վրա սկզբնական կուսկազմակերպությունների ներգործության ուժեղացման, կենսագործունեության բոլոր ոլորտների վերականգնման՝ մենք պարտավոր ենք արմատապես փոխել նրանց ղեկավարման պրակտիկան: Դա նախ և առաջ կապված է կուսակցության քաղկոմների և շրջկոմների աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործման հետ:

Երկրաշարժի հետևանքների վերացմանը ակտիվորեն մասնակցում են հանրապետության ժողովրդական վերահսկողության աշխատողները: Երկրի ժողովրդական վերահսկողության կոմիտեի հետ համատեղ, այդ կոմիտեի նախագահի տեղակալ ընկ. Վ. Ի. Մանանի գլխավորությամբ նրանք մշակել և իրականացնում են օդանա-



վակայաններում և երկաթուղային կայարաններում ստացված բեռների ընդունման, բեռնաթափման, փոխադրման և հաշվառման, ինչպես նաև դրանց պահպանության ապահովման միջոցառումների համակարգ:

Այսօր հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեի աշխատանքի գլխավոր ուղղությունը պետք է դառնա բոլոր օբյեկտների կառուցման ու վերակառուցման ծրագրի կատարման ընթացքի, հանրապետության ժողովրդական տնտեսության վերականգնմանը հատկացված միջոցների ռացիոնալ ու խնայողական ծախսման անհրաժեշտ վերահսկողության ապահովումը:

Մեծ խնդիրներ են դրված հանրապետության արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների առջև:

Անհրաժեշտ է ռացիոնալ կերպով օգտագործել երիտասարդության ուժերը երկրաշարժի հետևանքների վերացման գործում: Հանրապետության կոմերիտմիության Կենտկոմը պետք է ընդհուպ զբաղվի երիտասարդական և ուսանողական շինարարական ջոկատների ձևավորման ու տեղաբաշխման հարցերով, մի շարք օբյեկտներ հայտարարի հարվածային կոմերիտական կառույցներ:

Իրավապահ մարմինների խնդիրն է ապահովել պատշաճ հասարակական կարգ, ակտիվորեն նպաստել ռեգիոնում վերականգնման աշխատանքների հաջող կազմակերպման համար հանգիստ, նորմալ իրադրության ստեղծմանը:

Ընկերներ:

Տարերային աղետը հանրապետությանը պատուհասեց Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի կապակցությամբ ստեղծված իրավիճակի սրման պահին:

Այդ սուր պրոբլեմի շուրջն առաջացած բազմամսյա ճգնաժամը երկու հանրապետություններն էլ փակուղի մտցրեց: Երկու հարևան ժողովուրդները հայտնվեցին ծայրաստիճան վտանգավոր սահմանագծի մոտ:

Առճակատման հոգեբանությունը ծայրաստիճան շիկացավ, առաջ բերեց բնակչության զանգվածային արտագաղթ, տասնյակ հազարավոր մարդկանց տառապանքներ: Հանդիմանությունների ու մեղադրանքների ուժեղացած կամպանիան չէր կարող պրոբլեմը լուծել: Երկպառակության պահպանումը հանգեցնում էր ոչ թե ճշմարտության և արդարության, այլ տանում դեպի անդունդ:

Հեշտ չէր դժվարին, արտակարգ սուր իրավիճակից ելք գտնելը: Չէ որ մի կողմից այստեղ բախվել էին ժողովրդական լայն զանգվածների տրամադրությունները ու իղձերը, որոնք արդարացիորեն ցավոտ սոցիալական պրոբլեմների լուծումն են սպասում, մյուս կողմից՝ «Ղարաբաղ» կոմիտեի լիդերների արկածախնդրական գործունեությունը, որոնք դեմոկրատիայի մեխանիզմն ու ռեալ դժվարությունները օգտագործում էին կրքեր բորբոքելու և հասարակական կարծիքը շահարկելու համար: Ղարաբաղի հարցի արդարացի լուծման պահանջի քողի տակ նրանք բացահայտ պայքար էին սկսել իշխանության համար: Ընդ որում կանգ չէին առնում մարդկանց անկարգությունների դրդելու, չարամիտ լուրեր տարածելու, իշխանության ներկայացուցիչների վրա ճնշում գործադրելու, վերջնագրեր ներկայացնելու առջև:

Դրությունը խորանում էր նրանով, որ այդ ձգձգված, ժամանակ առ ժամանակ հոգնեցուցիչ դիմակայության ընթացքում ի հայտ եկավ մասսաների մեջ համոզիչ ու փաստարկված կերպով կենդանի աշխատանք տանելու մեր գաղափարախոսական աշխատողների, ասենք նաև մեր կուսակցական կոմիտեների անկարողությունը: Դա էր քաղաքական իրադրության ամբողջ բարդությունը, ես կասեի՝ իրադարձությունների զարգացման ողբերգականությունը, որը մեզ կանգնեցրեց ճգնաժամի եզրին:

Իսկ ո՞ւմ պատժեցին նրանք, ովքեր գործադուլներ էին սադրում: Ամենից առաջ շարքային բանվորներին ու մասնագետներին, որոնք զրկվեցին աշխատավարձից, մեր երիտասարդությանը, որի ուսումնական տարին փաստորեն ձախողվեց, աշխատավորական կոլեկտիվներին, որոնք շահույթ չստացան և պարտքի մեջ խրվեցին, մեր ամբողջ հանրապետությանը, որը խիստ հետ մնաց սոցիալ-տնտեսական զարգացման մեջ, սկսեց կորցնել տնտեսական կապերի գծով հուսալի պարտնյորի հեղինակությունը:

Այս դժվարին, բարդ պայմաններում պահանջվում էր մեծագույն պատասխանատվություն երկու ժողովուրդների բախտի համար, երկու հանրապետությունների բարիդրացիական հարաբերությունների ապագայի համար: Այդ պատասխանատվությունը թելադրվում էր բոլոր սովետական ժողովուրդների, ամբողջ երկրի կենսական, երկարաժամկետ շահերով, հեղափոխական վերակառուցման շահերով:

Ինչպես գիտեք, հունվարի 12-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը քննարկեց Լեռնային Ղարաբաղի և նրա շուրջն ստեղծված իրադրությանն առնչվող հարցը: Հաշվի առնելով Հայկական ՍՍՀ և Ադրբեջանական ՍՍՀ կուսակցական ու պետական մարմինների, ինչպես նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի Ազգությունների սովետի հանձնաժողովի առաջարկությունները և նպատակ ունենալով կանխել ռեգիոնում ազգամիջյան հարաբերությունների հետագա սրումը, կայունացնել իրադրությունը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը ՍՍՀՄ սահմանադրությանը համապատասխան, նպատակահարմար գտավ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում ժամանակավորապես մտցնել կառավարման հատուկ ձև՝ պահպանելով Լեռնային Ղարաբաղի՝ որպես Ադրբեջանական ՍՍՀ-ի կազմի մեջ մտնող ինքնավար մարզի, ստատուսը: Կազմված է Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հատուկ կառավարման կոմիտե Ա. Ի. Վոլսկու նախագահությամբ:

Ընդունված որոշումը արտասովոր է: Դա իր նմանը չունի մեր պետության պատմության մեջ: ԼՂԻՄ-ի հատուկ կառավարման կոմիտեն գործելու է ՍՍՀ Միության կուսակցական և պետական մարմինների անմիջական ղեկավարությամբ: Իշխանության մարզային մարմինների լիազորությունները դադարեցված են մինչև նոր ընտրությունների անցկացումը: Նրանց ֆունկցիաները կատարելու է Հատուկ կառավարման կոմիտեն, որին հանձնված են կուսակցության մարզկոմի և մարզգործկոմի ապարատները որպես աշխատանքային մարմիններ: Ընդ որում մարզի ինքնավարությունը չի սահմանափակվում:

Կոմիտեի վրա է դրվում ԼՂԻՄ-ի քաղաքական, պետական ու տնտեսական ամբողջ կառավարումը՝ կադրային հարցերից մինչև ինքնաֆինանսավորում: Կոմիտեի ստեղծմամբ մարզը ըստ էության ինքնակառավարում է ստանում պլանավորման, նյութատեխնիկական ապահովման առումով: Մարզը տնտեսական, սոցիալական, մշակութային և մյուս հարցերի լուծման գործում կողմնորոշվելու է ամենից առաջ դեպի կենտրոնացված օգնություն: Դրա համար ՍՍՀՄ պետպլանում հատուկ տող է բացվում ժողովրդատնտեսական պլանի մեջ՝ ԼՂԻՄ-ի գծով: Կոմիտեին իրավունք է տրված անհրաժեշտության դեպքում ԼՂԻՄ-ի պետական, տնտեսական, սոցիալ-կուլտուրական շինարարության հարցերի վերաբերյալ առաջարկություններ ներկայացնել անմիջականորեն ՍՄԿԿ Կենտկոմին, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, միութենական մինիստրություններին ու գերատեսչություններին: Միութենական հանրապետությունների հետ Լեռնային Ղարաբաղի բոլոր կապերը փոխադրվում են իրավահավասար տնտեսական համագործակցության ամուր հիմքի վրա: Ըստ ամենայնի կընդլայնվեն կապերը Հայաստանի հետ, մանավանդ մշակույթի, կրթության, արվեստի, կադրերի պատրաստման բնագավառում:

Հատուկ կառավարման պայմաններում աշխատանքի փորձ մեր երկրում դեռ չկա: Այդ փորձը ձեռք կբերվի: Գլխավորն այն է, որ մշակված է որոշում փոխադարձաբար ընդունելի, խելամիտ փոխզիջման հիման վրա, երկու հանրապետությունների համատեղ համաձայնության հիման վրա: Դա կշռադատված, ռեալ իրադրությամբ թելադրված քայլ է, որը, կարծում ենք, հիմք կստեղծի ռեգիոնում կուտակված ոչ հասարակ հարցերի լուծման համար: Այստեղ չկան հաղթողներ և չկան պարտվածներ: Կա բանականության ու բարի կամքի ընդհանուր հաղթանակ՝ կոչված սկզբնավորելու այն միակ ճիշտ ուղին, որը խաղաղության կհանգեցնի մեր ընդհանուր տան մեջ:

ՍՍՀ Միության գծով միջոցների ձեռնարկումով ոչ միայն չի փոքրանում, այլև ավելի է մեծանում երկու հանրապետությունների պատասխանատվությունը ազգամիջյան հարաբերությունների նորմալացման համար, Լեռնային Ղարաբաղի շուրջն ստեղծված քաղաքական և գաղափարախոսական մթնոլորտի առողջացման, երկու ժողովուրդների ավանդական բարիդրացիության վերածնման համար: Եկել է մի պահ, որից շրջադարձ է սկսվում դեպի խաղաղարարական քայլեր: Մեր ընդհանուր պարտքն է մշակել փոխադարձ կապերի վերահաստատման ամբողջական ծրագիր, ապահովել քաղաքացիների անվտանգության ռեալ երաշխիքներ, պայմաններ ստեղծել, որպեսզի գաղթականները իրենց բնակության մշտական վայրերը վերադառնան: Հարկավոր է մարդկանց վերադարձնել այն անսասան հավատը, որ մենք միայն մեր բոլոր ժողովուրդների համերաշխ ընտանիքում կկարողանանք ապահովել հասարակության առաջադիմությունն ու քաղաքացիների բարօրությունը:



Անհրաժեշտ է կուսակցական կազմակերպությունների, բոլոր կոմունիստների ջանքերն ուղղել իրավիճակի արմատական փոփոխման, հասարակական կյանքի նորմալացման, հանրապետության բոլոր առողջ ուժերի համախմբման նպատակին: Այսօր ամեն մի ազնիվ մարդ պետք է համախմբվի վերակառուցման դրոշի տակ: Եկեք դեմոկրատիայի և հրապարակայնության ծնունդը հանդիսացող ժողովրդական շարժումը մաքրենք օտարամուտ ամեն ինչից, այն բանից, ինչը խանգարում է գլխավոր նպատակին՝ մեր կյանքի բոլոր կողմերի նորացմանը:

Այսօր հանրապետության բոլոր կուսակցական կոմիտեների, բոլոր գաղափարախոսական կազմակերպությունների, մամուլի, հեռուստատեսության, հասարակագետների, ստեղծագործական միությունների խնդիրն է յուրաքանչյուր աշխատավորի, յուրաքանչյուր քաղաքացու մտքին ու սրտին հասցնել ընդունված փաստաթղթի խոր քաղաքական իմաստը, դրա մարդասիրական և ինտերնացիոնալիստական էությունը: Հարկավոր է, ընկերներ, մարդկանց համոզել, որ միակ ճիշտ և արդարացի ուղին փոխզիջման և ոչ թե առճակատման ուղին է:

Մեզ հեշտ աշխատանք չի սպասում: Չէ որ մենք դեռ չենք կարողացել հաղթահարել այն հոգեբանական պատնեշը, որ գոյություն ունի առողջ, ողջամիտ ուժերի և բնակչության առանձին, մոլորության մեջ ընկած խավերի միջև, ի թիվս որոնց, ցավոք սրտի, դասվում է նաև մեր մտավորականության մի մասը:

Վերցնենք թեկուզ մի այսպիսի փաստ: Այն օբյեկտիվ, մերկացնող բնութագրից հետո, որ տրվեց արկածախնդիր տարրերի գործունեությանը, հանրապետության կոմկուսի Կենտկոմում ստացվեցին բազմաթիվ նամակներ ու հեռագրեր, որոնցում պաշտպանություն է հայտնվում մեր սկզբունքային դիրքորոշմանը: Միևնույն ժամանակ ստեղծագործական և գիտական մտավորականության մեջ կան մարդիկ, ովքեր փորձում են արդարացնել ինքնակոչ «լիդերներին», որոնք բնակչության քաղաքականապես տհաս մասին դրդում էին ազգամիջյան երկպառակություն բորբոքող, հանրապետությունը անարխիայի ու քաոսի մեջ գցող հակաիրավական գործողությունների: Դժվար է հասկանալ, թե ինչ սկզբունքներով են ղեկավարվում այդ ընկերները:

Կարծում ենք, որ դա հանրապետության կոմունիստներին, սկզբնական կուսկազմակերպություններին, գիտական և գաղափարախոսական հիմնարկների ղեկավարներին ներկայացվող ցածր պահանջկոտության հետևանք է:

Ուզում եմ ամենայն որոշակիությամբ ասել, որ այդ հարցերում հանրապետության կոմկուսի Կենտկոմի դիրքորոշումը միանշանակ և սկզբունքային է: Օրերս Կենտկոմի բյուրոն խիստ գնահատական տվեց հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական և իրավապահ մարմինների առանձին ղեկավարների անսկզբունք դիրքորոշմանը, որոնք ներողամտաբար էին վերաբերվում, իսկ տեղ-տեղ նաև նպաստում էին ազգամիջյան երկպառակության բորբոքմանը: Կուսակցական խիստ պատասխանատվության են ենթարկված կուսշրջկոմների մի շարք առաջին քարտուղարներ, շրջգործկոմների նախագահներ, մինիստրությունների, իրավապահ մարմինների ղեկավարներ:

Մենք այսուհետև էլ վճռականորեն խիստ պատասխան կպահանջենք պաշտոնատար անձանցից՝ ոչ միայն նրանցից, ովքեր իրենց անպատասխանատու գործողություններով սրում են լարվածությունը, այլև նրանցից, ովքեր պասիվություն, անվճռականություն են հանդես բերում, մի կողմ են կանգնած բոլոր նրանց դեմ մղվող անզիջում պայքարից, ովքեր խանգարում են հանրապետության իրադրության նորմալացմանը:

Այսօր, ընկերներ, նոր հնարավորություններ են բացվում դաստիարակչական, քաղմասսայական աշխատանք տանելու համար: Հետևողականորեն իրագործվում են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումի նախատեսած ծրագրային խնդիրները: Կոնկրետ քայլեր են արվում հանրապետության գաղափարաբարոյական կլիմայի առողջացման, սոցիալ-տնտեսական ու հոգևոր ոլորտի ցավոտ հարցերի լուծման ուղղությամբ: Որոշում է ընդունված Հայաստանի ատոմակայանը փակելու մասին: Գտնված է Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի փոխզիջումային լուծում: Այս բոլոր գործոնները պետք է ակտիվորեն օգտագործել հանրապետության իրադրությունը առողջացնելու, երկրաշարժի հետևանքների վերացման վրա բոլոր ուժերը կենտրոնացնելու նպատակով:

Հիմա ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների նախապատրաստական աշխատանք է տարվում: Այդ ուղղությամբ մեր գործունեության պլատֆորմը պետք է դառնա ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը «Կուսակցությանը, սովետական ժողովրդին», որն ընդունվեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1989 թվականի հունվարի 10-ին: Առաջիկա կամպանիայի հաջողությունը կախված է նրանից, թե ինչ մակարդակով կընթանա մեր քաղաքական ու կազմակերպական աշխատանքը: Չենք ուզում թաքցնել, որ մեր կուսակցական կազմակերպությանը բարդ ու տքնաջան աշխատանք է սպասում: Կուսակցական կազմակերպությունները պետք է ամեն ինչ անեն, որպեսզի իշխանության գերագույն մարմնում ընտրվեն արժանավոր մարդիկ, վերակառուցման իդեալներին, ժողովրդի և կուսակցության արմատական շահերին մինչև վերջ նվիրված, մաքուր սրտի տեր ու վեհ գաղափարներով տոգորված մարդիկ:

Ընկերներ:

Ավերիչ երկրաշարժը և ազգամիջյան հարաբերությունների սրման հողի վրա տեղի ունեցած հայտնի դեպքերը, սոցիալ-տնտեսական զարգացման մեջ առաջացած ճգնաժամային վիճակը մեր ժողովրդին, ամբողջ հանրապետությանը կանգնեցրին շատ ծանր փորձության առջև: Այդ փորձությանը դիմանալու, ընդ որում վերակառուցման ու դեմոկրատացման բարդ և պատասխանատու փուլում դիմանալու համար անհրաժեշտ են բացառիկ տոկունություն և անձնվիրություն, բոլոր ուժերի և հնարավորությունների անսահման մոբիլիզացում: Հարկավոր է կուսակցական, սովետական, տնտեսական և հասարակական կազմակերպությունների ակտիվ, նպատակամետ կազմակերպչական ու քաղաքական աշխատանք, հարկավոր է բարձրացնել մեզանից յուրաքանչյուրի մարտականությունն ու պատասխանատվությունը՝ շարքային կոմունիստից մինչև ղեկավար: Այսօր սա է ստեղծարար գործերի, հանրապետության նորացման համար ժողովրդի բոլոր ուժերը համախմբելու հիմքը:

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1989 թվականի հունվարի 17-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 13-րդ պլենումը: Պլենումին հրավիրվել էին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժինների վարիչները, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների առաջին քարտուղարները, որոնք չեն մտնում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և վերստուգիչ հանձնաժողովի կազմի մեջ:

Պլենումը քննարկեց հանրապետության կուսակցական կոմիտեների ապարատի կառուցվածքի վերակազմման և կուսակցական ղեկավարման կատարելագործման՝ դրանից բխող խնդիրների հարցը:

Այդ հարցի առթիվ ինֆորմացիայով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը:

Հանրապետության կուսակցական կոմիտեների ապարատի նոր կառուցվածքը մշակվել է՝ տեղերից ստացված կոնստրուկտիվ առաջարկությունները հաշվի առնելով: 30 տոկոսով կրճատվում է Կենտրոնական կոմիտեի պատասխանատու աշխատողների թվակազմը, 17-ի փոխարեն կլինի 8 բաժին՝ կազմակերպական-կուսակցական և կադրային աշխատանքի, գաղափարախոսական, սոցիալ-տնտեսական, ագրարային, պետական-իրավական, ընդհանուր բաժին և գործերի կառավարչություն: Մինչև վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողովի ստեղծումը պահպանվում է Հայաստանի կոմկուսի Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության հանձնաժողովը:

Նպատակահարմար գտնվեց կազմել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 6 հանձնաժողով՝ կազմակերպական-կուսակցական և կադրային աշխատանքի հարցերի, գաղափարախոսական, սոցիալ-տնտեսական զարգացման, ագրարային քաղաքականության, պետական-իրավական քաղաքականության, ազգամիջյան հարաբերությունների հարցերի: Պլենումը հաստատեց Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի հանձնաժողովների անհատական կազմը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Պլենումը Յու. Պ. Կոչետկովին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղարի և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից՝ ՍՄԿԿ Կենտկոմի տրամադրության տակ կանչվելու կապակցությամբ, Կ. Հ. Ղամբարյանին՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարի և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ, Ֆ. Տ. Սարգսյանին՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ, Մ. Ա. Յուզբաշյանին՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածուի պարտականություններից՝ այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ:

Պլենումը գաղտնի քվեարկությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար և բյուրոյի անդամ ընտրեց Օ. Ի. Լոբովին:

Պլենումը գաղտնի քվեարկությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար և բյուրոյի անդամ ընտրեց Մ. Ա. Սերոբյանին:

Պլենումը գաղտնի քվեարկությամբ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Վ. Մ. Մարգարյանցին ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամ և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամ:

Պլենումը գաղտնի քվեարկությամբ Հայկական ՍՍՀ պետանվտանգության կոմիտեի նախագահ Վ. Գ. Բաղդամյանցին ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամ և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժինների վարիչներ հաստատեց. կազմակերպական-կուսակցական և կադրային աշխատանքի՝ Ռ. Յա. Հակոբյանին, գաղափարախոսական՝ Գ. Ս. Ասատրյանին, սոցիալ-տնտեսական՝ Գ. Գ. Հարությունյանին, ագրարային՝ Մ. Ս. Գրիգորյանին, ընդհանուր՝ Լ. Խ. Չախմախչյանին, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գործերի կառավարիչ հաստատվեց Լ. Գ. Յոլչյանը:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ն. Ն. Սլյունկովը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր Դ. Տ. Յազովը:

---

## ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրություններ

# ԺՈՂՈՎՐԴԻ ԼԻԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

**Ն. ՍՏԵՓԱՆՅԱՆ**

ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ԳՈՒՄԱՐՄԱՆ Գերագույն սովետի արտահերթ տասներկուերորդ նստաշրջանի որոշմամբ մարտի 26-ին կանցկացվեն ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրություններ: Այդ ընտրություններն աննախադեպ են, քանի որ միշտ մեզ ծանոթ և մեզ համար սովորական ընտրական համակարգի մեջ այժմ մտցված են նոր ու լայն դեմոկրատական սկզբունքներ:

Համամիութենական կուսակցական XIX կոնֆերանսի որոշումներին համապատասխան առաջիկա ընտրությունների ընթացքում կիրականացվի քաղաքական ռեֆորմի գլխավոր գաղափարը՝ սովետների լիիշխանությունը: Դա առաջադիմական խոշոր քայլերից է սովետական հասարակության հեղափոխական նորացման ճանապարհին:

ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրություններն անցկացվում են հասարակական հարաբերությունների բոլոր կողմերի շեշտակի վերակառուցման ժամանակաշրջանում: Ընդ որում, ինքը՝ վերակառուցումը, ստրատեգիայի մշակման փուլից այժմ անցել է պրակտիկ գործերի փուլին, որը շատ ավելի բարդ է ու տարողունակ:

Էկոնոմիկայի ոլորտում վերակառուցումը այժմ փոխադրվում է ներքև՝ դեպի յուրաքանչյուր հաստոց, շինարարական տեղամաս, ֆերմա, դեպի տեղական մարմինը, շոշափում է կոնկրետ մարդկանց շահերը: Այս տարի ժողովրդական տնտեսության բոլոր ձեռնարկություններն անցնում են տնտեսավարման նոր պայմանների, իսկ վարձակալությունն ու կապալը, տարբեր տեսակի կոոպերատիվների զարգացումը ավելի ու ավելի մեծ թափ են ստանում:

Անցած երեքուկես տարում արմատապես փոխվել է սոցիալ-հոգեբանական իրադրությունը: Դեմոկրատացման ու հրապարակայնության շնորհիվ նոր որակ է ստացել մարդկանց քաղաքական մտածողության ինքնուրույնությունը, սովորական են դառնում կարծիքների պլյուրալիզմը, դրանց բախումն ու համադրումը:

Առավել ակնհայտ են փոփոխությունները մեր քաղաքական վերնաշենքի բոլոր օղակների գործունեության մեջ: Կատարելագործվում, փոխվում են պետական կառավարման մարմինների համակարգն ու ֆունկցիաները, ընդլայնվում են հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների իրավունքները, ակտիվորեն անում են հասարակական նոր կազմավորումները: Այս ամենը ժամանակի շոշափելի նշաններն են, որում ծավալվում է ընտրական կամպանիան:

Ընտրությունների ընթացքում մենք պետք է ձևավորենք երկրի պետական իշխանության՝ աշխատանքի բովանդակությամբ և ֆունկցիաներով նոր բարձրագույն մարմին: ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարը և դրա կողմից ընտրվող Գերագույն սովետը կկազմեն անհամեմատ ավելի լայն ներկայացուցչական համաժողով, որն արտահայտում է ոչ միայն տերիտորիալ միավորների և ազգային-պետական կազմավորումների աշխատավորների կամքը, այլև բնակչության յուրաքանչյուր սոցիալական խավի՝ կոմունիստների և անկուսակցականների, բանվորների և

---

*ՍՏԵՓԱՆՅԱՆ ՆԵԼԼԻ ՊԵՏՐՈՍԻ— Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության քարտուղար:*

կոլտնտեսականների, երիտասարդության ու վետերանների, կանանց, ստեղծագործական աշխատողների, ըստ հետաքրքրությունների ընկերությունների մեջ միավորված մարդկանց շահերը: Այսինքն, առանց խախտելու ներկայացուցչական դեմոկրատիայի ստեղծված ձևերը, դրանք լրացվում են աշխատավորների շահերն արտահայտելու և պաշտպանելու, բնակչության պահանջմունքների ողջ բազմազանությունը հաշվի առնելու նոր միջոցներով:

Այժմ ծավալված ընտրական կամպանիայի ընթացքում մենք իրականացնում ենք 1988 թվականի դեկտեմբերի 1-ին ընդունված «ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների մասին» օրենքով սահմանված նոր համակարգը: Հենվելով այդ համակարգի վրա՝ կլուծվի երկրի իշխանության բարձրագույն մարմինը վերակազմելու արմատական հարցը, որով մեծապես պայմանավորված է մեր վաղվա օրը, վերակառուցման բախտը, երկրի ապագան:

Ահա թե ինչու ներկա ընտրական կամպանիան և՛ շատ կարևոր է, և՛ դրա հետ մեկտեղ բավական բարդ: Ընտրությունների մասին օրենքում շատ նորություններ կան ինչպես սկզբունքային, այնպես էլ պրոցեդուրային հարցերում: Այդ նոր դրույթներից մի քանիսը փորձարկվել են տեղական սովետների վերջին ընտրություններում, երբ փորձի կարգով իրականացվում էր բազմամանդատային համակարգը:

Այդ փորձը, իհարկե, կարևոր է: Բայց այն չի տալիս մեզ առաջիկա ընտրությունների շատ ու շատ հարցերի պատասխանը: Ուստի այժմ չափազանց կարևոր է ընտրական կամպանիայի կազմակերպմանը մասնակցող յուրաքանչյուրի՝ աշխատավորական կոլեկտիվների, կուսակցական կազմակերպությունների, տեղական սովետների բարձր պատասխանատվությունը: Այդ պայմաններում սովետները, նրանց գործկոմները պետք է ցուցաբերեն իրադրության կատարյալ ըմբռնում, դեմոկրատացման պրոցեսներին համապատասխանող արդյունավետ, ոչ ստանդարտ գործողություններին պատրաստ լինելու ունակություն:

Փոխվել և զգալիորեն աճել է աշխատավորների քաղաքական ակտիվությունը: Նրանք ցանկանում են ի դեմս իրենց դեպուտատների տեսնել այնպիսի մարդկանց, ովքեր աչքի են ընկնում ոչ թե պաշտոններով ու կոչումներով, ոչ թե փքուն ճառերով ու անիրական խոստումներով, այլ իսկական հեղինակությամբ, հանուն սոցիալիզմի ակտիվորեն աշխատելու պատրաստակամությամբ, հասարակական գործունեության ընդունակությամբ, ազնվությամբ, օրինավորությամբ, սկզբունքայնությամբ:

Նոր օրենքը մեր ընտրական համակարգի արմատական նորացումն է բառիս լայն իմաստով, այն թույլ է տալիս իշխանության բարձրագույն մարմինը մոտեցնել աշխատավորներին: Այդ նպատակներին է ծառայում ընտրությունների ավելի հետևողական դեմոկրատիզմը ըստ տերիտորիալ և ազգային-տերիտորիալ օկրուգների:

Մեր հանրապետությունում կազմված է 8 տերիտորիալ և 32 ազգային-տերիտորիալ ընտրական օկրուգ: Օկրուգային ընտրական հանձնաժողովների կազմավորումը հանրապետությունում սկսվել է օրենքով սահմանված ժամկետներում: Սակայն դեկտեմբերի 7-ին տեղի ունեցած ավերիչ երկրաշարժը լուրջ դժվարություններ առաջացրեց առանձին շրջաններում և քաղաքներում աշխատանքը իրականացնելու համար: Այդ կապակցությամբ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության առաջարկությամբ ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների կենտրոնական ընտրական հանձնաժողովը Արագածի շրջանը դուրս բերեց Էջմիածնի № 739 տերիտորիալ օկրուգի կազմից և մտցրեց Լենինականի № 737 տերիտորիալ ընտրական օկրուգի մեջ: Միաժամանակ թույլատրվեց Լենինականի՝ Մոսկովյան № 395, Լենինականի Շիրակյան № 396 և Ախուրյանի № 403 ազգային-տերիտորիալ ընտրական օկրուգներում ընտրական հանձնաժողովներ կազմել ավելի ուշ ժամկետներում, երբ աշխատավորական կոլեկտիվների անդամները կսկսեն աշխատանքը և պայմաններ կստեղծվեն ժողովներ անցկացնելու համար:

Հանրապետությունում կազմված բոլոր օկրուգային ընտրական հանձնաժողովներում աշխատավորական կոլեկտիվներից, դրանց խորհուրդներից, հասարակական կազմակերպություններից, ինչպես նաև ըստ բնակության վայրի ընտրողների ժողովներից և զինծառայողների ժողովներից՝ ըստ զորամասերի առաջադրվել են ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի ներկայացուցիչներ:

Ընտրությունների կազմակերպման ու անցկացման մասին ընդունված օրենսդրական որոշումները մեր պրակտիկայում առաջին անգամ ռեալ պայմաններ են ստեղծում, որպեսզի ժողովուրդն ինքը անմիջականորեն լուծի քաղաքականության հիմնական հարցերից մեկը՝ կազմավորի իշխանության գերագույն մարմինը՝ ՍՍՀՄ





ժողովրդական դեպուտատների համագումարը: Այդ ուղին անցնում է մասսաների մեջ տարվող հետևողական կազմակերպչական, գաղափարաքաղաքական և դաստիարակչական աշխատանքի միջով: Միայն դրա շնորհիվ կարելի է լիովին օգտագործել ստեղծված հնարավորությունները, միլիոնավոր մարդկանց լայնորեն ներգրավել քաղաքական ակտիվ պրոցեսի մեջ, կազմել գործունակ դեպուտատական մարմին:

Համաշխարհային պրակտիկայում աննախադեպ իրողություն է դեպուտատների ուղղակի ընտրությունը հասարակական կազմակերպությունների կողմից: ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների մեկ երրորդն ընտրվում է հասարակական կազմակերպություններից՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից, արհեստակցական միություններից, կոոպերատիվ կազմակերպություններից, Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միությունից, կանանց, պատերազմի ու աշխատանքի վետերանների, գիտական աշխատողների միավորումներից, ստեղծագործական միություններից, օրենքով սահմանված կարգով ստեղծված և հասարակական մարմիններ ունեցող այլ կազմակերպություններից: Արդեն ավարտված է այդ կազմակերպություններից դեպուտատության թեկնածուների առաջադրման ու գրանցման աշխատանքը:

ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը հաստատեց և հրապարակեց ՍՄԿԿ Կենտկոմի Դիմումը կուսակցությանը, սովետական ժողովրդին, որի մեջ շարադրված է կոմունիստական կուսակցության նախընտրական պլատֆորմը, նրա ծրագիրը երկրի պետական իշխանության բարձրագույն մարմնի գործունեության առաջիկա ողջ ժամանակաշրջանի համար: Կուսակցության պլատֆորմը վերակառուցումն է: Դիմումի մեջ պարզորոշ ասված է. «... կուսակցությունը... սովետական մարդկանց հավաստիացնում է, որ ինքը այսուհետև էլ անշեղորեն կընթանա վերակառուցման ուղիով, բոլոր ուժերը, կոլեկտիվ միտքը և կոլեկտիվ կամքը ներդնելով մեր հասարակության հեղափոխական նորացման մեջ»: Այս փաստաթուղթը մեզ համար պետք է դառնա գործողության ուղեցույց, մեր քաղաքական սիստեմի ռեֆորմի էությունը պարզաբանելու ասպարեզում տարվող ամբողջ աշխատանքի առանցքը:

Ծավալված ընտրական կամպանիայում առանձնահատուկ տեղ է գրավում ժողովրդական դեպուտատների տեղական սովետների աշխատանքը: Խոսքը ընտրություններին առնչվող սովետների ավանդական ֆունկցիաների, ստեղծված ստերեոտիպերի մասին չէ: Ընդհակառակն: Վերակառուցումը, դեմոկրատացումը շատ բան են փոխել ընտրական կամպանիայում իշխանության մարմինների տեղի ու դերի մասին մեր ունեցած պատկերացումների մեջ, ստիպել են նորովի մոտենալ սովետների ու նրանց գործկոմների կոնկրետ լիազորությունների բնորոշմանը:

Գլխավորը, որի վրա նախ և առաջ պետք է ուշադրություն դարձնել, այն է, որ ընտրությունների անցկացումը դրված է ընտրական հանձնաժողովների՝ աշխատավորական կոլեկտիվների, հասարակական կազմակերպությունների, ըստ բնակության վայրի ընտրողների և ըստ զորամասերի՝ զինծառայողների ժողովների ներկայացուցիչներից կազմվող մարմինների վրա: Հենց նրանք են լուծում ընտրությունների կազմակերպման բոլոր հիմնական հարցերը:

Սակայն դա բնավ չի նսեմացնում սովետների դերը մի ամբողջ շարք ընտրական հարցեր լուծելու, ընտրական հանձնաժողովների բոլոր օղակներին ա- ջակցություն ցույց տալու, ինչպես նաև ընտրությունների նախապատրաստման հետ կապված և օրենքով նախատեսված միջոցառումների անմիջական իրականացման գործում:

Սովետները, նրանց գործկոմները կոչված են համակողմանի օգնություն և ա- ջակցություն ցույց տալու ընտրական հանձնաժողովներին՝ կազմակերպելու նրանց աշխատանքը, ապահովելու ամենօրյա կապը տեղամասային ընտրական հանձնա- ժողովների հետ, օգնելու ընտրական քվեաթերթիկների պատրաստմանը: Հարկավոր է հատուկ ուշադրություն նվիրել այն բանին, որ ընտրական հանձնաժողովները ժամանակին ապահովված լինեն անհրաժեշտ ինֆորմացիայով ու նյութերով, որ ընտրությունների անցկացմանն առնչվող հարցերի վերաբերյալ նրանց ցուցումները անառարկելիորեն կատարվեն բոլոր պետական ու հասարակական կազմակերպու- թյունների, ձեռնարկությունների, հիմնարկների, կազմակերպությունների, դրանց ղե- կավարների կողմից, որ գործնականում խստիվ պահպանվեն ընտրական հանձնա- ժողովների իրավունքները:

Արդեն ստեղծվել են ընտրական տեղամասերն ու տեղամասային ընտրական
հանձնաժողովները: Աշխատանքի հիմնական ծանրությունն ամենից առաջ ընկնում է
ժողովրդական դեպուտատների շրջանային, քաղաքային, իսկ քաղաքներում՝ շրջա-
նային սովետների վրա: Հենց նրանք էլ կազմում են տեղամասային ընտրական հանձ-
նաժողովները:

Այդ հանձնաժողովների լիազորությունները բավական լայն են. նրանք են կազ-
մում ընտրողների ցուցակները, անցկացնում քվեարկությունը, իրականացնում ձայ-
ների հաշվարկը: Հենց նրանք են գործնականորեն իրականացնում գլխավոր ընտրա-
կան արարողությունները, շփվում հարյուր հազարավոր մարդկանց հետ: Ուստի տե-
ղամասային հանձնաժողովների անդամների եռանդով ու հմտությամբ են մեծապես
պայմանավորված քվեարկության հաջող ընթացքը, ընտրությունների արդյունքները:
Եվ, բնականաբար, կպահանջվի տեղական սովետների ամենալուրջ ուշադրությունը
այդ հանձնաժողովների հրահանգավորման, նրանց բարձրացրած հարցերի լուծման,
քվեարկության սենյակների կահավորման, ընտրական փաստաթղթերի պահպան-
ման նկատմամբ: Արդեն ավարտվել է ընտրական կամպանիայի հիմնական փուլը՝
ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուների առաջադրումը: Ընդսմին, լրիվ
իրացվել է օրենքի բովանդակած դեմոկրատական պոտենցիալը:

Մեզնից յուրաքանչյուրը ականատես է եղել, թե որքան է փոխվել թեկնածուների
առաջադրման բուն մթնոլորտը: Գործարար կերպով կշռադատվում էին դեպուտա-
տության թեկնածուների արժանիքներն ու թերությունները, նրանց նախընտրական
պլատֆորմները: Ընտրողները ռեալ կերպով ներազդում էին քննարկման ելքի, այն
մարդու ընտրության վրա, որին վաղը անվանելու են ժողովրդական դեպուտատ:

Սակայն միամտություն կլիներ կարծել, թե ամեն ինչ անցել է հարթ ու հան-
գիստ: Դա նոր գործ է: Զևավորվող դեմոկրատական մեխանիզմը ամեն օր առաջա-
դրում էր նորանոր հարցեր, որոնք պահանջում էին հստակ պատասխաններ: Ընդ ո-
րում, համբերատարությամբ պարզաբանվում էին ընտրական օրենքի նոր դրույթ-
ների, դեմոկրատական այն սկզբունքների իմաստն ու բովանդակությունը, որոնք
կոչված են աշխատավորների համար իրականում ապահովելու իշխանության գերա-
գույն մարմնի առավել արժանավոր թեկնածուների ընտրության հնարավորությունը:

Հիմնականում ապահովված էր օկրուգային ընտրական հանձնաժողովների հըս-
տակ համագործակցությունը տեղական սովետների, կուսակցական, արհմիութենա-
կան, կոմերիտական կազմակերպությունների հետ: Նրանց համատեղ, լավ կոորդի-
նացված ջանքերով միայն հնարավոր եղավ նախընտրական ժողովներն անցկացնե-
լիս ապահովել անհրաժեշտ կազմակերպվածություն:

Ընտրությունների մասին օրենքը զգալիորեն ընդլայնել է հնարավորությունները
տերիտորիալ և ազգային-տերիտորիալ օկրուգներից դեպուտատության թեկնածու-
ներ առաջադրելու համար: Այդ բանն արվում էր ոչ միայն ընդհանուր ժողովներում,
այլև աշխատավորական կոլեկտիվների կոնֆերանսներում: Այսպես, օրինակ, «Հայ-
էլեկտրամեքենա» արտադրամիավորման նախընտրական կոնֆերանսում Երևանի
№ 385 ազգային-տերիտորիալ ընտրական օկրուգից ՍՍՀՄ ժողովրդական դեպու-
տատության թեկնածու առաջադրեցին № 31 արտադրամասի փականագործ-գործի-
քագործ Գերման Սարգսի Սալախյանին: Երևանի № 125 միջնակարգ դպրոցի ման-
կավարժական կոլեկտիվի և ծնողական խորհրդի նախընտրական ժողովում Զեյթու-
նի № 394 ազգային-տերիտորիալ ընտրական օկրուգից՝ հայոց լեզվի ու գրականու-
թյան ուսուցչուհի Սուսաննա Անդրանիկի Գալստյանը: Իսկ Կրասնոսելսկի շրջանում
շրջկենտրոնի սովխոզի կոլեկտիվի ժողովում Վարդենիսի № 405 ազգային-տերիտո-
րիալ ընտրական օկրուգից առաջարկվեց Կոլպակովների գերդաստանի ամենա-
երիտասարդ ներկայացուցիչ, կթվորուհի Նյուրա Զախարովնայի թեկնածությունը՝
նրա բարեխղճության, ջանասիրության, կոմերիտական ակտիվ աշխատանքի համար:

Նոր բան է նաև օրենքի նորման՝ ըստ բնակության վայրի քաղաքացիների ժո-
ղովներում թեկնածուներ առաջադրելու հնարավորության մասին: Այդ ժողովները
գումարվում էին համապատասխան սովետի կողմից՝ օկրուգային ընտրական հանձ-
նաժողովի հետ համատեղ: Ապահովվում էր ընտրական օկրուգի տարածքում ապրող
առնվազն 500 ընտրողների ներկայությունը: Այսպես, ըստ բնակության վայրի Էջ-
միածնի № 739 տերիտորիալ օկրուգից ընտրողների նախընտրական ժողովը միա-





ձայն որոշեց ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածու առաջադրել Ամե-
նայն հայոց ծայրագույն պատրիարք և կաթողիկոս Վազգեն Առաջինին:

Որոշ տեղերում փորձեր արվեցին նաև կամայականորեն մեկնաբանելու այդ
նորման, բայց տեղական սովետները օկրուգային հանձնաժողովների մասնակցու-
թյամբ կարողացան ժամանակին լուծել նման կարգի հարցերը:

Հատկապես պետք է նշել առաջիկա ընտրությունների դեմոկրատական բնույթը
ապահովելու գործում օկրուգային նախընտրական ժողովների դերի մասին: Շատ
դեպքերում հենց օկրուգային ժողովներն են լինելու այն բանավեճերի, այսպես ասած,
էպիկենտրոնը, որոնք կծավալվեն առաջադրվող թեկնածությունների շուրջը: Ինչու՞:
Այն պատճառով, որ ընտրությունների ողջ պրոցեսի դեմոկրատացման պայմաննե-
րում անխուսափելի են նաև կարծիքների տարբերությունը և մրցակցությունը, հետե-
վաբար կարող են առաջադրվել բավական մեծ թվով թեկնածուներ, որոնք ներկա-
յացնում են տարբեր կազմակերպություններ ու կոլեկտիվներ: Այսպես, Երևանի Մաշ-
տոցի № 390 ազգային-տերիտորիալ ընտրական օկրուգից առաջադրվեց դեպուտա-
տության 7 թեկնածու, երեք ազգային-տերիտորիալ օկրուգներից՝ 5-ական թեկնածու
և այլն: Նրանց բոլորին մտցնել ընտրական քվեաթերթիկների մեջ՝ նշանակում է ա-
կընհայտորեն համաձայնվել բազմակի քվեարկության: Ահա հենց օկրուգային նախ-
ընտրական ժողովն էլ կոչված է լինելու այն զտիչը, որը իր միջով անցկացնելով
բոլոր թեկնածուներին, կթողնի ամենաարժանավորներին:

Իսկ ժողովն ի՞նչ հնարավորություններ ունի դրա համար: Անչափ լայն: Դրա
համար, բնականաբար, պետք է, որ թեկնածությունների քննարկման արարողու-
թյունը օկրուգային նախընտրական ժողովներում լինի իրոք դեմոկրատական և հրա-
պարակային: Այդպիսի ժողովների մասնակիցները պետք է հնարավորություն ունե-
նան համակողմանիորեն ծանոթանալու թեկնածուների ցուցակին, նրանց գործերին
ու արժանիքներին, լսելու բոլոր «թեր» և «դեմ» արտահայտվել ցանկացողներին:

Կա ևս մի հարց, որը չի կարելի շրջանցել: Դա դեպուտատության
թեկնածուների ելույթներն են իրենց ապագա գործունեության ծրագրով: Այստեղ
կարևոր է հիշել, որ ընտրությունների մասին օրենքի 45-րդ հոդվածին համապա-
տասխան այդ ծրագիրը չպետք է հակասի ՍՍՀՄ սահմանադրությանը և սովետա-
կան օրենքներին: Իսկ դա նշանակում է, որ օկրուգային նախընտրական ժողովը
պետք է երաշխիք լինի այն բանի, որ ընտրության համար առաջադրի այնպիսի
մարդկանց, որոնք պաշտպանում են մեր սոցիալիստական օրենքները, մեր հասա-
րակության կյանքի սահմանադրական սկզբունքները:

Ինքնին հասկանալի է, որ, հանդիպելով այդ կարգի ծրագրերի, որոնք ուղղակի
կամ քողարկված ձևով հակասում են սովետական օրենքներին, օկրուգային նախընտ-
րական ժողովը, հենվելով սահմանադրության վրա, հազիվ թե դրանց հեղինակներին
հանձնարարի գրանցելու դեպուտատության թեկնածուներ:

Իհարկե, այդ հարցերը պետք է լուծել նրբորեն ու տակտով, խստագույնս պահ-
պանելով սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքները: Եվ հենց այդ պատճառով
էլ առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում օկրուգային նախընտրական ժո-
ղովների անցկացման նախապատրաստումը:

Չի կարելի թույլ տալ, որ օկրուգային նախընտրական ժողովը վերածվի նեղ
խորհրդակցության: Ըստ էության այն կոչված է լինելու լայն ներկայացուցչական,
իրավազոր, իսկական դեմոկրատական համաժողով, ընդունակ գործիմացորեն ու
արդարացիորեն իրականացնելու ընտրության կարևորագույն ֆունկցիան, ապահո-
վելու առավել արժանավոր ու հեղինակավոր թեկնածուների ընտրական կամպանիա-
յին հետագա մասնակցության հարցը: Ուստի կարևոր է ամենուրեք ապահովել, որ
այդ ժողովների մասնակիցների կազմը ձևավորվի խիստ դեմոկրատական հիմքի վրա,
որ դրա մեխանիզմը համապատասխանի ընտրական օրենքին:

Դեպուտատության թեկնածուներ առաջադրած յուրաքանչյուր կոլեկտիվ օկրու-
գային ժողովում պետք է ներկայացված լինի հավասար թվով ներկայացուցիչներով:
Ընդ որում, ժողովի մասնակիցների առնվազն կեսը, ինչպես նախատեսված է օրեն-
քում, պետք է կազմեն համապատասխան ընտրական օկրուգի, եթե կարելի է այս-
պես անվանել, «չեզոք» ընտրողներ: Եվ, իհարկե, պետք է ապահովել օկրուգային
նախընտրական ժողովների առավելագույն հրապարակայնությունն ու բացախոսու-

թյունը, դրանց ընթացքը լայնորեն լուսաբանել մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ:

Հարկ է նշել, որ նոր օրենքը ուղղակի պատվիրում է նման ժողովներ չանցկացնել, եթե օկրուգից առաջադրված է երկու թեկնածուից ոչ ավելի: Բայց եթե առաջանում է դրա անհրաժեշտությունը, ապա տեղական սովետները պետք է ակտիվորեն օգնեն օկրուգային ընտրական հանձնաժողովին՝ ելնելով օկրուգի առանձնահատկությունից, նախապես որոշեն ներկայացուցչության համապատասխան նորման դեպուտատության թեկնածուներ առաջադրած աշխատավորական կոլեկտիվներից և ըստ բնակության վայրի գումարվող ժողովներից:

Ընտրությունների մասին օրենքով նախատեսված է, որ առաջադրված դեպուտատության թեկնածուների գրանցումն սկսվում է ընտրություններից երկու ամիս առաջ: Գրանցումից հետո սովետների և օկրուգային ընտրական հանձնաժողովների ու հասարակական կազմակերպությունների վրա են դրվում դեպուտատության թեկնածուների հետ հանդիպումների համար ընտրողների ժողովների կազմակերպման պարտականությունները: Դա ընտրական կամպանիայի անցկացման առավել էական փուլ է: Տեղական սովետների խնդիրն է յուրաքանչյուր թեկնածուի ապահովել նրա ընտրական օկրուգը բնութագրող տվյալներով: Նա պետք է տեղյակ լինի բոլոր այն պրոբլեմներին, որոնք հետաքրքրում են ընտրողներին, պետք է գիտենա, թե ինչպես են ընթանում գործերը օկրուգի տարածքում գտնվող ձեռնարկություններում, ինչպիսիք են օկրուգի մեջ մտնող քաղաքների, ավանների, գյուղերի զարգացման հեռանկարները:

Նախընտրական բոլոր միջոցառումներում դեպուտատության թեկնածուին պետք է մշտական աջակցություն ցույց տան նրա վստահված անձիք:

Այնպիսի պայմաններում, երբ յուրաքանչյուր օկրուգից քվեարկության են դրվում մի քանի թեկնածու, առանձնահատուկ նշանակություն է ստանում ընտրություններում բոլոր թեկնածուներին հավասար հնարավորություններ տալու մասին օրենքի պահանջը: Բնական է, որ այնքան էլ հեշտ չէ հասնել դրան: Այստեղ շատ բան պայմանավորված կլինի հենց թեկնածուների արժանիքներով: Երկընտրանք թեկնածուներով ընտրությունների անցկացման ոչ մեծ փորձն անգամ ցույց է տալիս, որ նրանցից շատերը ընտրողների մոտ են գնում իրական, կշռադատված, խորապես հիմնավորված ծրագրերով: Ոմանց իրենց ապագա պարտականությունները կարող են թվալ ավելի հեշտ, քան դրանք իրոք կան: Հավանաբար, կգտնվեն այնպիսիները, որոնք ընտրողների ձայների հետևից ընկած, կաշխատեն առաջադրել «ավելի հրապուրիչ» ծրագրեր:

Սովետական աշխատողները, մեր ակտիվը պետք է կարողանան բոլոր անհրաժեշտ վիճակագրական ու փաստական նյութերով, ռեգիոնի սոցիալական, տնտեսական, բնակարանային, կուլտուրական, էկոլոգիական դրության մասին տվյալներով ցանկացած պահին ընտրողներին ներկայացնել գործերի իսկական վիճակը, ինչպես նաև համապատասխան տարածքների զարգացման իրական հեռանկարները:

Վերջին ժամանակներս առանձին մարդկանց կողմից նկատվում են տարբեր կարգի դիմումների տակ ստորագրություններ հավաքելու նպատակով քաղաքացիների վրա ճնշում գործադրելու փորձեր: Քաղաքացիների իրավունքների ու ազատությունների նման կարգի ապօրինի սահմանափակման փաստեր նկատվել են Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի առանձին օկրուգներում 1988 թ. դեպուտատների ընտրություններ անցկացնելիս: Եղել են նաև փորձեր՝ ներգործելու ժողովրդական դեպուտատության թեկնածուների վրա, նպատակ ունենալով ստիպել նրանց հանելու իրենց թեկնածությունները, իսկ ընտրողների վրա՝ որպեսզի նրանք քվեարկեն մեկ թեկնածուի օգտին՝ ընդդեմ մյուսի: Այս ամենը, իհարկե, անհանդուրժելի է, ոչ դեմոկրատական:

Խոսքն այն մասին է, որ ժողովրդական դեպուտատների բոլոր աստիճանների սովետների առաջնահերթ պարտքը պետք է լինի բոլոր միջոցներով պաշտպանել ու զարգացնել դեմոկրատիան՝ որպես ռեալ սոցիալիզմի գոյության միակ հնարավոր ձև: Բայց այդ դեմոկրատիան շատ ավելի ներգործուն, շատ ավելի հետևողա-



կան ու լայն է, երբ առավել խստորեն են պահպանվում օրենքն ու սոցիալիստական օրինականությունը:

Այս սկզբունքային մոտեցումը լրիվ չափով պետք է կիրառել նաև սովետների աշխատանքի նկատմամբ՝ ընտրական կամպանիայի ավարտական փուլում, ընտրողների ցուցակները կազմելիս, քվեարկությանը նախապատրաստվելու շրջանում, քվեարկության օրը, ընտրությունների արդյունքները որոշելիս և դրանք հանրագումարի բերելիս:

Քաղաքային, քաղաքների շրջանային, ավանային և գյուղական սովետները պարտավոր են տեղամասային ընտրական հանձնաժողովներին համապատասխան տարածքում ապրող ընտրողների մասին տալ տեղեկություններ, որոնք անհրաժեշտ են ընտրողների ցուցակները կազմելու համար: Հաշվի առնելով հանրապետության ժողովրդագրական բարդ իրադրությունը, որն ստեղծվել է երկրաշարժի ու բնակչության էվակուացման հետևանքով, ինչպես նաև Ադրբեջանական ՍՍՀ-ից եկած մեծ թվով փախստականների առկայությամբ, ընտրողների ցուցակները պետք է կազմել այնպես, որ ոչ մի ընտրող դուրս չմնա:

Կարևոր է նաև օգնել հանձնաժողովներին՝ այդ ցուցակները սահմանված կարգով տպագրելու, քաղաքացիներին դրանց ծանոթացնելու գործում: Ընտրություններից 15 օր առաջ ընտրողների ցուցակները պետք է ամենուրեք ներկայացված լինեն համընդհանուր ծանոթացման:

Քվեարկությունը կազմակերպելիս պետք է գործնականորեն ապահովել օրենքի այն դրույթի կատարումը, որը արգելում է ագիտացիան ընտրությունների օրը: Այստեղ ևս ժողովրդական դեպուտատների սովետները պետք է հատուկ ուշադրություն նվիրեն այն բանին, որ թույլ չտրվի ընտրողների այսպես կոչված նախնական «մշակումը» քվեարկելու համար շենք մտնելուց առաջ: Ընտրողին իր կամքը պարտադրելու, այս կամ այն թեկնածուի «թեր» կամ «դեմ» քվեարկել ստիպելու ամեն մի փորձ պետք է վճռականորեն կասեցվի:

Ելնելով նոր ընտրական օրենքի առանձնահատկություններից՝ կարող են անցկացվել կրկնվող ընտրություններ:

Այսպիսով հետամուտ լինելով ընտրական կամպանիայի ընթացքին, չի կարելի չհանգել այն հետևության, որ նկատելիորեն բարդանում են սովետների ֆունկցիաները, վերակառուցման պայմաններում դրանք ձեռք են բերում նոր բովանդակություն և նոր ձևեր: Հանրապետության սովետական աշխատողները պետք է պատրաստ լինեն դրան: ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը պլանավորել է իր նիստում քննարկել, թե ընտրությունների նախապատրաստման կապակցությամբ ինչպես են աշխատում հանրապետության որոշ շրջանների ժողովրդական դեպուտատների սովետները:

Անհրաժեշտ է հաշվի առնել, որ ընտրությունների նախապատրաստման ու ընթացքի վրա ոչ պակաս ազդեցություն են ունենում նաև սովետների աշխատանքի մյուս բոլոր կողմերը, որոնք առաջին հայացքից ուղղակիորեն կապված չեն ընտրական կամպանիայի հետ: Խոսքը նպատակամղված է մարդկանց կենսական շահերի ու պահանջմունքների բավարարմանը, սոցիալական հարցերի ամենաարագ լուծմանը: Բնակչության ապահովումը պարենով, շուկայի հագեցումը ժողովրդական սպառման ապրանքներով և ծառայությունների տարբեր տեսակներով, բնակարանային շինարարության մասշտաբների ու տեմպերի մեծացումը, էկոլոգիական իրադրության վճռական առողջացումը պետք է լինեն սովետների մշտական ուշադրության կենտրոնում:

Յուրաքանչյուր սովետական աշխատող պետք է հստակորեն գիտակցի, որ այն բանով, թե ինչպես են պաշտպանվում մարդկանց շահերը, բավարարվում պահանջմունքները տվյալ ավանում, շրջանում, քաղաքում, մեծապես պայմանավորված են նաև նրանց տրամադրությունը, և՛ նրանց ակտիվությունը ընտրություններում, և՛ այն, թե ում օգտին են նրանք ձայն տալու:

Հարկավոր է դեպուտատական հանձնաժողովների, ժողովրդական վերահսկողության կետերի, խմբերի, մարմինների գործունեությունն ավելի ակտիվորեն ուղղել

ամեն կարգի չարաշահումների կանխմանը, հետևողականորեն հասնել սոցիալական արդարության սկզբունքների խստիվ պահպանմանը: Այդպիսի աշխատանքը մարդկանց մեջ ամրապնդում է հավատը օրինականության, կուսակցության և պետության քաղաքականության ներգործունության, վերակառուցման նպատակների վերջնական հաղթանակի նկատմամբ:

Մեզ մոտ շարունակվում է սուր մնալ նաև բնակարանային պրոբլեմը: Չի կարելի չնկատել, որ նույնիսկ այնտեղ, որտեղ բավական եռանդուն են կառուցվում բնակարանները, ցածր է դրանց որակը: Բնակարանների նշանակալի մասը շահագործման է հանձնվում թերացումներով, նախագծերից ու շինարարական նորմաներից զգալի շեղումներով: Երկրաշարժի գոտու ողբերգական իրադարձությունները ակնառու կերպով բացահայտեցին դրանք:

Ինչպես հայտնի է, ընտրական կամպանիայի կարևորագույն մասն են ընտրողների պատվիրանները: Այժմ այդ աշխատանքը պահանջում է նոր, ոչ ստանդարտ մոտեցումներ, պրակտիկայի ստեղծագործական իմաստավորում: Նախընտրական կամպանիայի ընթացքում կարող է այնպես ստացվել, որ պատվիրաններ ստանան երեք և նույնիսկ չորս թեկնածուներ, իսկ վերջին հաշվով կմնա մեկը: Բնականաբար, հարց է ծագում. իսկ ի՞նչ անել այն պատվիրանների հետ, որոնք տրված են եղել բոլոր առաջադրված թեկնածուներին: Մի բան պարզ է. այն ամենն կարևորը, արժեքավորը, որ իբրև ցանկություն հայտնել էին թեկնածուներին, անհրաժեշտ է ընդհանրացնել, հաշվի առնել գործնական աշխատանքում: Հետագայում այդ առաջարկությունների համար պետք է ստեղծվի նյութական ամուր բազա, որպեսզի դրանք ժամանակին հաշվի առնվեն օկրուգի տարածքի տնտեսական և սոցիալական զարգացման ընթացիկ և հեռանկարային պլաններում:

Ծավալված ընտրական կամպանիայի սկզբունքային ևս մի հարցի մասին: Խոսքը սովետներում աշխատող յուրաքանչյուր կոմունիստի հարանուն պատասխանատվության մասին է Կենտրոնական կոմիտեի կուրսը իրականացնելու համար, ընտրությունների ելքի համար: Այժմ, ինչպես երբեք, կարևոր է ապահովել կոմունիստների՝ որպես մեր հասարակության կազմակերպող, ուղղություն տվող ուժի գործողությունների միասնությունը: Հենց կոմունիստները պետք է գլխավորեն վերակառուցման պրոցեսները սովետներում, նորացնեն նրանց աշխատանքի ոճն ու մեթոդները, կոնկրետ գործերով առաջ մղեն քաղաքական սիստեմի ռեֆորմը: Յուրաքանչյուր կոմունիստ պետք է զինվի ընտրողներին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումով և հետևողականորեն աշխատանք տանի այդ փաստաթուղթը պրոպագանդելու, պարզաբանելու համար, փաստաթուղթ, որի հաջող իրականացումը կարևորագույն փուլ կլինի դեմոկրատացումը խորացնելու և իրավական պետություն ստեղծելու ճանապարհին:

---



# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ԵՎ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ

**Վ. ԿՈՒԶՄԻՆ**
**Կ. ՇՉԵԳՈԼԵՎ**

ՎԵՐԱԿԱՌՈՒՑԵԼՈՎ ԻՐ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ՝ ՍՄԿԿ-ն ձգտում է գտնել այնպիսի մոտեցումներ, հնարներ ու միջոցներ, որոնք համապատասխանեին ժամանակի ոգուն, նրա վերափոխիչ, հեղափոխական բնույթին: Քանի որ, ինչպես սովորեցրել է Վ. Ի. Լենինը, «Զարգացած և անկայուն ձևը հնարավորություն չի տալիս հետագա լուրջ քայլեր անել բովանդակության զարգացման ասպարեզում, ամոթալի լճացում է առաջացնում, տանում է դեպի ուժերի վատնում, դեպի խոսքի և գործի անհամապատասխանություն» (ԵԼԺ, հ. 8, էջ 477):

Ահա թե ինչու դժվար է գերագնահատել դերն ու նշանակությունը XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի, որի բանաձևերում ամրապնդվեցին, հետագա զարգացում ստացան կուսակցական շինարարության լենինյան սկզբունքները: Ինչպես հայտնի է, կոնֆերանսի ուշադրության կենտրոնում էին կուսակցության՝ որպես սովետական ժողովրդի քաղաքական ավանգարդի, դերի, նրա ներքին կյանքի վիճակի, կյանքի բոլոր ոլորտների վրա նրա ներգործության մեխանիզմի կատարելագործման հարցերը: Կոնֆերանսում ընդունված փաստաթղթերը տվեցին կուսակցության մեջ իրական վիճակի համակողմանի պատկերը:

Իսկ այդ պատկերը, պետք է ընդգծել, ամենևին էլ վարդագույն չէ: Անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում և լճացման տարիներին տեղի ունեցան լուրջ ձևախախտումներ բուն կուսակցության մեջ, նրա գործունեության բովանդակության և աշխատավորների հետ նրա կապերի մեջ: Դա չէր կարող հանգեցնել դեմոկրատական, բոլշևիկյան շատ ավանդույթների կորստի, որոնք բնորոշ էին նրան ի սկզբանե և ստեղծվել էին Վ. Ի. Լենինի և նրա զինակիցների հսկայական ջանքերով:

Շատ տարիներ քաղաքական սիստեմը աշխատել է ոչ թե ինքնակարգավորման և ինքնակառավարման պրոցեսների խթանման վրա, այլ գլխավորապես հարմարվել է վերևից իջեցված կարգադրությունների և հրահանգների կատարմանը: Կոլեկտիվության փոխարեն գերակշռում էր միանձնյա ղեկավարությունը, ընտրովիության փոխարեն՝ նշանակումը, հրապարակայնության փոխարեն՝ չարդարացված գաղտնիությունը, պրոբլեմների կոլեկտիվ քննարկումների, լայն բանավեճերի փոխարեն՝ ճշմարտությունը վերջին ինստանցիայում: Այդ ամենը անխուսափելիորեն հասցրել է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի խեղաթյուրմանը, բյուրոկրատական ցենտրալիզմին նրա փոխարինմանը:

Շարքային կոմունիստները, սկզբնական կուսկազմակերպությունները զգալի չափով զրկվել էին շրջկոմների, քաղկոմների գործունեության վրա իրական հսկողու-

---

*ԿՈՒԶՄԻՆ ՎԻԿՏՈՐ ԻՎԱՆՈՎԻՉ— «Պարտիյնայա ժիզն» ամսագրի կազմկուսբաժնի խմբագրի տեղակալ:*

*ՇՉԵԳՈԼԵՎ ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ— Մոսկվայի բարձրագույն կուսակցական դպրոցի պրոֆեսոր:*

թյուն սահմանելու հնարավորությունից: Այդ առնչությամբ կարելի է բավականաչափ օրինակներ բերել նաև Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպության պրակտիկայից: Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում, վերադաս կուսակցական մարմիններից կուսակցական լայն մասսաների այդպիսի կտրվածությունը հասցրել է նրան, որ շատ կուսակցական կոմիտեներ հեռացել են սկզբունքային քաղաքական և գաղափարական դիրքորոշումներից, խրվել են վարչարարության և թղթարարության մեջ: Ղեկավար պաշտոններ զբաղեցրած մի շարք կուսակցության անդամներ գտնվել են քննադատությունից դուրս, սկսել էին չարաշահել իշխանությունը: Ստեղծվել էր ղեկավարությանը հավատարիմ անվանացանկային պաշտոնյաների միակերպ մի շարք: Բոլոր անձնական հատկանիշներից առաջին հերթին սկսվել էր գնահատվել հավատարմորեն «վերև» նայելու հմտությունը:

Այդ բացասական երևույթները թելադրում էին ներկուսակցական հարաբերություններում խոր վերափոխումների անհրաժեշտություն: Համամիութենական կուսկոնֆերանսի անանց նշանակությունն էլ հենց այն է, որ սահմանեց հստակ ուղի և մշակեց կոնկրետ միջոցառումներ՝ որպեսզի մեր կուսակցությունը ոչ միայն բովանդակությամբ, այլև գործունեության մեթոդով լիակատար չափով դառնա լենինյան տիպի կուսակցություն: Դրան պետք է նպաստի կոմունիստների քաղաքական աշխատանքի և կուսակցության ներքին կյանքի անցումը դեմոկրատական ռելսերի վրա, նրա վերածումը սոցիալիստական ինքնակառավարման կազմակերպության իսկական նմուշի, որը ակտիվ ազդեցություն գործի հասարակությունում տեղի ունեցող բոլոր պրոցեսների վրա: Խոսքը լրիվ ծավալով դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի լենինյան ըմբռնման վերականգնման մասին է, որը նշանակում է՝ բոլոր ընտրովի մարմինների ընտրովիություն ներքևից վերև. կուսակցական մարմինների պարբերական հաշվետվություն իր կուսակցական կազմակերպությունների և վերադաս կուսակցական մարմիների առջև. խստագույն կուսակցական կարգապահություն և փոքրամասնության ենթարկումը մեծամասնությանը. վերադաս կուսակցական մարմինների որոշումների անվերապահ պարտադիր լինելը ստորադասների համար. կոլեկտիվություն կուսակցության բոլոր կազմակերպությունների և մարմինների աշխատանքում. յուրաքանչյուր կոմունիստի անձնական պատասխանատվություն իր պարտականությունների և կուսակցական հանձնարարությունների կատարման համար:

ՍՄԿԿ կանոնադրության մեջ, որը հաստատվել է կուսակցության XXVII համագումարում, առավել լրիվ, քան առաջ, բացահայտված է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի լենինյան ըմբռնումը: Այն կանխորոշված է ոչ միայն կուսակցության կազմակերպական կառուցվածքի, այլև նրա կյանքի և գործունեության ղեկավար սկզբունքով: Սակայն վերակառուցումն արդեն հարուցել է հսկայական դրական տեղաշարժեր, որոնք պետք է ավելի ընդլայնվեն ու խորանան: Ահա թե ինչու, ինչպես ասվեց համամիութենական կուսկոնֆերանսում, այդ նոր փորձը պետք է ոչ միայն ընդհանրացնել, այլև ամրապնդել ՍՄԿԿ կանոնադրության մեջ:

Կոնֆերանսը հանգեց հաստատ համոզման՝ ունենալ հայացքների համադրման գործող մեխանիզմ, անշեղորեն իրականացնել ներկուսակցական դեմոկրատիայի խորացման միջոցառումներ այն հաշվով, որպեսզի ՍՄԿԿ բոլոր օղակները գործեն կուսակցական ընկերակցության, քաղաքականության և պրակտիկ գործունեության հրատապ հարցերի ազատ քննարկման, քննադատության և ինքնաքննադատության, կոլեկտիվության, գիտակցական կարգապահության և անձնական պատասխանատվության մթնոլորտում:

Միանգամայն հրատապ է և դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի մյուս կողմը՝ գործողությունների միասնություն մեծամասնության կողմից որոշում ընդունելուց հետո: Այդ դրույթը արտացոլում է ներկուսակցական դեմկրատիայի՝ գործող, աշխատող դեմոկրատիայի էությունը: Յուրաքանչյուր կոմունիստ, լայնորեն օգտվելով ազատ քննարկումից և քննադատությունից, պարտավոր է անվերապահորեն կատարել այն ամենը, ինչը կոլեկտիվ քննարկման արդյունքով մեծամասնության կողմից ընդունվել է որպես ընդհանուր որոշում, համառորեն ձգտի դրա կենսագործմանը: Մեզ համար մինչև հիմա էլ սկզբունքորեն կարևոր է Վ. Ի. Լենինի ցուցումն այն մասին, որ «Իշխավասու մարմինների վճռից **հետո** մենք **բոլորս,** կուսակցության անդամներս, **գործում ենք մեկ մարդու նման»** (ԵԼԺ, հ. 14, էջ 160):

Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, որպես նրա երկու կողմի՝ դեմոկրատիայի և ցենտրալիզմի, օրգանական միասնություն, իր ռեալ դրսևորումն է գտել հենց կուսկոնֆերանսի աշխատանքի բնույթի, ինչպես նաև նրա ընդունած փաստա-



թղթերի բովանդակության մեջ: Բանավեճերի լայնությունն ու ազատությունը, քննադատության սրությունը, հայացքների և այս կամ այն հարցի վերաբերյալ տարբեր տեսակետների պլյուրալիզմը այդ նույն ժամանակ էլ դարձան վերակառուցման ծրագրի կատարման համար կուսակցության ուժերի համախմբման ու միավորման ձգտման կենդանի, համոզիչ ապացույցը:

Ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման գործում հատուկ դեր է պատկանում ընտրովի մարմիններին, ՍՄԿԿ-ում ողջ ընտրական պրոցեսի դեմոկրատացմանը: Կուսակցական կոմիտեների լիարժեք գործունեության ապահովման և ՍՄԿԿ կանոնադրության դրույթների առավել արդյունավետ օգտագործման նպատակով հարկավոր է անհրաժեշտ վճռականությամբ նորացնել նրանց ձևավորման կարգը: Առաջադրվել և լուծվում է հետևյալ անհետաձգելի խնդիրը. բոլոր կուսակցական կոմիտեների, ընդհուպ մինչև Կենտրոնական կոմիտեի, անդամներին ու քարտուղարներին ընտրելիս ապահովել թեկնածուների լայն քննարկում, մրցակցություն և քվեարկության գաղտնիություն, բյուլետեններում կոմիտեի կազմում ընտրվողների թվից ավելի շատ հավակնորդների անուններ մտցնելու հնարավորություն:

Կուսկազմակերպություններին իրավունք է տրվել կոնֆերանսներում և համագումարներում պատգամավորների ընտրությունների հետ միասին միաժամանակ առաջարկել իրենց թեկնածուները վերադաս մարմինների կազմում: Սահմանված է լիազորությունների միասնական ժամկետ՝ հինգ տարի, բոլոր մարմինների համար՝ Կենտկոմից մինչև կուսակցության շրջկոմներ: Դրա հետ միասին որոշված է երկուերեք տարին մեկ անցկացնել կուսակցական կոնֆերանսներ՝ կուսակցական կոմիտեները մինչև 20 տոկոսով նորացնելու իրավունքով:

Այժմ կարգ է դարձել՝ կուսակցական կոմիտեների անդամներն ու քարտուղարները, ընդհուպ մինչև ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարը, կարող են նույն պաշտոնում ընտրվել ոչ ավել, քան երկու ժամկետով: Կուսակցական մարմինների ընտրություններում կարևոր փուլերից մեկը համարվում է այդ մարմինների կազմում առաջարկությունների նախապատրաստման հանձնաժողովների կազմավորումը և աշխատանքը, առաջարկվող թեկնածուների շուրջը լայն կուսակցական կարծիքի ստեղծումը: Այդ ամենը, բնական է, հնարավորություն է ընձեռում կանխել լճացման երևույթները կուսակցական ղեկավարության մեջ:

Գաղտնիք չէ, որ կուսակցական կադրերի ընտրության և տեղաբաշխման դեմոկրատական սկզբունքները, մրցակցությունն ու մրցողունակությունը, այլընտրական թեկնածուների թվից ընտրություն կատարելը դեռևս Հայաստանում թույլ են կիրառում կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները: Նրանք սահմանափակվում են նոր մեթոդների ներդրման սոսկ առանձին փորձերով, չեն շտապում արմատախիլ անել թեկնածուների ոչ հրապարակավ քննարկման պրակտիկան, շրջափակվում են կուսակցականների՝ վաղուց ձևավորված նեղ շրջանակում: Իսկ արդյու՞նքը: Շրջկոմների աշխատողների սոսկ 15 տոկոսն ունի կուսակցական-քաղաքական կրթություն: Դա ամենացածր ցուցանիշն է երկրում: Վերջին ժամանակներս ընտրված շրջկոմների և քաղկոմների քարտուղարների մոտ 70 տոկոսը չի գտնվել ռեզերվում, նրանց ճնշող մեծամասնությունը չի անցել սկզբնական օղակում աշխատելու դպրոց:

Այնինչ կան և ուրիշ կարգի փաստեր, որոնք ցույց են տալիս, որ կարելի է և հարկավոր է ազատվել ձևական անվանակարգային մոտեցումից կուսակցական կադրերի ընտրություն կատարելիս, վարչական ճնշումից, ավելի շատ վստահել կոմունիստներին: Օրինակ՝ Կիրովականում, Սիսիանում, Ապարանում կուսակցական կոմիտեների առաջին քարտուղարների ընտրության ժամանակ «վերևից» թեկնածուներ չեն պարտադրել: Այդ կուսակցական կոմիտեների անդամների կամքի ազատ արտահայտման հիման վրա ընտրությունները դարձել են դեմոկրատացման և հրապարակայնության իսկական դաս: Կոմունիստները սկզբունքորեն, համակողմանիորեն էին գնահատում ապագա ղեկավարներին: Եվ իրենք՝ առաջին քարտուղարները, ամենայն պատասխանատվությամբ մոտեցան իրենց նոր վիճակին, զգացին, թե ինչպես կարևոր է թանկ գնահատել մարդկանց վստահությունը: Հանրապետությունում ողբերգական իրադարձությունները դաժան փորձություն էին շատ կուսակցական ղեկավարների համար: Պատահական չէ, որ այդ աղետալի դեպքերին արիաբար դիմացան նրանք, ովքեր առաջադրվել էին իսկական դեմոկրատական ուղիով: Նրանք իրենց թիկունքին զգում էին կոմունիստների աջակցությունը, և դա նրանց համակում էր վստահությամբ ստեղծված իրավիճակում:

Կուսակցությունը դատապարտում է այն պրակտիկան, երբ բյուրոյի անդամները կամ կուսակցական ապարատի աշխատողները իրենց թույլ են տալիս հրամայել

ընտրովի մարմինների անդամներին: Վերջիններս սկսել են ակտիվորեն ներգրավվել կուսակցական կոմիտեների գործունեության մեջ՝ շրջանի, քաղաքի, հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման կարևոր ուղղություններով մշտական հիման վրա ստեղծված հանձնաժողովների կազմում: Սակայն այժմ այդպիսի հանձնաժողովները անում են միայն առաջին քայլերը, իսկ որոշ տեղեր չեն էլ ստեղծվել: Շատ կարևոր է վերականգնել լենինյան ավանդույթները այդպիսի հանձնաժողովների աշխատանքում և առաջին հերթին կոլեկտիվության սկզբունքը, առանց բացառության հանձնաժողովի բոլոր անդամների իրավունքների լիակատար հավասարությունը: Նրանք պետք է ունենան ցանկացած ինֆորմացիա ստանալու իրավունք, հսկեն ապարատի ցանկացած աշխատողին, ազատորեն ներկա լինեն ցանկացած խորհրդակցությունում: Կոլեկտիվության պարտադիր սկզբունքը, ինչպես սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, անվանական քվեարկությունն է, առանց որի դժվար է ապահովել կոլեգիայի անդամների անձնական պատասխանատվությունը ընդունված որոշումների համար:

Ընտրովի ակտիվի դերի փոփոխության հետ սերտ միասնության մեջ հարկավոր է տեսնել և կուսակցական ապարատի ֆունկցիաները: Հայտնի է, որ վարչահրամայական սիստեմի իշխանության երկար տարիներին կուսակցական կոմիտեների և ապարատի դերը բացարձակ էր, իսկ ընտրովի ղեկավար մարմինների անդամների մեծամասնությանը՝ ձևական: Նրանք մասնակցում էին սոսկ պլենումներին, քվեարկում ապարատի աշխատողների նախապատրաստած որոշումների օգտին:

Այդպիսի պրակտիկան ակնհայտորեն հակասում էր վերակառուցման խնդիրներին, շատ որոշումներ դատապարտում ցածր արդյունավետության: Այն անհամատեղելի է հենց կուսակցական կոմիտեների կոչման հետ՝ որպես քաղաքական ղեկավարման մարմինների: Ահա ինչու, ձեռնամուխ լինելով քաղաքական սիստեմի ռեֆորմին, կուսակցական, պետական և տնտեսական մարմինների ֆունկցիաների սահմանազատմանը՝ կուսակցությունը օրակարգում դրել է կուսակցական ապարատի կառուցվածքի կատարելագործման և գործունեության վճռական բարելավման հարցերը: Լինելով ՍՄԿԿ կառուցվածքի մասը՝ նա կոչված է դառնալու այնպիսի գործիք, որի օգնությամբ ընտրովի մարմինները իրականացնեն իրենց քաղաքական ֆունկցիաները, աշխատանք տանեն ընդունված որոշումները կենսագործելու համար, օգնություն ցույց տան կուսակցական կազմակերպություններին և կոմունիստներին՝ իրենց կանոնադրական պարտականությունները կատարելու գործում: Յուրաքանչյուր կուսակցական կոմիտեից և նրա ապարատից այժմ առաջին հերթին պահանջվում է ունակություն՝ հետևողականորեն անցկացնելու կյանքում հասարակության հեղափոխական նորացման կուսակցության գիծը, գործել ստեղծագործաբար, քաղաքական, գաղափարադաստիարակչական, կազմակերպչական մեթոդներով՝ չհովանավորելով և չկաշկանդելով կուսակցական ստորին օղակներին:

Մեծ կարևորության հարց է կուսակցական ապարատի կազմավորումը: Նրանում աշխատողի առաջադրման պարտադիր պայմանը պետք է լինի սկզբնական կուսակցական կազմակերպության երաշխավորությունը: Նա էլ իրավունք ունի հարց բարձրացնել՝ նրան զբաղեցրած պաշտոնից ազատելու մասին, եթե չի արդարացնում վստահությունը: Դա ուժեղացնում է աշխատողի պատասխանատվությունը ոչ միայն ընտրովի մարմինների առջև այն ապարատում, որտեղ նա գտնվում է, այլև այն կազմակերպության առջև, որը առաջադրել է նրան: Ապարատում ընտրելիս գլխավոր չափանիշը պետք է լինի կոմունիստների քաղաքական հասունությունը, բարոյական հատկանիշները, նորովի աշխատելու ցանկությունը և ունակությունը:

Ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման խթաններից է հրապարակայնությունը: Այդ առնչությամբ հարկ է ելնել լենինյան այն դրույթից, որ մասսաները պետք է ամեն ինչ իմանան, ամեն ինչի մասին դատեն և ամեն ինչին գնան գիտակցաբար: Կուսակցությունը կոչված է աշխատանքում ցույց տալ բացահայտության, հրապարակայնության օրինակ: Եվ այդ ասպարեզում քիչ գործ չի արվել 1985 թ. ապրիլից հետո: Տեսնում ենք, որ բարձրագույն կուսակցական համաժողովների և պետական մարմինների աշխատանքը դառնում է ավելի բացահայտ: Կոմունիստները և անկուսակցականները մեծ հետաքրքրասիրությամբ դիմավորեցին նոր ինֆորմացիոն ամսագիրը՝ «ՍՄԿԿ Կենտկոմի Լրատուն»: Այն պետք է հետևի դեռևս Վ. Ի. Լենինի կենդանության օրոք և մինչև 20-ական թվականների վերջը լույս տեսնող նման հրատարակության ավանդույթներին: Նոր ամսագիրը կենդանի արձագանք է ՍՄԿԿ քաղաքականության մեջ բացահայտության և հրապարակայնության ուժեղացման, կուսակցության վերադաս մարմինների և նրա մյուս օղակների աշխատանքի



մասին կոմունիստներին, ողջ աշխատավորությանը տեղեկատվության վերաբերյալ XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի պահանջների:

Սակայն պետք է ուղղակի ասել. հրապարակայնությունը դեռևս դանդաղ է ճանապարհ հարթում շրջկոմների ու քաղկոմների մակարդակով, որոնք ավելի մոտ են կանգնած սկզբնական կազմակերպություններին, կոմունիստների հիմնական զանգվածներին: Շարունակում են մնալ գաղտնի տեղեկություններ, որոնք չեն բովանդակում ոչ մի գաղտնիություն: Դա ոչ մի կերպ չի համատեղվում կուսակցական կյանքի լենինյան նորմերի, համամիութենական կուսկոնֆերանսի դրույթների հետ: Հարկավոր է ապահովել հրապարակայնության գործնական իրականացումը կուսակցական մարմինների աշխատանքում, չթողնել անպատասխան և անբացատրելի կոմունիստների, անկուսակցականների ոչ մի հարց՝ հիշելով այն մասին, որ աշխատավորների կարիքների հանդեպ քաղաքական խլությունը երբեմն ծնում է սոցիալական լարվածություն, ստեղծում է կոնֆլիկտային իրադրություն, խփում է կուսակցության հեղինակությանը:

Հարկավոր է ընդգծել, որ հրապարակայնությունը, որպես կարևոր հասարակական երևույթ, ունի դասակարգային ծագում: Այն պետք է կրի կուսակցական բնույթ: Հրապարակայնությունը հարկ է ուղղել առողջ ռելսերի վրա, որպեսզի այն չհանգեցվի խմբակայնության, դեմագոգիայի դրսևորման, ազգային կամ նեղ խմբակային անձնապաշտության:

Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի լենինյան ըմբռնումը առավել ակնհայտորեն դրսևորվում է ներկուսակցական դեմոկրատիայի և գիտակցված կուսակցական կարգապահության միասնության ապահովման մեջ: Այն հանդես է գալիս որպես յուրահատուկ կապող օղակ դեմոկրատիայի ու ցենտրալիզմի միջև: Մեր կուսակցությունը ունի մեկ կարգապահություն, մեկ օրենք բոլոր կոմունիստների համար՝ անկախ ծառայությունից և զբաղեցրած պաշտոնից: Կուսակցական կարգապահության էությունը, ինչպես սահմանել է Վ. Ի. Լենինը, գործողությունների միասնության մեջ է, քննարկման և քննադատության ազատության մեջ: Նա նույնպես հիմնավորել է ամուր կարգապահության համար անհրաժեշտ պայմաններ՝ կուսակցականների գիտակցականությունը, նրանց հավատարմությունը կոմունիզմի գործին. նրանց զսպվածությունը և անձնազոհությունը աշխատանքում. կուսակցության ղեկավարության, նրա ստրատեգիայի և տակտիկայի իրավացիությունը այն պայմանով, որպեսզի իրենք՝ լայն մասսաները սեփական փորձով համոզվեն այդ իրավացիության մեջ: Առանց դրա կարգապահություն չի իրականացվի:

Կուսակցական կարգապահության անխզելի բաղադրիչ է քննարկման և քննադատության ազատությունը, որը մարմնավորում է կոմունիստի պարտականությունների ու իրավունքների միասնությունը: Դրանով կուսակցականների համար ստեղծվում է իրական հնարավորություն՝ ակտիվորեն մասնակցելու իրենց կազմակերպությունների գործերին: Քննարկման այդպիսի ազատությունից կոմունիստները օգտվում են առաջին հերթին կուսակցական ժողովներում, կուսբյուրոների ու կոմիտեների նիստերում, որտեղ տրվում է գործերի վիճակի, կոմունիստների գործողության և վարվեցողության քննադատական գնահատականը:

Ցավոք, դեռևս ոչ քիչ է պատահում, որ հանդիպում ես կուսակցության անդամների կողմից բարոյական հիմքերի խախտման, քննադատության ճնշման, կոմսնապարծության և անսկզբունքայնության փաստերի: Մեր կուսակցության մեջ չեն կարող լինել երկակի բարոյականություն, քննադատությունից դուրս փակ գոտիներ և անձնավորություններ: Կուսակցական կոմիտեները կոչված են աչալրջորեն պահպանել կուսակցության պատիվը, կուսակցականի կոչման անաղարտությունը:

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, չկա կոմունիստի ավանգարդային դեր առհասարակ, այն դրսևորվում է նրա պրակտիկ գործերում: Անձնական օրինակը, անձնվեր աշխատանքը նրա բարձր ակտիվության գլխավոր աղբյուրն են: Սակայն մեզ դեռևս չի հաջողվել ամուր պատնեշ դնել անազնիվ, խորամանկ, շահամոլ մարդկանց առջև, որոնք ձգտում են օգուտ քաղել կուսատոմսից: Կուսակցության մեջ ընդունելիս ոչ միշտ է անհրաժեշտ ուշադրություն նվիրվում ընդունվողի քաղաքական, գործնական և բարոյական հատկանիշների վրա: Այդ ամենը չի կարող չանդրադառնալ կուսակցական կազմակերպության մարտունակության վրա: Նրանցից շատերը, այդ թվում և Հայաստանում, չեն կարողացել մնալ սկզբունքային դիրքերում, խստորեն չեն հետևել կուսակցական կյանքի լենինյան սկզբունքների և նորմերի կիրառմանն ու պահպանմանը, վճռական պայքար չեն մղել բացասական երևույթների, կարգապահության թուլացման, հափշտակությունների, կաշառակերության դեմ: Ոչ

միշտ է հարկ եղած հակահարված տրվել գերատեսչականությանը և տեղայնությանը, ազգայնամոլական դրսևորումներին:

ՍՄԿԿ-ն ելնում է այն իրողությունից, որ նրա ղեկավար դերը կլինի այնքան բարձր, որքան լավ՝ նրա որակական կազմը, որքան կազմակերպված կգործեն կոմունիստները, որքան կբարձրանա կուսակցական կարգապահության, նրա անդամների գաղափարական համոզվածության և տեսական պատրաստվածության մակարդակը, որքան հետևողականորեն կիրականացվի դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը:

Կարգապահության ամրապնդման համար պայքարում ավելի մեծ չափերով են բարձրանում սկզբնական կուսակցական կազմակերպությունների նշանակությունն ու պատասխանատվությունը: Նրանք կոչված են սկզբունքորեն գնահատել ցանկացած կոմունիստի և, առաջին հերթին, կոմունիստ-ղեկավարի գործն ու վարքը: Սակայն դեռևս չի վերացվել կարգապահության խախտման համար պատժելու պրակտիկան՝ սկզբնական կազմակերպությանը շրջանցելով: Այդպիսի օրինակները քիչ չեն հանրապետության շրջանների ու քաղաքների կուսկազմակերպություններում: Այստեղ, ըստ էության, «մոռացել են» ՍՄԿԿ կանոնադրության այն դրույթը, որը պահանջում է հանցանք կատարած կոմունիստին պատասխան տալու նախ և առաջ սկզբնական կուսկազմակերպությանը:

Կուսակցության և սոցիալիստական հասարակության մշտական ինքնակատարելագործման գործում բացառիկ մեծ դեր են պատկանում քննադատությանն ու ինքնաքննադատությանը, առանց որոնց հնարավոր չէ արագացված առաջընթացը: Սեփական բացթողումների և վրիպումների ազնվորեն ընդունումը, դրանց վճռական վերացումը միայն կամրապնդեն մարդու հեղինակությունը: Մեր կյանքում առողջ սկզբունքի հաստատման, կադրերի մեջ նորովի աշխատելու ցանկության և ունակության մշակման համար պահանջվում են ամեն կերպ զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, ուժեղացնել պայքարը հանդիսամոլության դեմ: Հարկավոր է ուղղել այն աշխատողներին, որոնք հիվանդագին են ընդունում իրենց հասցեին ասված քննադատական խոսքը: Դրա հետ միասին կուսկազմակերպությունները պետք է ելնեն Վ. Ի. Լենինի այն դիտողությունից, որ ղեկավարները «հրեշտակներ չեն, սրբեր չեն, հերոսներ չեն, այլ բոլորի նման մարդիկ: Նրանք սխալներ են գործում: Կուսակցությունն ուղղում է նրանց» (ԵԼԺ, հ. 21, էջ 503):

Ինքնահանգստացումը խորթ է կուսակցության բնույթին, սոցիալիստական հասարակարգի բնույթին, մեր բարոյականությանը: Եվ այնտեղ, որտեղ խլացնում են քննադատությունը և ինքնաքննադատությունը, ինչպես ասվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, այնտեղ ձևախախտվում է կուսակցական աշխատանքը, ստեղծվում է բարեհոգության և անպատժելիության իրադրություն, որը հանգեցնում է լճացման գործերում, աշխատողների վերասերման: Քննադատությունն ու ինքնաքննադատությունը հարկավոր են ոչ միայն նրա համար, որպեսզի բացահայտեն թերությունները, այլև ցույց տան դրանց վերացման ուղիները, օգնեն շտկմանը:

Մեր օրերում քննադատության նկատմամբ վերաբերմունքը համարվում է վերակառուցման, հասարակության մեջ տեղի ունեցող բոլոր նորի հանդեպ վերաբերմունքի չափանիշ: Այժմ անթույլատրելի է նվազեցնել քննադատական շրջապտույտը: Հենց քննադատության, քննադատությանը մասնակցելու միջոցով, հատկապես ներքևից եկող քննադատության միջոցով են ստեղծվում բացասական երևույթների դեմ վճռական պայքարի, դրանց ժամանակին նախազգուշացման պայմանները ու նախադրյալները: Քննադատությունից է, ի միջի այլոց, սկսվում իսկական դեմոկրատիան: Կուսակցությունը իր կանոնադրության մեջ յուրաքանչյուր կոմունիստի իրավունք է վերապահել քննադատել ցանկացած կուսակցական մարմնի:

Պարզապես ասենք, որ դեռևս կան կուսակցական կոմիտեներ, որոնք նախկինի պես կոմունիստ ղեկավարներին ազատում են սկզբնական կուսկազմակերպությունների առաջ պատասխանատվությունից այն պատճառաբանությամբ, թե ղեկավարների հեղինակությունը պետք է խնայել: Իսկ հանրագումարում ստանում են հակառակ արդյունքը. անպատժելիություն զգացող աշխատողը հաճախ բռնում է ծառայողական դիրքի չարաշահման ուղին, քամահրում է սկզբնական կազմակերպության կարծիքը, դուրս է գալիս նրա հսկողությունից. ի վերջո հարկ է լինում ազատվել նրանից:

ՍՄԿԿ-ն մշտապես կողմնորոշում է այն բանի վրա, որպեսզի քննադատությունը միշտ լինի սկզբունքային, կուսակցական ճշմարտության վրա հիմնված, ազնիվ, կոնստրուկտիվ: Մեր կուսակցության մեջ և երկրում զարգացող դեմոկրատիան խոր շտ-



կումներ է մտցնում քննադատողների և քննադատվողների, ստուգողների և ստուգվողների փոխհարաբերություններում: Այդ հարաբերությունները պետք է հաստատվեն ընդհանուր, առաջին հերթին գործերի բարելավման շահագրգռությունների հողի վրա: Այստեղ ավելի շատ հարկավոր է երկխոսություն առանց ձանձրացուցիչ խրատաբանության և դատախազական տոնի: Ոչ ոք չունի վերջին ատյանի իրավունք: Դրա հետ միասին հարկավոր է քննադատության մեջ մտցնել շարժման և կյանքի դրական լիցք, չընտելանալ դրան, այլ արձագանքել պրակտիկ գործերով, վարմունքով:

Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում առողջ մթնոլորտի պարտադիր նախադրյալը համարվում է կոլեկտիվության սկզբունքի հետևողական անցկացումը կյանքում: Շատ կարևոր լրացումներ են մտցվել ՍՄԿԿ կանոնադրության մեջ կուսակցության XXVII համագումարում: Այն օրինականացրել է կոլեկտիվությունը կուսակցության բոլոր կազմակերպությունների և ղեկավար մարմինների աշխատանքում և անձնական պատասխանատվությունը իր պարտականությունների և կուսակցական հանձնարարությունների կատարման համար: Կոլեկտիվությունը ստեղծում է բոլոր պայմանները՝ կոմունիստների ակտիվության և նախաձեռնության զարգացման, կադրերի ճիշտ դաստիարակության համար: Այն ապահովագրում է կուսակցությանը և նրա կոմիտեներին ու կազմակերպություններին սխալներից, միակողմանի որոշումներ ընդունելուց, հանդես է գալիս որպես պատնեշ սուբյեկտիվ խելացնորության դեմ:

Կուսակցական մարմինների գործնական կոլեկտիվության ապահովման նպատակով տեղի է ունենում ընտրովի մարմինների թվակազմի աճի անշեղ պրոցես, հատկապես բանվորների և կոլտնտեսականների թվից: Հատկանշական է, որ պրակտիկորեն կուսակցության բոլոր շրջկոմներում, քաղկոմներում, մարզկոմներում, երկրկոմներում, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներում բանվորները և կոլտնտեսականները մտնում են այդ կոմիտեների բյուրոների կազմում:

Պրակտիկան հաստատում է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի ինտերնացիոնալ բովանդակությունն ու բնույթը և նրա պահանջներին խստագույն հետեվելը: Այդ սկզբունքի հիման վրա կյանքի և գործունեության կառուցումը օբյեկտիվ անհրաժեշտություն է, հաստատված համաշխարհային կոմունիստական շարժման շատ տասնամյակներով և մեր բարեկամների մոտ սոցիալիստական շինարարության հարուստ պրակտիկայով:

Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքին համապատասխան յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն ինքնավար է տեղական հարցերի լուծման մեջ, եթե նրա գործողությունները չեն հակասում վերադաս կուսակցական մարմինների որոշումներին: Կուսկազմակերպությունները ինքնուրույն են որոշում իրենց գործունեության ձևերն ու մեթոդները՝ հաշվի առնելով կոնկրետ ազգային պայմանները: Դրա հետ միասին բոլոր կուսակցական կազմակերպությունները կոչված են ուշադրությամբ ուսումնասիրել և լայնորեն օգտագործել միմյանց փորձը:

Մարքս-լենինյան կուսակցության համար անհանդուրժելի է մեկուսացման կոնցեպցիաների և հայացքների որևէ կարգի քարոզը, որոնց անցկացումը պրակտիկայում կնշանակեր հակադրել մասը ամբողջին, կուսակցությունն իր առանձին ջոկատներին, ինտերնացիոնալ և ազգային խնդիրները: ՍՄԿԿ Կենտկոմի պլենումին նախապատրաստվելու առթիվ «ՍՍՀՄ-ում ազգամիջյան հարաբերությունների կատարելագործման մասին» Կենտկոմի որոշման մեջ նշվում է, որ կուսակցական կազմակերպությունները և կոմունիստները կոչված են պաշտպանել և թույլ չտալ վարկաբեկելու կուսակցության և ժողովրդի ինտերնացիոնալիստական նվաճումները:

Այս դժվարին, լարված ժամանակ, երբ հանրապետական կուսակցական կազմակերպության առաջնահերթ խնդիրը բոլոր մարդկանց ուժերը երկրաշարժի հետևանքների վերացման գործին մոբիլիզացնելն է, նա զգում է երկրի բոլոր հանրապետությունների կոմունիստների, աշխատավորների եղբայրական օգնությունն ու աջակցությունը: Ծանր փորձության պահին Հայաստանի կուսակցական կազմակերպությունները իրենց դրսևորեցին լավագույն կողմերով: Բայց տարերային աղետը երևան հանեց նաև թուլություններ, կուսակցական աշխատանքի ոճի ու մեթոդների բազմաթիվ թերություններ, ներկուսակցական կյանքի առավել վճռական դեմոկրատացման կուրսի թերագնահատում:

Մեր կուսակցության կյանքի և գործունեության ողջ բազմակողմանի պրակտիկան համոզիչ կերպով հաստատում է դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի կենսունակության անանց նշանակությունը:

---

# ԴԻՎԱՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԽԱՉՄԵՐՈՒԿՆԵՐՈՒՄ

## (Լ. Մ. ԿԱՐԱԽԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ՀԵՇՏ ՉԷ ԱՅՍՕՐ սովետական դիվանագետների մասին խոր և համակողմանի պատում գրելը: Առավել ևս սովետական դիվանագիտության ակունքների մոտ կանգնած, շուրջ երկու տասնամյակ անփոփոխ ՍՍՀՄ արտաքին հարաբերությունների առանցքում գտնվող և ինչ-որ տեղ նաև նրանում եղանակ ստեղծող լենինյան շրջապատի այնպիսի անհատականություններից մեկի մասին, ինչպիսին էր Լև (Լևոն) Միքայելի Կարախանը (Կարախանյան): Եվ հարցը ոչ միայն պատմագիտությանը տարիներ շարունակ սուբյեկտիվորեն պարտադրված կապանքներից ձերբազատվելու կարողության մեջ է, այլև նրանում, որ հետազոտողները դեռևս զուրկ են համապատասխան արխիվային նյութերից, ասել է թե՝ հիմնական սկզբնաղբյուրներից, ըստ ամենայնի օգտվելու հնարավորությունից: Մի հանգամանք, առանց որի ստեղծված ոչ մի ուսումնասիրություն չի կարող լիարժեք համարվել: Հուսադրիչ է, անշուշտ, այն, որ վերակառուցման այս հեղափոխիչ ժամանակաշրջանում այս գործը նույնպես սկսել է տեղից շարժվել: Մամուլում հրապարակված տվյալների համաձայն, վերջին երեք տարիների ընթացքում արգելքը հանվել է ՍՍՀՄ արտաքին քաղաքականությանը վերաբերող ավելի քան 10 հազար գործի վրայից: Սակայն, եթե նկատի առնենք, որ նույն կարգի շուրջ 400 հազար արխիվային գործ դեռևս շարունակում է մնալ փականքի տակ և որ նրանցից յուրաքանչյուրը պարունակում է 200—250 էջ, հասկանալի կդառնա, թե ինչպիսի վիթխարի հարստությունից օգտվելու հնարավորությունից են դեռևս զուրկ պատմաբանները: Իսկ ո՞վ կարող է վստահորեն ասել նշված նյութերում որքան արժանահիշատակ էջեր կան անմիջականորեն Կարախանին և նրա գործունեությանը վերաբերող:

Կարախանի կյանքի վաղ շրջանի վերաբերյալ կցկտուր տեղեկություններ են պահպանվել: Բայց այդքանն էլ բավական է ըմբռնելու համար, որ նա արդեն պատանեկան տարիներից բուռն հասունացում է ապրել: Ծնվել է 1889-ի հունվարի 20-ին (փետրվարի 1-ին) Թիֆլիսում՝ ճանաչված փաստաբան Միքայել Հովսեփի (Սոսի) Կարախանյանի ընտանիքում: 1904-ին, ընդամենը 15 տարեկանում, անդամագրվել է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կազմակերպությանը: Ինքնըստինքյան հասկանալի է, որ դրան նախորդել և հաջորդել է հեղափոխական ընդհատակյա որոշակի աշխատանքը, որի մասին, կոնկրետ փաստերի բացակայության պատճառով, կարելի է միայն ենթադրել: Սակայն հավաստի է, որ այդ պահից ի վեր նա հայտնի է դարձել քաղաքի ոստիկանությանը, որը նրան «Հերոս» մականունով էր կնքել: Այսօր դժվար է բացատրել, թե ինչն էր ստիպել Կարախանյանների ընտանիքին թողնելու Թիֆլիսը և տեղափոխվելու, Կարախանի բառերով ասած՝ «անծանոթ մի երկրամաս, ուր չկային ո՛չ ծանոթներ, ո՛չ հարազատներ», բայց փաստը այն է, որ 1905 թ. վերջերին Կարախանյանները բնակություն են հաստատում Մանջուրիայի Խարբին քաղաքում: Նա կապեր է հաստատում ՌՍԴԲԿ-ի տեղի խմբի հետ, կուսակցական կապավորի դերում շրջագայում է Պրիմորիեի և Անդրբայկալի քաղաքներում, հաճախակի այցելում է Վլադիվոստոկ, աշխատանք է տանում Մանջուրիայում գտնվող ռուսական բանակի զինվորների, խաղաղօվկիանոսյան նավատորմի ծովայինների շրջանում, ընկերական սերտ հարաբերություններ պահպանում ուսանողների, նավահանգըստի բանվորների, տեղի սոցիալ-դեմոկրատների հետ:

1908-ի դեկտեմբերին Կարախանը առաջին անգամ մեկնում է Պետերբուրգ՝ իր երազանքի քաղաքը, և մնում մինչև 1910-ի գարունը: Մայրաքաղաքի կյանքին ծանոթանալուց բացի, նա այստեղ գործում էր երեք ուղղությամբ՝ թղթակցում էր հեռավորարևելյան թերթերից մեկին, ինչը նրան ապրուստի միջոց էր ապահովում ամենից առաջ, նախապատրաստվում էր տեղի համալսարանի իրավաբանական ֆակուլտետ ընդունվելու համար և, իհարկե, կատարում էր կուսակցական հանձնարարություններ:

Կարիքի մեջ գտնվող ծնողների խնդրանքով վերադառնալով Խարբին, 1910 թ. օգոստոսի 12-ին նա ձերբակալվում է առաջին անգամ և երկու շաբաթ պահվում բանտում: Այդ օրից, նրա ոչ մի քայլը ոստիկանության տեսադաշտից դուրս չի մնում: Եվ դա այնպիսի հետևողականությամբ, որ Կարախանի կենսագրության մինչհեղափոխական շրջանը շատ բանով կարելի է վերականգնել ոստիկանության դեպարտամենտում պահպանված զեկուցագրերի ու լրատվությունների օգնությամբ: Համաձայն դրանց, 1912 թ. դրությամբ նա բնութագրվում է որպես սոցիալ-դեմոկրատական կուսակցության «գործարար և լուրջ աշխատող»: 1911-ի մարտին Կարախանը մեկնում է Պետերբուրգ, այս անգամ սակայն մշտական բնակություն հաստատելու նպատակով և եթե մերթ ընդ մերթ ուղևորվում է Հեռավոր Արևելք, ապա միայն կուսակցական հանձնարարություններ կատարելու և ծնողներին այցելելու նպատակով: Այսպես, նա Վլադիվոստոկ է գալիս 1912 թվականին Պրագայում կայացած ՌՍԴԲԿ VI համառուսական կոնֆերանսից հետո՝ տեղի կուսակցական կազմակերպություններում նրա որոշումները պարզաբանելու համար:

1911-ի աշնանը Կարախանին վերջապես հաջողվում է ընդունվել Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը, սակայն շատ չանցած՝ 1912-ին նա ձերբակալվում է չարտոնված ուսանողական հավաքույթին մասնակցելու համար և հեռացվում է համալսարանից:

Բանվորական շարժման հարաճուն վերելքը ոչ միայն խթանում էր քաղաքական կուսակցությունների գործունեության աշխուժացումը, այլև հող էր ստեղծում ամենատարբեր ուղղությունների կազմակերպությունների ձևավորման համար: 1913-ի նոյեմբերին Պետերբուրգում առաջանում է «մեժռայոնցիներ» անվամբ հայտնի Միավորված սոցիալ-դեմոկրատների միջշրջանային կազմակերպությունը: Նրա մեջ մտնում էին մենշևիկ կուսակցականների մի մասը, «վպերիոդավականները», կուսակցությունից անջատված բոլշևիկ-հաշտվողականները, իսկ 1917-ի մայիսին միանում նաև արտասահմանից վերադարձած Տրոցկին և նրա հետևորդները: Ունենալով ցենտրիստական դիրքորոշում՝ «մեժռայոնցիները» խնդիր էին դրել Պետերբուրգում գործող բոլշևիկյան և մենշևիկյան կազմակերպությունների միավորման ճանապարհով ստեղծել «միասնական ՌՍԴԲԿ»: Այս կազմակերպության սկզբնավորման պահից նրան է հարում նաև Կարախանը ու, դառնալով «մեժռայոնցիների» Պետերբուրգի կոմիտեի անդամը, աստիճանաբար ղեկավար դեր է սկսում խաղալ նրանում՝ Վ. Վոլոդարսկու, Ա. Իոֆֆեի, Ա. Լունաչարսկու, Դ. Մանուիլսկու, Մ. Ուրիցկու և ուրիշների հետ միասին: Կարախանը գործարար մասնակցություն է հանդես բերում «մեժռայոնական» կոմիտեների՝ «Տեքստիլշչիկ», «Ռաբոչիյե վեդոմոստի» ամսագրերի, իսկ ավելի ուշ նաև կազմակերպության անլեգալ օրգան «Վպերիոդի» հրատարակմանը: Գրում է թռուցիկներ ու հոդվածներ:

Սկսվում է առաջին համաշխարհային պատերազմը: Այն ավելի է խորացնում հեղափոխական ճգնաժամը երկրում: Պատերազմի և խաղաղության բոլոր հանգուցային հարցերում Կարախանը կանգնում է լենինյան դիրքերում: Ոստիկանության տեղեկագրերը վկայում են, որ պատերազմի սկզբից շատ չանցած Կարախանը մեկնում է Հեռավոր Արևելք, լինում Վլադիվոստոկում, Խարբինում, վերականգնում ընդհատված կապերը տեղի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների հետ: Իսկ հոր մահից հետո միայնակ մնացած մորը վերցնելով իր հետ, վերադառնում է Պետրոգրադ, որտեղ այդ ժամանակ սովորում էր նաև հարազատ եղբայրը՝ Հովսեփը (Իոսիֆ): Հեղափոխական աշխատանքի մեջ փաստորեն ընդգրկվում է նաև մայրը՝ Նինա Թաթուլի Կարախանյանը: Մայրաքաղաքում մոր անունով ձեռք բերված տանը, Կարախանը և նրա ընկերները ստեղծում են տպարան, որի կառավարիչը դառնում է հենց ինքը՝ Կարախանը: Այստեղ տպագրվում էին նաև անլեգալ նյութեր: Դ. Մանուիլսկու, Մ. Ուրիցկու, Կ. Յուրենևի և մյուսների մասնակցությամբ Կարախանը հիմնում է նաև «Նովայա զեմլյա» («Նոր երկիր») ինտերնացիոնալիստական լեգալ ամսագիրը:

Շատ կարևոր էր, որ մի շարք անհաջող փորձերից հետո Կարախանին վերջապես հաջողվում է, որպես հեռավորարևելյան մի շարք թերթերի թղթակցի, թույլտվություն ստանալ մասնակցելու Տավրիկյան պալատում կայացող պետական դումայի նիստերին: Դա հնարավորություն է տալիս նրան լիարժեք ինֆորմացիա ունենալու երկրում տեղի ունեցող կարևոր սոցիալ-տնտեսական և քաղաքական անցքերի մասին, շփվելու և ճանաչելու քաղաքական

կուսակցությունների և կառավարող շրջանների շատ ներկայացուցիչների, հասու լինելու բացահայտ և քողարկված առնակտման, բուռն վեճերի ու բախումների:

1915-ի սեպտեմբերի 1-ին հետևում է Կարախանի հերթական ձերբակալությունը: Նրան կալանում են իր իսկ տնօրինած տպարանից դուրս գալու պահին: Չկարողանալով քիչ թե շատ ուղղակի հանցանշաններ գտնել նրա դեմ՝ իշխանությունները երկար քաշքշուկից հետո նույն թվականի հոկտեմբերի 4-ին, առանց դատ ու դատաստանի որոշում կայացրեցին նրան վարչական կարգով «մայրաքաղաքում ռազմական դրության գործողության ողջ ժամանակաշրջանի համար արտաքսելու Իրկուտսկի նահանգ՝ ոստիկանության հըսկողությամբ»:

Քաղաքական այլ աքսորյալների հետ միասին նա ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք է տանում տեղի բնակչության և աքսորականների շրջանում, գրում է հոդվածներ Անդրբայկալի սոցիալ-դեմոկրատական մամուլի համար, կատարում կուսակցական հանձնարարություններ: Նրան հաջողվում է նույնիսկ մի քանի անգամ գաղտնի գալ մայրաքաղաք, շրջագայել Հեռավոր Արևելքի և Սիբիրի քաղաքներում: Հետևանքը լինում է այն, որ ազատ աքսորյալի վիճակում գտնվող Կարախանը կրկին ձերբակալվում է և այս անգամ նետվում Իրկուտսկի բանտը: Բայց մինչև իշխանությունները դատավճիռ կկայացնեին Կարախանի նկատմամբ, Սիբիր հասավ փետրվարյան հեղափոխության և ցարի տապալման լուրը: Բանտերի դռները բացվեցին բոլոր քաղաքական բանտարկյալների առջև: Երեկվա վտանգավոր կալանավորն այսօր արդեն ընտրվում է Իրկուտսկի սովետի գործկոմի անդամ: Բայց մնալ այստեղ, երբ գլխավոր իրադարձությունները ծավալվում էին մայրաքաղաքում, նա չէր կարող: Եվ 1917-ի ապրիլի 2-ին Կարախանը Պետրոգրադում էր: Երկրում ստեղծված երկիշխանության քաղաքական բարդ իրադրության պայմաններում կողմնորոշվելու գործում նրան օգնեցին Լենինի հռչակավոր ապրիլյան թեզիսները:

Գլխավորն այդ փուլում բոլշևիկների հետ «մեժռայոնցիների» միավորման ապահովումն էր: Այդ դիրքորոշումը Կարախանի հետ միասին սկզբունքորեն պաշտպանում էին նաև անվանի մյուս «մեժռայոնցիները»՝ Ա. Լունաչարսկին, Դ. Մանուիլսկին, Լ. Տրոցկին, Մ. Ուրիցկին և ուրիշներ: Մայիսի սկզբներին կայացած «մեժռայոնցիների» կազմակերպության կոնֆերանսը ընտրեց մի խումբ ընկերների, այդ թվում նաև Կարախանին, որոնք պետք է հանդիպեին Լենինին և խնդրեին նրան ելույթ ունենալու իրենց կոնֆերանսում: Լենինն ընդառաջեց նրանց ցանկությանը: Նա գտնում էր, որ «մեժռայոնցիների» ու բոլշևիկների միջև սկզբունքային տարաձայնությունների բացակայությունը միանգամայն հնարավոր ու անհրաժեշտ է դարձնում նրանց միավորումը: Այս պատասխանատու օրերին Կարախանն ի թիվս այլ «մեժռայոնցիների» մտնում է ՌՍԴԲ(բ)Կ Կենտկոմին առընթեր ստեղծված «մունիցիպալ» խմբում, իսկ ապա ընտրվում է Պետրոգրադի կենտրոնական քաղաքային դումայի անդամ:

Լեգալ աշխատանքին զուգընթաց, Կարախանը նաև անլեգալ գործունեություն է ծավալում՝ կապված կուսակցության վեցերորդ համագումարի նախապատրաստման հետ, որում պետք է վերջնականապես վճռվեր նաև «մեժռայոնցիների» և բոլշևիկների միավորման խնդիրը: Համագումարին, որը կայացավ 1917-ի ամռանը, նա մասնակցում էր խորհրդակցական ձայնի իրավունքով: Կայացած որոշումից հետո, նա ոչ միայն դարձավ բոլշևիկյան կուսակցության լիիրավ անդամը, այլև բոլշևիկյան ֆրակցիայի առաջարկությամբ ընտրվեց Պետրոգրադի սովետի նախագահության անդամ, իսկ որոշ ժամանակ անց՝ նաև քարտուղար: Բոլշևիկյան կենտրոնական օրգան «Պրոլետարի» թերթի աշխատանքը բարելավելու նպատակով ՌՍԴԲ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ ընդլայնվեց նրա կոլեգիան և նրա անդամներից յուրաքանչյուրի վրա դրվեց թերթի բաժինների ղեկավարումը: Կարախանի վրա դրվեց թղթակցական խրոնիկայի բաժինը գլխավորելու գործը:

Կուսակցության համար շահեկան էր Կարախանի գործունեությունը բոլոր ասպարեզներում, բայց կարևորության տեսակետից ամենից առաջ, անշուշտ, Պետրոգրադի սովետի գործկոմում, որտեղ նա կարողանում էր անհրաժեշտ հակահարված տալ էսէռներին ու մենշևիկներին: Եվ պատահական չէ, որ երբ Պետրոգրադի սովետի գործկոմը որոշում է կայացնում ռազմահեղափոխական կոմիտե ստեղծելու մասին, նրա կազմում Ա. Անտոնով-Օվսեենկոյի, Ն. Կռիլենկոյի, Վ. Մոլոտովի, Ն. Պոդվոյսկու և ուրիշների հետ միասին մտնում է նաև Կարախանը: Իսկ մի քանի օր անց ռազմահեղափոխական կոմիտեն նրան ընտրում է իր քարտուղար:

Այդ օրերին Սմոլնին մեղվափեթակի էր նման: Անհնար է թվարկել աշխատանքի այն բոլոր ծավալները, որ այս բուռն օրերին կատարում էր Կարախանը, բայց հիմնականը՝ զինված ապստամբության նախապատրաստության և անցկացման ընթացիկ հարցերն էին և սովետների համառուսաստանյան երկրորդ համագումարի նախապատրաստումը: Սմոլնիում այդ իրողությունների ականատեսը եղել է Ջոն Ռիդը, որը և իր նշանավոր գրքում վկայել է. «Միջանցքում ես հանդիպեցի Կարախանին, բոլշևիկյան Կենտկոմի անդամին: Նա ինձ պատմեց, թե ինչպիսին է լինելու նոր կառավարությունը. «Ճկուն կազմակերպություն, զգայուն՝ ժողովրդի կամքի նկատմամբ, որն արտահայտվելու է տեղական նախաձեռնությանը մեծագույն ազատություն տվող սովետներով: Ժամանակավոր կառավարությունը ներկայումս ճիշտ այնպես է կաշկանդում տեղական դեմոկրատիան, ինչպես դա արվում էր ցարի ժամանակ... Նոր հասարակությունում նախաձեռնությունը պետք է բխի ներքևից: Կառավարման ձևերը կսահմանվեն ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության կանոնադրության համաձայն, Պառլամենտը կդառնա սովետների համառուսաստանյան համագումարի առջև պատասխանատու նոր Կենտգործկոմը, որը պետք է հրավիրվի շատ հաճախ, մինիստրությունները կկառավարեն ոչ թե առանձին մինիստրները, այլ կոլեգիաները, որոնք անմիջականորեն պատասխանատու կլինեն Սովետների առջև»:

Այսօր՝ վերակառուցման այս հեղափոխիչ ժամանակներում, չափազանց ուշագրավ է ծանոթանալ երկրի կառավարման այն ծրագրային դրույթներին, որ ներկայացնում էր Լ. Կարախանը: Դա իսկական լենինյան պլատֆորմ է: Մենք գիտենք, թե ինչպիսի ձևախախտման ենթարկվեցին դեմոկրատական և ժողովրդական այդ սկզբունքները հետագա ժամանակներում, անհատի պաշտամունքի, նրան հաջորդող լճացման տասնամյակներում: Բայց գիտենք նաև, որ այսօր կուսակցության և ժողովրդի պայքարը գնում է հենց հանուն լենինյան այդ ակունքների վերածնման:

Սոցիալիստական հեղափոխությունը հաղթանակեց: Երկրում հաստատվեց սովետական իշխանություն: Հաղթանակած հեղափոխության պայմաններում Կարախանի ստորագրած առաջին փաստաթղթերից մեկը Պետրոգրադի ռազմահեղափոխական կոմիտեի հանձնարարականն էր Նիկոլաևյան զինվորական հիվանդանոցից քաղաքական բանտարկյալներին ազատելու մասին: Կարախանի գլխավոր կենսագիր Բ. Սոկոլովը վկայում է, որ արխիվներում պահպանվել են հեղափոխությանը հաջորդած առաջին օրերին վերաբերող բազմաթիվ փաստաթղթեր, որոնց վրա Վ. Ի. Լենինի, Վ. Բոնչ-Բրուևիչի, Ն. Պոդվոյսկու, Յա. Սվերդլովի ստորագրությունների հետ միասին դրված է նաև Կարախանի ստորագրությունը:

Շուտով Կարախանի գործունեության բնույթն անակնկալ ձևով փոխվեց: Ըստ որում փոխվեց մեկընդմիշտ և անվերադարձ: Եվ զարմանալին այն է, որ տասնումով և տարակուսանքով ստանձնելով իր համար նոր աշխատանքը, նա շատ շուտով այնպես մերվեց դրան, որ կարծես ծնվել ու իր ողջ կյանքով իրեն նախապատրաստել էր միմիայն այդ բանի համար: Այդ աշխատանքը դիվանագիտությունն էր: Դա պատահեց 1917-ի նոյեմբերին:

Սովետների համառուսաստանյան II համագումարում հանդիսավորապես հռչակելով հաշտության մասին դեկրետը՝ Լենինի գլխավորած սովետական կառավարությունը հետևողականորեն ձեռնամուխ եղավ երկիրը պատերազմից դուրս բերելու կարևոր, բայց բարդ ու դժվարին խնդրի լուծմանը: Այդ նպատակով անհրաժեշտ էր բանակցությունների մեջ մըտնել Գերմանիայի հետ նախ զինադադար, իսկ ապա նաև հաշտություն կնքելու համար: Քանի որ դիվանագիտական հին կորպուսը սովետական իշխանության նկատմամբ հավատարմությամբ աչքի չէր ընկնում, պատվիրակության ընտրությունը կատարվում էր այն կադրերից, որոնք այդ պահին տրամադրում էր սովետական իշխանությունը և որոնք իրենց քաղաքական, գաղափարական, գործնական հատկություններով, օժտվածությամբ ու գիտելիքներով կարող էին օգտակար լինել այդ արտակարգ պատասխանատու աշխատանքում: Այդ մարդկանցից մեկը դարձավ Կարախանը:

Զինադադարի և ապա հաշտության բանակցությունները կայացան երեք փուլով: Սովետական երեք պատվիրակություն ամեն անգամ նորացված կազմով վարեց այդ բանակցությունները: Բոլոր երեք պատվիրակություններում անփոփոխ էր մնում միայն Կարախանը, որի վրա դրված էր քարտուղարի պարտականությունները: Դա վկայում էր այն բանի մասին, որ Կարախանի համար միանգամայն նոր այս ոլորտում էլ նա գործում էր անխափան ու շրջահայաց: Սակայն այդ ամենը նրան հեշտությամբ չէր տրվում: Պետք էր իմանալ, թե Կարախանն ինչպիսի փութաջանությամբ էր օգտագործում գիշերային ժամանակը դիվանագիտական անհրաժեշտ գիտելիքներ ձեռք բերելու համար: Նրա հաղորդած ամենօրյա ինֆորմացիաներն այն հուսալի աղբյուրներն էին, որոնց օգնու-

թյամբ Լենինը, Սովետական կառավարությունը հետևում էին բանակցությունների ընթացքին: Այդ ինֆորմացիաները պարբերաբար տպագրում էր «Իզվեստիա» թերթը:

Հարկ չկա այստեղ կանգ առնելու Բրեստի հաշտության պայմանագրի կնքման հետ կապված դրամատիկ իրադարձությունների վրա: Դա հանրահայտ է: Միայն նշենք, որ երրորդ պատվիրակության ղեկավարի դերում՝ բանակցությունները ինքնակամ տապալած Լ. Տրոցկուն 1918-ի փետրվարի 25-ին փոխարինեց հենց նոր անգլիական բանտից ազատված և հայրենիք վերադարձած Գ. Չիչերինը: Մի մարդ, որի հետ Կարախանը կողք-կողքի ավելի քան մեկ տասնամյակ պետք է քայլեր միջազգային դիվանագիտության բանուկ շատ խաչմերուկներում՝ մարմնավորելով սովետների երկրի արտաքին քաղաքականության կուրսը:

1918 թվականի մարտի 3-ին ստորագրվեց Բրեստի հաշտության պայմանագիրը: Նրա տակ դրված էր նաև Կարախանի ստորագրությունը: Պայմանագրի համաձայն Ռուսաստանից անջատվում էին Լեհաստանը, Լիտվան և Բելոռուսիայի ու Լատվիայի մի մասը: Սովետական զորքերը պետք է թողնեին Լատվիան և Էստոնիան (որտեղ մտցվում էին գերմանական զորքեր), Ուկրաինան, Ֆինլանդիան, Ալանդական կղզիները, ինչպես նաև Արդահանի, Ղարսի և Բաթումի շրջանները, որոնք անցնում էին Գերմանիայի դաշնակից Թուրքիային: Սովետական Ռուսաստանի համար օդի պես անհրաժեշտ խաղաղությունը գնվել էր ահա այսպիսի թանկ գնով: Դա թալանչիական, Ռուսաստանի համար ստորացուցիչ պայմանագիր էր: Այնքան ստորացուցիչ, որ նրա ստորագրման համար այնպիսի համառությամբ մարտնչող Լենինը... Բայց ավելի լավ է խոսքը տանք Ե. Ստասովային. «... Ես Վլադիմիր Իլյիչի առանձնասենյակում էի, երբ Կարախանը բերեց Բրեստի հաշտության պայմանագրի բուն տեքստը: Երբ ուզում էր բացել այն ու ցույց տալ Վլադիմիր Իլյիչին, Իլյիչը կտրականապես բողոքեց.

— Դուք ուզում եք, որ ես ոչ միայն ստորագրեմ այս անամոթ պայմանագիրը, այլև այն կարդամ: Ո՛չ, ո՛չ, երբե՛ք»:

Ընդամենը ութ ամիս անց, Սովետական Ռուսաստանի կենտգործկոմը չեղյալ կհայտարարի Բրեստի անիրավահավասար, թալանչիական պայմանագիրը: Եվ տերիտորիալ բոլոր զիջումները, այդ թվում նաև Անդրկովկասում, կհամարի անվավեր:

Բրեստի հաշտության պայմանագրի հաստատումից մի քանի օր անց՝ 1918-ի մարտի 13-ին, Չիչերինը նշանակվում է նախ արտաքին գործերի ժողկոմի պաշտոնակատար, իսկ մայիսի 30-ին՝ ժողկոմ: Նույն թվականի մայիսի 20-ին Լենինը ստորագրում է Կարախանին արտաքին գործերի ժողկոմի տեղակալ նշանակելու մասին ժողկոմխորհի որոշումը:

Աշխատանքն ահռելի էր: Իսկ հիմնական լուծը քաշողները երկուսով էին: Գլխավոր խնդիրներից մեկը, որով զբաղվում էր Կարախանը, նոր-նոր կազմակերպվող արտաքին գործերի ժողկոմատի ապարատի ստեղծումն էր, այն անհրաժեշտ կադրերով համալրումը: Եթե Լենինը մեծ ավանդ ուներ արտաքին գործերի ժողկոմատը ղեկավար կադրերով համալրելու գործում, ապա ամբողջ ապարատի կազմավորումը իրագործում էին Չիչերինը և գլխավորապես Կարախանը: Բանիմաց ու շրջահայաց, քաղաքական բարդ իրադրությունում ճիշտ կողմնորոշվելու կարողությամբ օժտված, լեզուների տիրապետող, ինտելեկտուալ կադրերի առկայության պայմաններում էր միայն հնարավոր լուծել սովետական դիվանագիտության առջև դրված խիստ կարևոր, կենսական խնդիրը՝ շուտափույթ դուրս բերել սովետների երկիրը քաղաքական ու տնտեսական մեկուսացումից, դիվանագիտական հարաբերություններ հաստատել կապիտալիստական աշխարհի երկրների հետ: Լենինը, Չիչերինն ու Կարախանը մեծ նշանակություն էին տալիս մանավանդ արտասահմանյան երկրներում աշխատող սովետական դիվանագիտական ներկայացուցիչների գործնական հատկանիշներին, որոնց արդյունավետ աշխատանքից էր մեծապես կախված երկրի միջազգային հեղինակության ամրապնդման խնդիրը:

Գործելով արտակարգ ծանր պայմաններում՝ Չիչերինի և Կարախանի աշխատանքային օրը սովորաբար շարունակվում էր մինչև խոր գիշեր: Այդ աշխատակարգը փաստորեն տարածվում էր նաև ապարատի վրա: Սովորական էր դարձել, օրինակ, նիստերը գումարել գիշերվա ժամը 12-ին և ավարտել լուսաբացին մոտ: Բանը հասավ նրան, որ Լենինը ստիպված եղավ Կենտկոմի հատուկ որոշում ընդունել. տալ և արգելել գիշերվա ժամը 1-ից հետո կոլեգիաների գումարումը: Բայց դա էլ չօգնեց գործին, քանի որ նման աշխատակարգը ոչ թե Չիչերինի ու Կարախանի քմահաճույքի, այլ աշխատանքի մեծ ծավալների արդյունք էր: Ըստ որում օտարերկրյա պետությունների հետ հարաբերությունների կարգավորմանը զուգընթաց աշխատանքը ոչ թե պակասում, այլ հե-



տըզհետե ավելանում էր: Ահա թե ինչ էր գրում այդ մասին Չիչերինը 1920 թ. մայիսի 5-ին Լենինին ուղղված նամակում. «Ես կարող եմ համարձակորեն ասել, որ մի ամբողջ շարք պետությունների հետ հարաբերությունների զարգացման պայմաններում՝ մեզ խեղդող վերին աստիճանի պատասխանատու աշխատանքի դեմ վերջին ամիսների մեր պայքարը հերոսական է եղել: Մենք ի վիճակի ենք այն հաջողությամբ կատարել միայն այն բանի շնորհիվ, որ ես ընկ. Կարախանի հետ բացարձակապես փոխադարձաբար վարժվել ենք իրար, այնպես որ, առանց ժամանակ վատնելու դատողությունների վրա, կես խոսքից միմյանց հասկանում ենք ու առանց դժվարության բաշխում ենք աշխատանքը, բացարձակապես ընտելանալով կիսել այն մեր միջև: Ընդհանուր առմամբ և ամբողջովին իմն առավել ընդհանուր քաղաքական աշխատանքն է, իսկ նրանը՝ մանրամասների ծով է, որը նա կարողանում է հաղթահարել միայն գործերում արագ և հեշտ կողմնորոշվելու և դրանք ըմբռնելու հիանալի ընդունակության, պարզ գիտակցության ու հիանալի քաղաքական հոտառության շնորհիվ, որոնք նրան դարձնում են բացառապես անփոխարինելի այս բնագավառում»:

Արտաքին գործերի ժողկոմատի աշխատանքն է՛լ ավելի է բարդանում սկսված քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի պայմաններում: Կարախանը մեծ ուշադրությամբ է հետևում հատկապես Անդրկովկասում ծավալվող իրադարձություններին, որտեղ ի խախտումն Բրեստի հաշտության պայմանագրի՝ 1918-ի գարնանը բարբարոսական հարձակում էին սկսել թուրք զավթիչները: Նկատի ունենալով Գերմանիայի և Թուրքիայի դաշնակցությունը և այն, որ միջպետական ոչ մի կապ գոյություն չուներ Ռուսաստանի և Թուրքիայի միջև, Սովետական Ռուսաստանը՝ հանձինս Չիչերինի ու Կարախանի ստորագրած նոտայի, իր զայրույթն էր արտահայտում թուրքերի հարձակման կապակցությամբ և պահանջում էր Գերմանիայից, որպեսզի նա զսպի իր դաշնակցին: «Թուրքական զորքերի հարձակումը,— ասված էր այդ նոտայում, — Կովկասյան ճակատում ուղեկցվում է հայ բնակչության մասսայական բնաջնջմամբ, խաղաղ բնակչությունը՝ կանայք և երեխաները, սպանվում են հազարներով, կողոպուտի և հրի է մատնվում նրանց ունեցվածքը... այդ օկրուգներում տեղի ունեցած դեպքերը վկայում են, որ տասնյակ տարիներով կիրառվող հայ ժողովրդի բնաջնջման քաղաքականությունը շարունակվում է նաև այժմ»:

Նկատի ունենալով թուրքական հարձակումը և նրանց կազմակերպած նախճիրը հայ խաղաղ բնակչության նկատմամբ, Սովետական Ռուսաստանը Թուրքիային է հղում Կարախանի կողմից կազմված մի նոր նոտա, որով դատապարտում է նրանց ուխտադրուժ գործողությունները, չեղյալ հայտարարում Բրեստի հաշտության պայմանագիրը:

Թուրքական հարձակման այդ ծանր օրերին Կարախանը փորձում էր կայուն կապ ստեղծել Կովկասի գործերի արտակարգ կոմիսար, Բաքվի կոմունայի ղեկավար Ստեփան Շահումյանի հետ, որին ինքը կապված էր ջերմ, ընկերական հարաբերություններով: Կարախանը տեղեկացնում էր Թուրքիայի նկատմամբ Ռուսաստանի կառավարության ձեռնարկած քայլերի և Բաքվին սպառնացող թուրքական վերահաս վտանգի մասին: «Անգլիացիներին օգնության կանչելը,— գրում էր նա,— միայն պրովոկացիա կլինի թուրքերի հետագա հարձակման համար... մենշևիկները, աջ էսէռները և ձախ էսէռները դավաճանություն կկատարեն ոչ միայն սովետական հանրապետության նկատմամբ, այլև կիսով չափ բնաջնջված հայ ժողովրդի նկատմամբ...»:

Վերին աստիճանի բարդ և օրհասական պայմաններում Բաքվի կոմունան ընկավ: Քաղաք ներխուժած թուրքերի ու նրանց միացած մուսավաթականների առաջին գործը 30 հազար հայ բնակիչների սրի մատնելը եղավ...

Դրությունը նույնքան ծանր էր մյուս ռեգիոններում: Քաղաքացիական պատերազմի պայմաններում սովետական դիվանագիտության առաջին մեծ հաղթանակը Էստոնիայի հետ 1920 թ. փետրվարի 2-ին կնքված հաշտության պայմանագիրն էր, որն առաջինն էր կապիտալիստական երկրների հետ այդուհետ կնքված պայմանագրերի շարքում և այդ առումով չափազանց կարևոր: Լենինի արտահայտությամբ, այդ պայմանագիրը դարձավ այն լուսամուտը, որ բացեցին ռուս բանվորները դեպի Արևմտյան Եվրոպա, մեծագույն հաղթանակը միջազգային իմպերիալիզմի նկատմամբ: Չիչերինն ու Կարախանն այն համարում էին սովետական Ռուսաստանի հետ առևտրատնտեսական հարաբերությունների հաստատման հարցում կապիտալիստական երկրներին տնտեսապես շահագրգռելու լենինյան տակտիկայի կենսագործման փայլուն օրինակ: Ի դեպ, այդ տակտիկային այսօր՝ վերակառուցման այս բուռն օրերին կուսակցությունը

դարձյալ դիմում է որպես սովետական արտաքին քաղաքականության զինանոցից հանված չժանգոտվող զենքի: Առաջին հաջողությանը հետևեցին երկրորդը, երրորդը... Բարեկամական հարաբերություններ հաստատվեցին և ապա համապատասխան պայմանագրեր կնքվեցին Արևելքի մի շարք երկրների հետ՝ Աֆղանստանի, Իրանի, Թուրքիայի... Տարբեր սոցիալական կացութաձև ունեցող երկրների հետ խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքների իսկական հաղթահանդես եղավ, երբ ընդամենը երկու տարվա ընթացքում սովետների երկիրը ճանաչեցին Անգլիան, Ֆրանսիան, Իտալիան, Շվեդիան, Նորվեգիան, Դանիան, Ավստրիան, Հունաստանը, Ճապոնիան, Չինաստանը, Մեքսիկան: Եվ այս ամենում մեծ էր նաև Կարախանի դերը: Մանավանդ նշանակալի էին նրա ծառայությունները Արևելքի երկրների հետ հարաբերությունների հաստատման և զարգացման գործում: Անձամբ լինելով Արևելքի ծնունդ, նա լավ գիտեր Արևելքը, այդ հանգամանքը նկատի ունենալով էր անշուշտ, որ արտաքին գործերի ժողկոմատի կոլեգիայի 1919 թ. ապրիլի 25-ի որոշմամբ Լևոն Կարախանի վրա դրվեց Արևելքի երկրների բաժնի, ժողկոմատի տեխնիկական բաժինների ղեկավարությունը: Բացի դրանից, նրա տնօրինությանն էր հանձնվում Ռուսաստանի և Նիդեռլանդների, Շվեյցարիայի, Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի երկրների հետ հարաբերություններին առնչվող հարցերը:

Կարախանի դիվանագիտական գործունեությունում, սակայն, առանձնահատուկ տեղ են գրավում արևելյան երկրները: Նա ակտիվ մասնակիցը, իսկ շատ դեպքերում նաև գլխավոր դերակատարն է եղել այն բոլոր հարաբերություններում, որոնք սկզբնավորվել, զարգացել և փոխադարձորեն շահավետ պայմանագրային ձևակերպում են ստացել սովետական Ռուսաստանի և Աֆղանստանի, Իրանի, Թուրքիայի, Չինաստանի, Ճապոնիայի միջև: Դրանցից մեկն իր ստորագրման պահից ի վեր շարունակում է մնալ մասնավորապես հայ պատմագրության ուշադրության կենտրոնում և որոշ վերապահումով ստացել է իր սկզբունքային գնահատականը նրա կողմից: Դա 1921 թ. մարտի 16-ին Մոսկվայում կնքված ռուս-թուրքական այն պայմանագիրն է, որը նրա ներածականում անվանվում է բարեկամության և եղբայրության» պայմանագիր: Ինչ վերաբերում է սովետական պատմագիտությանն ընդհանրապես, ապա չնայած այն բանին, որ նրան չի կարելի ոչ մի կերպ կշտամբել այս պայմանագրի նկատմամբ ունեցած նվազ ուշադրության մեջ, այնուհանդերձ, մեր խորին համոզմամբ, այն և նրա հետ միասին մի շարք այլ ակտեր և երևույթներ, այդ թվում նաև Մուստաֆա Քեմալ Փաշայի գլխավորած (մի մարդու, որին Ն. Բուխարինը դիպուկ կերպով նույնացնում էր չինական ռեակցիոներներ Չժան Ցզո Լինի և Չան Կայ Շինի հետ) «թուրքական ազգային-ազատագրական, հակաիմպերիալիստական շարժումը», դեռևս համակողմանի և խոր լուսաբանում չեն ստացել նրանում: Իսկ որ դրա կարիքը կա, մանավանդ հիմա՝ վերակառուցման, դեմոկրատացման, պատմական ճշմարտության հաստատման մեր ժամանակներում, անկասկած է: Այլապես մենք երբեք չենք կարող հասկանալ, առավել ևս մեկնել, համապատասխան դասեր քաղել մեր պատմությունից, չենք կարող պարզել ազգամիջյան տարափոխիկ հարաբերությունների պղտորման ակունքները և հետևապես չենք կարող նաև իրագործել օրակարգում դրված մեր խնդիրներից գերագույնը՝ ժողովուրդների բարեկամության գետը պարզեցնելու որքան վսեմ, նույնքան և ազնիվ նպատակը:

Անդրադառնալով Կարախանի դիվանագիտական գործունեությանը, ընդհանրապես պետք է նշել, որ այդ գործունեության յուրաքանչյուր կոնկրետ ուղղությունն ինքնին մի առանձին ուսումնասիրության նյութ կարող է ծառայել: Այդ թվում նաև նրա կյանքի վեցամյա այն շրջանը, որի ընթացքում որպես Սովետական Ռուսաստանի առաջին լիազոր ներկայացուցիչը Լեհաստանում նա ապրեց և աշխատեց Վարշավայում: Առավել ևս, նրա գործունեության չինական շրջանը, որի ընթացքում գրվեցին Կարախանի դիվանագիտական կենսագրության փայլուն էջերից շատերը: Չինաստան նա մեկնեց 1923 թ. օգոստոսին: Վերադարձավ այնտեղից 1926-ի սեպտեմբերին: Եվ այդ ընթացքում նրան հաջողվեց Չինաստանում տիրող բարդ ու անկայուն քաղաքական մթնոլորտի և սուր հակամարտությունների պայմաններում, 1924 թ. մայիսի 31-ին նրա կառավարության հետ ստորագրել ՍՍՀՄ և Չինական հանրապետության միջև հարցերի կարգավորման համար ընդհանուր սկզբունքների մասին համաձայնությունը: Դա առաջին իրավահավասար պայմանագիրն էր, որ երբևիցե կնքել էր Չինաստանը օտարերկրյա պետության հետ: Նման մի պայմանագիր էլ 1925 թ. հունվարի 20-ին Կարախանը ստորագրեց ճապոնական կողմի հետ՝ առանց Ճապոնիա մուտք գործելու:



Վերադառնալով Մոսկվա և նորից ըստանձնելով նախկին իր պաշտոնը՝ նա դարձյալ բուռն դիվանագիտական գործունեություն է ծավալում: Շահեկան են Կարախանի հարաբերությունները, հանդիպումներն ու զրույցները Աֆղանստանի, Իրանի, Եմենի, Թուրքիայի, Ճապոնիայի, Չինաստանի ներկայացուցիչների հետ: Նա այցելում է Թուրքիա, Իրան...

Իսկ նույն այդ ընթացքում Ստալինի անձնական իշխանության ամրապնդմանը զուգընթաց, հետզհետե իրեն զգացնել էր տալիս լենինյան սերուցքի դիվանագետներին ասպարեզից դուրս մղելու ակնհայտ միտումը: Մարդկանց, որոնց կարելի էր վարել, բայց երբեք՝ կառավարել: Եվ այդ միտումը ուժեղանում է մանավանդ 1930-ից, երբ Չիչերինը դադարում է արտաքին գործերի ժողկոմ լինելուց: Նորնոր ասպարեզ մտած և իշխանական բոլոր բարձունքները շուտափույթ գրավելու տենչով բռնված ստալինյան մանկլավիկները խտրություն չէին դնում միջոցների մեջ և ոչ էլ հանդես էին բերում ավելորդ նրբանկատություն դիվանագետների հին գվարդիայի նկատմամբ: Պայքարի ընտրված ձևն սկզբից ևեթ ուժային մեթոդների կիրառմամբ պաշտոնաթողության պարտադրումն էր: Այն ամենից առաջ տարածվում էր հեղափոխությունից դիվանագիտություն եկածների վրա, սակայն դա դեռ նախերգանքն էր զանգվածային այն նախճիրի, որ արդեն ծայր առավ 30-ական թըվականների երկրորդ կեսից:

1934-ի հունիսի 29-ին Կարախանը ստացավ իր վերջին նշանակումը՝ ՍՍՀՄ լիազոր-ներկայացուցիչ Թուրքիայում: Հետաքրքիր է, որ գրեթե նույն ժամանակ Լեհաստանում ՍՍՀՄ լիազոր-ներկայացուցիչ է նշանակվում նրա մտերիմ ընկերներից մեկը՝ Հակոբ Դավթյանը, իսկ Բուլղարիայում՝ Ռասկոլնիկովը:

Դիվանագիտական կորպուսի առաջին զոհերից էր Կարախանը: 1937-ի մայիսի սկզբներին Անկարայից վերադառնալիս Կարախանին կառամատույցում դիմավորող եղբորից՝ Հովսեփից բացի կային նաև մի քանի անծանոթներ: Նրանք Կարախանին նստեցրին ավտոմեքենա և այդ պահից ի վեր նրան այլևս ոչ ոք չտեսավ: Նույն՝ ահարկու 1937-ի հոկտեմբերին Վարշավայից հետ կանչվեց Հակոբ Դավթյանը և Մոսկվա հասնելուց հետո ձերբակալվեց: Եվ այսպես շարունակ:

Հոդվածն ուզում ենք ավարտել Ռասկոլնիկովի՝ սովետական դիվանագիտական հին կորպուսի գրեթե այն միակ ներկայացուցչի խոսքերով, որին հաջողվեց փրկվել (բայց հաջողվե՞ց արդյոք) ստալինյան դատաստանից: Խոսքերը վերցված են Ստալինին ուղղված նրա հանրահայտ նամակից: «Գիտենալով, որ կադրերով աղքատ լինելու մեր պայմաններում առանձնակի արժեք ունի ամեն մի կուլտուրական մարդ և փորձված դիվանագետ, Դուք խաբելով Մոսկվա բերեցիք և մինչև վերջին մարդը ոչնչացրեցիք արտաքին գործերի ժողովրդական կոմիսարիատի ապարատը: Ամենուր և ամեն տեղ ոչնչացվել են երկրի ոսկե ֆոնդը, նրա երիտասարդ կադրերը: Դուք բնաջնջել եք ծաղկուն տարիքում տաղանդավոր և բազմախոստում դիվանագետներին»:

Ծաղկուն տարիքում բնաջնջված այդ տաղանդավորներից մեկը Լևոն Կարախանն էր: Ձերբակալման պահին նա ընդամենը 48 տարեկան էր:

**Ս. Հ. ԱՄԻՐՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղի ավագ գիտաշխատող**

# ԳԻՐՔ ՄԱՐՏԱԿԱՆ ՓԱՌՔԻ ՄԱՍԻՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ բանակի հերոսական անցյալի, նրա փառապանծ պատմության և այսօրվա կյանքի լուսաբանման ու պրոպագանդման գործում մեծ դեր է հատկացվում մեր երկրի բազմազգ գրականությանը: Սովետական մարդիկ միշտ հպարտացել ու հպարտանում են միս ու արյունով ժողովրդական իր պաշտպան բանակով, ուստի և միանգամայն բնական է, որ «հրացանավոր մարդը», նրա վեհ ու ռոմանտիկ կերպարը հեղափոխության և քաղաքացիական պատերազմի առաջին իսկ օրերից արժանի տեղ է գրավել հայրենական գրականության մեջ: Հասկանալի է, որ ռազմահայրենասիրական թեման սովետական գրականության մեջ այդ ամբողջ ժամանակաշրջանում եղել է նաև գրաքննադատության սևեռուն ուշադրության առարկա: Դրա մի նոր հաստատումն է «Բանակը և գրականությունը»* հոդվածների ժողովածուի երրորդ պրակի լույս ընծայումը, որի մեջ վերլուծվում են ռազմական, բանակային պրոբլեմատիկային նվիրված գրականության զարգացման հրատապ հարցերը, քննության է առնվում մի մեծ խումբ սովետական գրողների ստեղծագործական փորձը:

Ժողովածուի հեղինակների թվում կան միութենական ընթերցողին քաջ հայտնի անուններ:

Գիրքը բացվում է սովետական բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչության պետ, բանակի գեներալ Ա. Լիզիչովի «Ըմբռնելով հերոսականը» և ՍՍՀՄ գրողների միության վարչության նախագահ Գ. Մարկովի «Լավատեսություն արարողը» հոդվածներով, որոնցում խոսվում է այն հսկայական նշանակության մասին, որ կուսակցությունն ու ժողովուրդը տալիս են գրողների և հրապարակախոսների աշխատանքին, որոնք իրենց ստեղծագործության մեջ դիմում են ռազմահայրենասիրական թեմատիկային, գովերգում անձնվեր ծառայությունը մայր հայրենիքին, հաստատում սովետական մարդու՝ ռազմիկի, արարողի, ինտերնացիոնալիստի սխրագործության ողջ գեղեցկությունն ու վեհությունը: Խոսելով Յու. Բոնդարևի, Չ. Այթմատովի, Ա. Իվանովի և Ե. Իսաևի, Ի. Ստադնյուկի ու Վ. Բիկովի, Ա. Չակովսկու ու Ա. Պրոխանովի և գեղարվեստական խոսքի այլ վարպետների՝ լայն ու միանգամայն արժանի ժողովրդականություն վայելող հայտնի ստեղծագործությունների մասին, Ա. Լիզիչովը հատկապես ընդգծում է դրանց ճշմարտացիությունը, մարտական կրքոտությունը, կուսակցականությունն ու գաղափարական անաղարտությունը, մտահղացումների վեհությունը: Պատահական չէ, որ հոդվածում այդ հատկությունները առաջին պլանի վրա են դրված: Եթե դրանք իրականության գեղարվեստական իմաստավորման ներքին առանցք, յուրատեսակ ամուր հիմք չլինեին, գրողը պարզապես բարոյական իրավունք չէր ունենա հայրենասիրական վսեմ սկզբունքներ քարոզելու, որը գրողի ստեղծագործական արարման բուն էությունն է: Հոդվածը ինչպես վաստակաշատ, այնպես էլ սկսնակ գրողներին նպատակամղում է արդյունավետորեն որոնելու նոր արտահայտչամիջոցներ, որոնք համապատասխանեն մեր ժամանակի գեղագիտությանը, սովետական զինված ուժերի կյանքի բոլոր կողմերը բարձր գեղարվեստայնությամբ ու ճշմարտացիությամբ արտացոլելու, զինվորականի հերոսական և ոչ դյուրին աշխատանքի մասին ոգեշունչ պատմություն ստեղծելու:

Ժողովածուի էջերում բանակի գեներալ Ա. Լիզիչովի սկսած խոսակցությունը կարծես շարունակում է Գեորգի Մարկովը: Իր «Լավատեսություն արարողը» հոդվածում նա նշում է. «Սովետական ժողովրդի հերոսության թեման... շարունակ գրավելու է սովետական գրողների նոր սերունդների ուշադրությունը: Ինչպես ժամանակակից, այնպես էլ ապագա գրողների ստեղծագործական հետաքրքրությունների կենտրոնում միշտ կլինեն հայրենիքի պաշտպանության անչափ կարևոր թեման, նրա շահերի պաշտպանության դիրքերում կանգնած մարդու հմայիչ կերպարը»:

Մեծ հետաքրքրությամբ է ընթերցվում նաև «Միջուկային դարի հրամայական պահանջները» հրապարակումը, որը պատկանում է գեներալ գնդապետ Գ. Վոլկոգոնովի գրչին: Այստեղ հանգամանորեն հետազոտվում են խոսքի վարպետների բազմակողմանի գործունեության ամենևին էլ ոչ միանշանակ ասպեկտները ներկա բարդ դարաշրջանում: Հեղինակը նախազգուշացնում է այսպես կոչված «միջուկային պացիֆիստների» կոչերի դեմ, որոնք կասկածի տակ են դնում ագրեսորին պատասխան հարված հասցնելու համար պատրաստ լինելու բուն անհրաժեշտությունն անգամ: Իբր, էլ ում է պետք այդ պատասխան հարվածը, դատում են նրանք, եթե առանց դրան էլ աշխարհը, պատերազմ սկսվելու դեպքում կկործանվի: Իսկ, հետևաբար, հարկ կա՞ արդյոք ընդհանրապես պատրաստվել հակահարվածի: Նման դատողություններին կարող է լինել միայն մի պատասխան. «Քանի դեռ չի ստեղծվել պատերազմի մեկուսացման քաղաքական մեխանիզմ, սովետական զինվորականների համար գոյություն ունի մի անխախտ ճշմարտություն՝ աքսիոմայի ձևով. որքան ավելի բարձր է մեր մարտական պատրաստությունը, այնքան ավելի փոքր է այն հավանականությունը, որ պոտենցիալ ագրեսորը կհամարձակվի դիմելու միջուկային արկածախնդրության»: Այնուհետև հոդվածում նշվում է, որ ամենավերացական պացիֆիզմի մեջ մենք տեսնում ենք ոչ թե գաղափարական հակառակորդի, այլ ավելի շուտ՝ դաշնակցի: Սակայն, և դա պետք է ընդգծել, սովետական որոշ գրողներ, արվեստի աշխատողներ կարծես վախենում են ամբողջ ձայնով ասել այն մասին, որ նման պացիֆիզմը, նրա բոլոր առանձին հրապուրիչ գծերով հանդերձ, այնուհանդերձ, ամենևին էլ կոմունիստների դիրքորոշումը չէ: Ավելին, ոմանք ուղղակի կանգնում են վերացական պացիֆիստների դիրքերի վրա, դրա մեջ չտեսնելով առանձին մեղք: Բայց չէ որ, եթե մենք բաժանեինք նման հայացքները, մենք կամա թե ակամա ստիպված պետք է լինեինք նաև «միջուկային հայտնության գլխներիս կախված դամոկլյան սպառնալիքի համար պատասխանատվությունը կրելու նրանց հետ, ովքեր պատրաստում են այն...»:

Խոսելով պատերազմի և խաղաղության հարցերի դիալեկտիկայի մասին, ներկայիս միջուկային դարի փաստարկների, դրա հրամայական պահանջների մասին, հեղինակը հետևողականորեն այն միտքն է անցկացնում, որ անհրաժեշտ է մոլորակի մասշտաբով առավելագույն չափով օգտագործել նոր մտածողությունը, որն արդեն դարձել է մեր ժամանակի իրողությունը և ավելի ու ավելի շատ կողմնակիցներ է նվաճում: Չէ որ ակնհայտ է՝ միջազգային անվտանգությունն ապահովելու և կոնֆլիկտային իրավիճակներում ուժ գործադրելուց հետևողականորեն հրաժարվելու ոլորտում հետագա արմատական տեղաշարժերը կարող են ձեռք բերվել միայն մեր երկրի այսօր առաջարկած ուղիներում: Դա է հավաստում այն պարագան, որ «նոր մտածողության կոնցեպցիան ոչ թե նոր իրողությունների անտեսում է, այլ ընդհակառակն, դրանց առավելագույն լրիվ հաշվառում»: Եվ միանգամայն ժամանակին ու հրատապ է թվում գրողներին ուղղված կոչը՝ որոնել ու գտնել ուժեղ փաստարկներ այդ կոնցեպցիայի օգտին, անշուշտ, առանց զոհաբերելու մեր իդեալները և սովետական ժողովրդի տառապանքներով ստեղծված հոգևոր արժեքները: Դա առավել ևս կենսական ու անհրաժեշտ է դառնում այն իրողությամբ, որ մեր դասակարգային մոտեցումը մոլորակի խաղաղության ամրապնդման հարցերին ամենևին չի հակասում համամարդկային մոտեցմանը, այլ, ընդհակառակն, միաձուլվում է նրա հետ:

«Բնագծեր» հոդվածում Յու. Բոնդարևը վերլուծում է պատերազմական թեմայով ռուսական վեպի շարժման դիալեկտիկան, քննում այդ թեմայի իմաստավորման ու արտացոլման փուլերը սովետական շատ գրողների ստեղծագործություններում, մի շարք հետաքրքրական ու նուրբ դիտողություններ անում «ռազմաճակատային» արձակի երկու՝ գեղարվեստական և վավերագրական սկզբունքների, պատերազմի նկատմամբ երկու հայացքի, «մասշտաբային» և այսպես կոչված «խրամատային» զինվորական հայացքի հարաբերակցության ոչ հասարակ հարցի կապակցությամբ: Հետաքրքրական է, որ այստեղ ըստ էության գրականագիտական վերլուծությունը, բազմակի արդյունավետ դիմումները դասական գրականության փորձին, օրգանապես միահյուսվում են պատմության և բուն կյանքի փաստերի վերաբերյալ հեղինակի խոր և սուր խորհրդածությունների հետ:

Պատերազմի և հետպատերազմյան սերունդների արձակագիրների ու բանաստեղծների ստեղծագործությանը, ժամանակակից բանակի բարդ ու բազմակող-

---

* «Армия и литература». Сборник статей о военно-патриотической литературе. Москва. Военное издательство. 1988, 270 стр.

մանի աշխարհը բացահայտող գրականությանը, Մեծ հայրենականի սրբազան թեման շոշափելու հանդգնած գրողի առջև ծառացող ընդհանուր փիլիսոփայական և բարոյական պրոբլեմատիկային, դազմահայրենասիրական գրականության տեսական պրոբլեմներին ու կյանքի հետ նրա ունեցած կապին են նվիրված Ի. Ստադնյուկի և Ն. Ստարշինովի, Օ. Գոնչարի և Ա. Մարչենկոյի, Լ. Նիկոլաևի և Ս. Կոլովի հոդվածները:

Ժողովածուի մեջ առաջին անգամ մտել են հուշագրություններ. «Փետրախոտերը թեքվում են դեպի Դոն...» հոդվածում ավիացիայի մարշալ Ա. Եֆիմովը ընթերցողներին պատմում է իր հետաքրքիր հուշերը Միխայիլ Շոլոխովի հետ ունեցած հանդիպումների մասին:

Գրքում աչքի ընկնող տեղ է գրավում բանասիրական գիտությունների դոկտոր Լ. Կիրակոսյանի հոդվածը՝ «Պատերազմ, որը միշտ քեզ հետ է»: Դա մի բավական հիմնավոր ուսումնասիրություն է, որում քննարկվում են մի ամբողջ շարք հայ արձակագիրների ու բանաստեղծների ստեղծագործությունները, որոնք նվիրված են պատերազմական թեմատիկային, նրանց ստեղծագործության կենսական ու բարոյական արմատները: Հրապարակման հեղինակի գրականագիտական վերլուծության ընդգրկումը շատ լայն է, նրա ուսումնասիրության առարկան ինչպես մեր գրականության դասականների, այնպես էլ պատերազմի ու հետպատերազմյան սերունդների խոսքի վարպետների ստեղծագործությունն է: Յուրաքանչյուր առանձին դեպքում, վերլուծության ենթարկելով այս կամ այն գրողի ստեղծագործական մեթոդի, աշխարհայացքային տարրերի, ստեղծագործական կոնցեպցիայի առանձնահատկությունները, Լ. Կիրակոսյանը հանգում է հետաքրքիր հետևությունների, ներկայացնում է պատերազմի մասին սովետահայ գրականության զարգացման կուռ ու տրամաբանական պատկերը նրա դինամիկայի մեջ: Խորապես հիմնավորված ու շատ հրատապ է հեղինակի այն պնդումը, որ «պատերազմի մասին հայ գրականության պաթոսը եղել է մեր բազմազգ երկրի ժողովուրդների բարեկամությունը», իսկ հիմնարար աշխարհայացքային հիմքը՝ պատերազմող ժողովրդի բախտի ու նրա հեղափոխական անցյալի կապի անխզելիությունը: Եվ իրոք, սոցիալիստական հայրենիքի անկախության, Հոկտեմբերի գաղափարների պաշտպանությունը հայազգի ռազմիկների ու թիկունքի աշխատողների համար հիրավի եղել է սրբազան պատերազմ. չէ որ նոր [illegible]քի վերածննդի մասին մեր ստեղծարար ժողովրդի դարավոր երազանքը, երբ չի լինի ոչ բռնություն, ոչ ճնշում, իրականացավ միայն Հայաստանում սովետական իշխանության հաստատմամբ: Այդ դրույթի ապացույցներ Լ. Կիրակոսյանը որոնում ու առատորեն գտնում է Ավ. Իսահակյանի, Հր. Քոչարի, Ս. Խանզադյանի, Խ. Գյուլնազարյանի և բոլոր սերունդների ուրիշ շատ գրողների ստեղծագործություններում:

Բացահայտելով, ընդգծելով ու վերլուծելով հայ արձակագիրների ստեղծագործությունների ինչպես նմանությունները, այնպես էլ բազմաթիվ գեղարվեստականթեմատիկ տարբերությունները, հեղինակը չի սահմանափակվում պատերազմի մասին միայն սովետահայ գրականության նյութի շրջանակներում ոճական ու պրոբլեմային-թեմատիկ տարբերակման ուսումնասիրմամբ: Խորագիտակությունը նրան թույլ է տալիս համոզիչ կերպով ծավալելու պատերազմական թեմայի ոճական և պրոբլեմային-թեմատիկ տարրերի տարբերության դրույթը երկրի ժողովուրդների ազգային գրականություններում, որն էլ շահավետորեն ընդլայնում ու հարստացնում է հետազոտության ընդգրկումը:

Հոդվածների գրախոսվող ժողովածուի լույս ընծայումը վկայում է այն մասին, որ պատերազմական անչափ ընդարձակ թեման առաջվա նման հուզում է մարդկանց, տիրում նրանց սրտերին ու հոգուն, առաջվա նման շարունակում է խթանել գրականագիտական, փիլիսոփայական հետազոտությունները: Եվ դա բնական է: Չէ որ մեծ Հայրենականի պատմական, բարոյական, հուզական ու գեղարվեստական բովանդակությունն այնքան մեծ է, որ նորից ու նորից շարունակում է նոր սերունդներին, նրանց մտքերն ու զգացմունքները սնել ժողովրդի արդեն անցյալ դարձած ողբերգության դառը և հպարտ փորձով: Իմաստավորել այդ փորձը նրա ոչ միանշանակ ամբողջության մեջ, այն ի սպաս դնել մարդկանց հայրենասիրական դաստիարակության, մոլորակի խաղաղության ամրապնդման ազնիվ գործին՝ սովետական գրողները դրա մեջ են տեսնում իրենց գլխավոր խնդիրներից մեկը:

**Ս. ԽԱՆԲԱԲՅԱՆ**
ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիայի ասպիրանտ

# ՆՈՐ ՏԻՊԻ ԱԳՐԱՐԱՅԻՆ ԱՇԽԱՏՈՂԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

*ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ բոլոր ոլորտների հեղափոխական նորացման փուլում կարևոր տեսական և գործնական նշանակություն ունի նոր տիպի ագրարային աշխատողի բնութագրումը: Սոցիալիզմի կատարելագործման պայմաններում ագրարային աշխատողի ձևավորման նյութական, սոցիալական, պրոֆեսիոնալ, հոգևոր գործոնների համակցությանը, այդ օրինաչափ պրոցեսն արգելակող հակասական երևույթների բացահայտմանն ու դրանց հաղթահարման ուղիների որոնման լուսաբանմանն է նվիրված Վ. Տ. Հախվերդյանի աշխատությունը*:*

*Հեղինակը ցույց է տվել արդի ԳՏԱ-ի հիմնական գծերն ու առանձնահատկությունները գյուղատնտեսական արտադրության մեջ, կապիտալիստական և սոցիալիստական գյուղատնտեսության ոլորտներում ԳՏԱ-ի նվաճումների իրացման արմատական տարբերությունները:*

*Տեղին է նշված, որ գյուղատնտեսական աշխատանքն ինդուստրիալի տարատեսակի վերածումը բարդ և բազմակողմանի պրոցես է, այն ընդգրկում է արտադրության բոլոր կողմերը, այսինքն՝ ենթադրում է խոշոր փոփոխություններ արտադրողական ուժերում և արտադրական հարաբերություններում, հասարակական աշխատանքի սոցիալական էության, աշխատանքի բնույթի և բովանդակության մեջ: Հատկապես շեշտվում է, որ ագրարային աշխատողի ձևավորման նյութական հիմքը գիտատեխնիկական առաջադիմության ծավալումն է: Հեղինակն առաջարկում է գյուղատնտեսության մասնագիտացված ճյուղերի գիտահետազոտական ինստիտուտների, փորձնական տնտեսությունների, գյուղատնտեսության կադրերի պատրաստման և որակավորման բարձրացման դպրոցների բազայի վրա կազմակերպել ագրարային և ագրոարդյունաբերական բնույթի գիտաարտադրական կենտրոններ, համալիրներ, միավորումներ: Երկրի մի շարք հանրապետությունների օրինակով մեզ մոտ ևս ագրոարդյունաբերական համալիրի շրջանակներում անհրաժեշտ է ստեղծել բոլոր հետազոտությունները և մշակումները կոորդինացնող կենտրոն:*

*Գրքում վերլուծվում է մասնագիտական որակավորման համակարգի պրոֆեսիաների որոշակի համատեղման միտումը, իսկ սոցիալդասակարգային կառուցվածքում՝ սոցիալական համասեռության խորացումը:*

*Իրոք, մասնագիտությունը սոցիալական կարգավիճակ է, մարդկանց որոշակի սոցիալական դրության հատկանիշ, որևէ սոցիալ-պրոֆեսիոնալ խմբին պատկանելու ցուցանիշ: Հեղինակը գտնում է, որ աշխատողի պրոֆեսիոնալ պատրաստականությունը որոշվում է «նրա ընդհանուր, հատուկ պատրաստության ընթացքում ձեռք բերած առավել լայն և մասնագիտական ու տեսական կայուն գիտելիքներով, գործնական հմտություններով և փորձով, որոնք անհրաժեշտ են ագրոաշխատողին՝ որոշակի ֆունկցիա կատարելու համար» (էջ 105): Պրոֆեսիան և մասնագիտությունը այստեղ դիտվում են ընդհանուրի և եզակիի դիալեկտիկական փոխկապակցության մեջ:*

*Գիտատեխնիկական առաջադիմությամբ ագրարային աշխատողի սոցիալական զարգացումը առավել ակնհայտ է միջտնտեսային ձեռնարկություններում և ագրոարդյունաբերական միավորումներում: Նոր տիպի ագրարային աշխատողները ներառում են բանվորների, կոլտնտեսականների, մտավորականների լավագույն գծերը:*

*Հեղինակը, ելնելով ՍՄԿԿ XXVII համագումարի ծրագրային դրույթներից, ինչպես նաև գիտական գրականության մեջ տեղ գտած սահմանումներից, փորձում է յուրովի բնութագրել նոր տիպի ագրարային աշխատողին: «Նա այնպիսի աշխատող է, որն ունի կրթական ու պրոֆեսիոնալ բարձր մակարդակ, շահագրգիռ կերպով, ակտիվորեն, նորարարական ջիղով կատարում է ավելի արտադրողական, ստեղծագործական և գրավիչ աշխատանք: Նա ձգտում է հետևողականորեն, անշեղորեն բարձրացնել հողի բերրիությունն ու անասնապահության մթերատվությունը և գյուղատնտեսության համար ստեղծել կայուն վարման պայմաններ, նպաստում է սոցիալիստական ինքնավարության զարգացմանը, հանրային ունեցվածքի նկատմամբ տածում է տնտեսատիրոջ վերաբերմունք*

** Վ. Տ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ. Գիտատեխնիկական առաջադիմությունը և նոր տիպի ագրարային աշխատողի ձևավորումը, Երևան, «Հայաստան» հրատ. 1988:*

և չի հանդուրժում անաշխատ եկամուտները» (էջ 115)։

Այնուհետև հեղինակը կարևորում է ագրարային կադրերի ընդհանուր պրոֆեսիոնալ որակավորման մակարդակի բարձրացման և ուսուցման ամբողջ համակարգի օպտիմալացման հարցերի ուսումնասիրությունը, ագրարային արտադրության փաստացի մակարդակի և համապատասխան մասնագետների պատրաստման ու որակավորման աստիճանի միջև ծագող հակասության պատճառները և դրանց հաղթահարման ուղիները։

Գրքում բացահայտվում են մասնագետ կադրերի հոսունության հիմնական պատճառները. կրթությունը շարունակելու և որակավորման բարձրացման դժվարությունները, կուլտուր-կենցաղային պայմանների ցածր մակարդակը, աշխատանքի կիրառման ոլորտի սահմանափակությունը։ Հոսունությունը կանխելու նպատակով առաջարկվում է ստեղծել սոցիալակա... առումով բազմատիպային գյուղ, որտեղ զարգանում են օժանդակ արտադրությունն ո. տնայնագործությունը, կապալը, ջերմոցային տնտեսությունները, արտադրական կոոպերատիվները, կոոպերացումը և արդյունաբերության փնջային եղանակը։

Գրախոսվող աշխատությունը զերծ չէ նաև թերություններից, վիճելի հարցադրումներից, կրկնություններից։ Նեղ է հետազոտված տընտեսությունների շրջագիծը։

Նշենք նաև, որ գրախոսվող ուսումնասիրությունը տալիս է նոր տիպի ագրարային աշխատողի ձևավորման պատկերը և անշուշտ հասարակական հետաքրքրություն է առաջացնում։

**Ս. ՄԵԼԻՔՅԱՆ**

ԵՐՊԻ-ի Լենինականի մասնաճյուղի մարքսիզմ-լենինիզմի ամբիոնի վարիչ, փիլիսոփայական գիտությունների դոկտոր պրոֆեսոր Սերգեյ Սուրենի ՄԵԼԻՔՅԱՆԸ զոհվել է 1988 թ. դեկտեմբերի 7-ին, երկրաշարժի հետևանքով:

Հանձնված է շարվածքի՝ 18.01.89 թ.։ Ստորագրված է տպագրության՝ 16.02.89 թ.։ ՎՖ 02336։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրությունը՝ օֆսեթ, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակը՝ 12.632։ Պատվեր՝ 72։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—28, Օրջոնիկիձեի պողոտա № 2։